ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք





# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՄԱՅԻՍ 5 1985



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**5**

ՄԱՅԻՍ, 1985
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический
и политический журнал ЦК КП Армении

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն



### ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ 40 ՏԱՐԻՆ



### ԴԵՊԻ XXVII ԿՈՒՍՀԱՄԱԳՈՒՄԱՐ



### ՄԱՐԴԻԿ ԵՎ ՏԱՐԻՆԵՐ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



**ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ**

## СОДЕРЖАНИЕ







# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1985 թվականի ապրիլի 23-ին տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը: «ՍՄԿԿ հերթական XXVII համագումարի հրավիրման և դրա նախապատրաստմանն ու անցկացմանն առնչվող խնդիրների մասին» զեկուցումով պլենումում հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Այդ հարցի առթիվ մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցան Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Շչերբիցկին, ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Գրիշինը, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Ա. Կունաևը, ՌՍՖՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Վ. Ի. Վորոտնիկովը, Վրաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Է. Ա. Շևարդնաձեն, ՍՄԿԿ Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ն. Զայկովը, Վ. Ի. Լենինի անվան «Մինսկի տրակտորի գործարան» արտադրական միավորման գործիքագործ-փականագործ ընկ. Ե. Ի. Կլիմչենկոն, Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Գ. Վայնոն, ՍՄԿԿ Նովոսիբիրսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Պ. Ֆիլատովը, ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստր ընկ. Վ. Կ. Մեսյացը, ՍՄԿԿ Ռոստովի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Վ. Վլասովը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ ընկ. Պ. Ն. Ֆեդոսեևը, հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության մինիստր ընկ. Բ. Վ. Բալմոնտը:

Պլենումը Մ. Ս. Գորբաչովի զեկուցման առթիվ ընդունեց որոշում, որը հրապարակվում է մամուլում:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Կենտկոմի պլենումը Վ. Մ. Չեբրիկովին Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուից փոխադրեց անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարներ Ե. Կ. Լիգաչովին և Ն. Ի. Ռիժկովին ընտրեց Կենտկոմի քաղբյուրոյի անդամներ:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի անդամ, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր Ս. Լ. Սոկոլովին ընտրեց Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ՍՄԿԿ Կենտկոմի անդամ Վ. Պ. Նիկոնովին՝ ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ավարտեց իր աշխատանքը:

# ՍՄԿԿ հերթական XXVII համագումարի հրավիրման և դրա նախապատրաստմանն ու անցկացմանն առնչվող խնդիրների մասին

## ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ զեկուցումը

Ընկերնե՛ր, մեր կուսակցությունը, սովետական ժողովուրդը և սոցիալիստական երկրների ժողովուրդները, ողջ առաջադեմ մարդկությունը երեկ հանդիսավորությամբ նշեցին Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 115-րդ տարեդարձը:

Ամբողջ կյանքը, պատմության ողջ ընթացքը համոզիչ կերպով հաստատում են լենինյան ուսմունքի մեծ արդարությունը: Այդ ուսմունքը մեզ համար եղել է և մնում է որպես գործողության ուղեցույց, ոգեշնչման աղբյուր, ստույգ կողմնացույց առաջընթացի ստրատեգիան ու տակտիկան սահմանելիս:

Լենինը կոմունիստներին սովորեցրել է ամեն ինչում ելնել աշխատավորների շահերից, մեծապես խորամուխ լինել կյանքին, իրատեսորեն, դասակարգային դիրքերից գնահատել հասարակական երևույթները, մշտապես ստեղծագործաբար որոնել կոմունիզմի իդեալների իրականացման լավագույն ուղիները:

Մենք, ըստ Լենինի, ըստ նրա մեծ գաղափարների ենք այսօր ստուգում մեր գործերն ու պլանները, ըստ լենինյան պատգամների ենք ապրում և աշխատում:

Մեր պլենումը պետք է քննարկի քաղաքական մեծ կարևորության հարցեր՝ կուսակցության հերթական XXVII համագումարի հրավիրման հարցը և դրա նախապատրաստմանն ու անցկացմանն առնչվող խնդիրները:

Քաղբյուրոն առաջարկություն է մտցնում ՍՄԿԿ կանոնադրությանը համապատասխան կուսակցության հերթական համագումարը հրավիրել 1986 թվականի փետրվարի 25-ին: Առաջարկվում է համագումարի օրակարգի մեջ մտցնել հետևյալ հարցերը.

1. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության խնդիրները:
2. ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը:
3. ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մասին:
4. ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների մասին:
5. ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների մասին:
6. Կուսակցության կենտրոնական մարմինների ընտրությունները:

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունների առթիվ, ինչպես նաև տնտեսական ու սոցիալական զար-



գացման հիմնական ուղղությունների հարցի առթիվ ի նկատի է առնվում լսել և քննարկել համապատասխան զեկուցումներ: Ինչ վերաբերում է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությանը և կանոնադրության փոփոխություններին, ապա դրանց էությունը կարելի է բացահայտել Կենտկոմի հաշվետվության մեջ և առանձին զեկուցումներ չտալ:

Առաջարկվում է համագումարի համար ընտրել մեկ պատգամավոր 3.670 կոմունիստներից, այսինքն՝ ընդամենը 5 հազար մարդ: Դա հնարավորություն կընձեռի լավ ներկայացնելու մեր կուսակցության բոլոր կազմակերպությունները, արտացոլելու նրա սոցիալական ու ազգային կազմը:

Մինչև համագումար մնացած տասն ամսվա ընթացքում պետք է համակողմանիորեն վերլուծել և իրատեսորեն գնահատել XXVI համագումարից հետո կատարվածի արդյունքները, սահմանել հետագա զարգացման հեռանկարները, ներքին ու արտաքին քաղաքականության խնդիրները: Պետք է նախապատրաստել կարևորագույն և ամենից առաջ այնպիսի հիմնարար փաստաթղթերը, ինչպիսիք են ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունը, առաջիկա հնգամյակի և մինչև ընթացիկ հարյուրամյակի վերջն ընկած ժամանակաշրջանի զարգացման հիմնական ուղղությունները, դրանք քննության առնել ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, իսկ ապա լայնորեն քննարկել կուսակցության մեջ և երկրում: Մեծ ուշադրություն կպահանջեն հաշվետվությունների և ընտրությունների բարձր մակարդակով անցկացումը կուսակցական կազմակերպություններում, տասնմեկերորդ հնգամյակի արժանավայել ավարտումը:

Մի խոսքով՝ դա կլինի քաղաքական, տնտեսական, կազմակերպչական, գաղափարատեսական լարված ու բազմազան աշխատանքի ժամանակաշրջան:

Այսօր մենք կրկին հավաստում ենք կուսակցության XXVI համագումարի և Կենտկոմի ետհամագումարյան պլենումների մշակած ստրատեգիական կուրսի հաջորդայնությունը: Հաջորդայնությունը լենինյան ըմբռնմամբ նշանակում է անընդհատ առաջընթաց, նոր պրոբլեմների հայտաբերում և լուծում, այն ամենի վերացում, ինչը խանգարում է զարգացմանը: Այս լենինյան ավանդույթին մենք պետք է հետևենք անշեղորեն՝ հարստացնելով և զարգացնելով մեր կուսակցական քաղաքականությունը, զարգացած սոցիալիզմի հասարակության կատարելագործման մեր գլխավոր գիծը:

ՍՄԿԿ առաջիկա XXVII համագումարը, անտարակույս, էտապային ուղենիշ կդառնա երկրի զարգացման ճանապարհին: Նրա նշանակությունը որոշվում է քննարկման դրվող հարցերի առաջնագույն կարևորությամբ, ընթացիկ ժամանակաշրջանի բնույթով, հասարակության առջև ծառացող խնդիրների նորությամբ ու մասշտաբայնությամբ: Դա հատուկ հնչողություն է հաղորդում կուսակցության նախահամագումարյան ամբողջ աշխատանքին, պահանջում է ստեղծված իրավիճակի խոր իմաստավորում, համարձակ վճիռներ և եռանդագին գործողություններ:

Երկիրը մեծ հաջողությունների է հասել հասարակական կյանքի բոլոր բնագավառներում: Հենվելով նոր կարգերի առավելությունների վրա՝ նա պատմական կարճ ժամանակամիջոցում վերելք կատարեց դեպի տնտեսական ու սոցիալական առաջադիմության գագաթները: Ներկայումս Սովետական Միությունն ունի հզոր, բազմակողմանիորեն զարգացած էկոնոմիկա, բանվորների, մասնագետների, գիտնականների որակյալ կադրեր: Արտադրության, գիտության և տեխնիկայի զարգացման շատ ուղղություններում մենք հաստատուն կերպով առաջատար դիրքեր ենք գրավում աշխարհում:

Խոր փոփոխություններ են կատարվել սոցիալական կյանքում: Պատմության մեջ առաջին անգամ աշխատավոր մարդը դարձել է երկրի տերը, իր բախտը վճռողը: Աշխատանքի երաշխավորված իրավունքը և դրա արժանի վարձատրությունը, մարդու նկատմամբ հասարակության հոգատարությունը նրա ծննդից մինչև խոր ծերություն, հոգևոր մշակույթի լայն մատչելիությունը, հարգանքը անձի արժանապատվության և իրավունքների նկատմամբ, կառավարման գործին աշխատավորների մասնակցության անշեղ ընդլայնումը՝ այս բոլորն անանց արժեքներ են, սոցիալիստական ապրելակերպի անկապտելի

## СОДЕРЖАНИЕ









# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1985** թվականի ապրիլի 23-ին տեղի ունեցավ Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը: «ՍՄԿԿ հերթական XXVII համագումարի հրավիրման և դրա նախապատրաստման ու անցկացման առնչվող խնդիրների մասին» զեկուցումով պլենումում հանդես եկավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Այդ հարցի առթիվ մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցան Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Շչերբիցկին, ՍՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Վ. Գրիշինը, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Դ. Ա. Կունաևը, ՌՍՖՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Վ. Ի. Վորոտնիկովը, Վրաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Է. Ա. Շևարդնաձեն, ՍՄԿԿ Լենինգրադի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ն. Զայկովը, Վ. Ի. Լենինի անվան «Մինսկի տրակտորի գործարան» արտադրական միավորման գործիքագործ-փականագործ ընկ. Ե. Ի. Կլիմչենկոն, Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Գ. Վայնոն, ՍՄԿԿ Նովոսիբիրսկի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Պ. Ֆիլատովը, ՍՍՀՄ գյուղատնտեսության մինիստր ընկ. Վ. Կ. Մեսյացը, ՍՄԿԿ Ռոստովի մարզկոմի առաջին քարտուղար ընկ. Ա. Վ. Վլասովը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ ընկ. Պ. Ն. Ֆեդոսեևը, հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության մինիստր ընկ. Բ. Վ. Բալմոնտը:

Պլենումը Մ. Ս. Գորբաչովի զեկուցման առթիվ ընդունեց որոշում, որը հրապարակվում է մամուլում:

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Կենտկոմի պլենումը Վ. Մ. Չեբրիկովին Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածուից փոխադրեց անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղարներ Ե. Կ. Լիգաչովին և Ն. Ի. Ռիժկովին ընտրեց Կենտկոմի քաղբյուրոյի անդամներ:

Կենտկոմի պլենումը ՍՄԿԿ Կենտկոմի անդամ, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր Ս. Լ. Սոկոլովին ընտրեց Կենտկոմի քաղբյուրոյի անդամության թեկնածու, ՍՄԿԿ Կենտկոմի անդամ Վ. Պ. Նիկոնովին՝ ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար:

Դրանով ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը ավարտեց իր աշխատանքը:

# ՍՄԿԿ հերթական XXVII համագումարի հրավիրման և դրա նախապատրաստման ու անցկացման առնչվող խնդիրների մասին

# ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻ զեկուցումը

Ընկերնե՛ր, մեր կուսակցությունը, սովետական ժողովուրդը և սոցիալիստական երկրների ժողովուրդները, ողջ առաջադեմ մարդկությունը երեկ հանդիսավորությամբ նշեցին Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 115-րդ տարեդարձը։

Ամբողջ կյանքը, պատմության ողջ ընթացքը համոզիչ կերպով հաստատում են լենինյան ուսմունքի մեծ արդարությունը։ Այդ ուսմունքը մեզ համար եղել է և մնում է որպես գործողության ուղեցույց, ոգեշնչման աղբյուր, ստույգ կողմնացույց առաջընթացի ստրատեգիան ու տակտիկան սահմանելիս։

Լենինը կոմունիստներին սովորեցրել է ամեն ինչում լինել աշխատավորների շահերից, մեծապես խորամուխ լինել կյանքին, իրատեսորեն, դասակարգային դիրքերից գնահատել հասարակական երևույթները, մշտապես ստեղծագործաբար որոնել կոմունիզմի իդեալների իրականացման լավագույն ուղիները։

Մենք, ըստ Լենինի, ըստ նրա մեծ գաղափարների ենք այսօր ստուգում մեր գործերն ու պլանները, ըստ լենինյան պատգամների ենք ապրում և աշխատում։

Մեր պլենումը պետք է քննարկի քաղաքական մեծ կարևորության հարցեր՝ կուսակցության հերթական XXVII համագումարի հրավիրման հարցը և դրա նախապատրաստմանն ու անցկացմանն առնչվող խնդիրները։

Քաղբյուրոն առաջարկություն է մտցնում ՍՄԿԿ կանոնադրությանը համապատասխան կուսակցության հերթական համագումարը հրավիրել 1986 թվականի փետրվարի 25-ին։ Առաջարկվում է համագումարի օրակարգի մեջ մտցնել հետևյալ հարցերը.

1. ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության խնդիրները։
2. ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը։
3. ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մասին։
4. ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների մասին։
5. ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների մասին։
6. Կուսակցության կենտրոնական մարմինների ընտրություններ։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունների առթիվ, ինչպես նաև տնտեսական ու սոցիալական զարգացման հիմնական ուղղությունների հարցի առթիվ ի նկատի է առնվում լսել և քննարկել համապատասխան զեկուցումներ։ Ինչ վերաբերում է ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությանը և կանոնադրության փոփոխություններին, ապա դրանց էությունը կարելի է բացահայտել Կենտկոմի հաշվետվության մեջ և առանձին զեկուցումներ չտալ։

Առաջարկվում է համագումարի համար ընտրել մեկ պատգամավոր 3.670 կոմունիստներից, այսինքն՝ ընդամենը 5 հազար մարդ։ Դա հնարավորություն կընձեռի լավ ներկայացնելու մեր կուսակցության բոլոր կազմակերպությունները, արտացոլելու նրա սոցիալական ու ազգային կազմը։

Մինչև համագումար մնացած տասն ամսվա ընթացքում պետք է համակողմանիորեն վերլուծել և իրատեսորեն գնահատել XXVI համագումարից հետո կատարվածի արդյունքները, սահմանել հետագա զարգացման հեռանկարները, ներքին ու արտաքին քաղաքականության խնդիրները։ Պետք է նախապատրաստել կարևորագույն և ամենից առաջ այնպիսի հիմնարար փաստաթղթերը, ինչպիսիք են ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրությունը, առաջիկա հնգամյակի և մինչև ընթացիկ հարյուրամյակի վերջն ընկած ժամանակաշրջանի զարգացման հիմնական ուղղությունները, դրանք քննության առնել ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, իսկ ապա լայնորեն քննարկել կուսակցության մեջ և երկրում։ Մեծ ուշադրություն կպահանջեն հաշվետվությունների և ընտրությունների բարձր մակարդակով անցկացումը կուսակցական կազմակերպություններում, տասնմեկերորդ հնգամյակի արժանավայել ավարտումը։

Մի խոսքով՝ դա կլինի քաղաքական, տնտեսական, կազմակերպչական, գաղափարատեսական լարված ու բազմազան աշխատանքի ժամանակաշրջան։

Այսօր մենք կրկին հավաստում ենք կուսակցության XXVI համագումարի և Կենտկոմի ետհամագումարյան պլենումների մշակած ստրատեգիական կուրսի հաջորդայնությունը։ Հաջորդայնությունը լենինյան ըմբռնմամբ նշանակում է անընդհատ առաջընթաց, նոր պրոբլեմների հայտաբերում և լուծում, այն ամենի վերացում, ինչը խանգարում է զարգացմանը։ Այս լենինյան ավանդույթին մենք պետք է հետևենք անշեղորեն՝ հարստացնելով և զարգացնելով մեր կուսակցական քաղաքականությունը, զարգացած սոցիալիզմի հասարակության կատարելագործման մեր գլխավոր գիծը։

ՍՄԿԿ առաջիկա XXVII համագումարը, անտարակույս, էտապային ուղենիշ կդառնա երկրի զարգացման ճանապարհին։ Նրա նշանակությունը որոշվում է քննարկման դրվող հարցերի առաջնագույն կարևորությամբ, ընթացիկ ժամանակաշրջանի բնույթով, հասարակության առջև ծառացող խնդիրների նորությամբ ու մասշտաբայնությամբ։ Դա հատուկ հնչողություն է հաղորդում կուսակցության նախահամագումարյան ամբողջ աշխատանքին, պահանջում է ստեղծված իրավիճակի խոր իմաստավորում, համարձակ վճիռներ և եռանդագին գործողություններ։

Երկիրը մեծ հաջողությունների է հասել հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։ Հենվելով նոր կարգերի առավելությունների վրա՝ նա պատմական կարճ ժամանակամիջոցում վերելք կատարեց դեպի տնտեսական ու սոցիալական առաջադիմության գագաթները։ Ներկայումս Սովետական Միությունն ունի հզոր, բազմակողմանիորեն զարգացած էկոնոմիկա, բանվորների, մասնագետների, գիտնականների որակյալ կադրեր։ Արտադրության, գիտության և տեխնիկայի զարգացման շատ ուղղություններում մենք հաստատուն կերպով առաջատար դիրքեր ենք գրավում աշխարհում։

Խոր փոփոխություններ են կատարվել սոցիալական կյանքում։ Պատմության մեջ առաջին անգամ աշխատավոր մարդը դարձել է երկրի տերը, իր բախտը վճռողը։ Աշխատանքի երաշխավորված իրավունքը և դրա արժանի վարձատրությունը, մարդու նկատմամբ հասարակության հոգատարությունը նրա ծննդից մինչև խոր ծերություն, հոգևոր մշակույթի լայն մատչելիությունը, հարգանքը անձի արժանապատվության և իրավունքների նկատմամբ, կառավարման գործին աշխատավորների մասնակցության անշեղ ընդլայնումը՝ այս բոլորն անանց արժեքներ են, սոցիալիստական ապրելակերպի անկապտելի

պարարտանյութերի ու անտառափայտի, գյուղատնտեսական մթերքների ու պարենային ապրանքների փոխադրման, պահպանման ու ծախսման ժամանակ ցուցաբերվող անփույթ վերաբերմունքի պատճառով։

Այսպիսի շռայլողությանը պետք է անհապաղ վերջ դնել։ Միայն կոչերով ըստ երևույթին բան դուրս չի գա. դրանք չափից ավելի են եղել։ Անհրաժեշտ է բոլոր նյութական ռեսուրսների պահպանության և ճիշտ օգտագործման համար բարձրացնել խստապահանջությունը կոնկրետ անձանց նկատմամբ, այդ թվում՝ օրենսդրական կարգով։

Հարկավոր է պատշաճ կարգուկանոն հաստատել յուրաքանչյուր ձեռնարկությունում ու կառույցում, յուրաքանչյուր սովխոզում ու կոլտնտեսությունում, յուրաքանչյուր կազմակերպությունում։ Առանց դրա խոսք անգամ չի կարող լինել որևէ ռացիոնալ տնտեսավարման մասին, էկոնոմիկայի արդյունավետության աճի մասին։

Որպես ժողովրդական տնտեսության ինտենսիվացման, կուտակված պոտենցիալի լավագույն օգտագործման գլխավոր ստրատեգիական լծակ՝ կուսակցությունը առաջին պլան է մղում գիտատեխնիկական առաջընթացի արմատական արագացումը։ Նախատեսված է հունիսին ՍՄԿԿ Կենտկոմում անցկացնել հատուկ խորհրդակցություն, որտեղ կքննարկվի այդ հարցը։ Այսօր կցանկանայինք հայտնել մի քանի սկզբունքային նկատառումներ։

Ճյուղերի մեծ մասում գիտատեխնիկական առաջընթացն ընթանում է դանդաղ, ըստ էության էվոլյուցիոն կերպով՝ գերազանցապես գործող տեխնոլոգիաների կատարելագործման, մեքենաների ու սարքավորումների մասնակի արդիականացման ուղիով։ Այդ միջոցառումները, իհարկե, որոշակի հատույց տալիս են, բայց այդ հատույցը չափազանց փոքր է։ Հարկավոր են հեղափոխական տեղաշարժեր՝ անցում սկզբունքորեն նոր տեխնոլոգիական համակարգերի, անցում տեխնիկայի վերջին սերունդների, որոնք տալիս են ամենաբարձր արդյունավետությունը։ Ըստ էության խոսքը վերաբերում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի վերազինմանը՝ գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվաճումների հիման վրա։

Հարցի սրությունը թելադրվում է նաև նրանով, որ վերջին ժամանակաշրջանում խիստ ծերացել է երկրի արտադրական ապարատը, իջել է հիմնական ֆոնդերի նորացման գործակիցը։ Տասներկուերորդ հնգամյակում առաջնահերթ խնդիրը պետք է դառնա սարքավորումների փոխարինման գործակցի էական բարձրացումը։

Այստեղ վճռական խոսքը մեքենաշինությանն է։ Դրա զարգացմանն անհրաժեշտ է առաջնահերթ բնույթ հաղորդել և արդեն տասներկուերորդ հնգամյակում մեկուկես-երկու անգամ արագացնել ճյուղի աճի տեմպերը։ Գլխավոր խնդիրն է արագորեն անցնել մեքենաների ու սարքավորումների այնպիսի նոր սերունդների արտադրությանը, որոնք ունակ լինեն ապահովելու առաջավոր տեխնոլոգիայի արմատավորումը, բազմակի բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, իջեցնելու նյութատարությունը, բարձրացնելու ֆոնդահատույցը։ Պետք է առաջնահերթ ուշադրություն նվիրել հաստոցաշինության կատարելագործմանը, հաշվողական տեխնիկայի, սարքաշինության, էլեկտրատեխնիկայի ու էլեկտրոնիկայի՝ որպես գիտատեխնիկական առաջընթացի կատալիզատորների, զարգացման արագացմանը։

Այս խնդիրների լույսի ներքո չի կարելի նորմալ համարել ինժեների աշխատանքի վարկի իջեցումը։ Այստեղ ամեն ինչ չէ, որ կարգին է, և մենք պետք է բարձրացնենք վարպետների, ինժեներների, կոնստրուկտորների, տեխնոլոգների դերն ու հեղինակությունը, մեծացնենք նրանց աշխատանքի նյութական ու բարոյական խթանները։

Գիտատեխնիկական առաջընթացի և արտադրության արդյունավետության աճի արագացումը անբաժանելի է արտադրանքի որակի վճռական բարելավումից։ Ժամանակակից տեխնիկատնտեսական, գեղագիտական, բոլոր սպառողական պահանջներին արտադրանքի որակի անհամապատասխանությունը, իսկ երբեմն էլ բացահայտ խոտանը ըստ էության նշանակում են



նյութական ռեսուրսների հափշտակում, մեր ժողովրդի աշխատանքի վատնում։ Ահա թե ինչու արտադրանքի որակի համակողմանի բարձրացումը պետք է գտնվի տնտեսական քաղաքականության կենտրոնում։ Որակ և դարձյալ որակ. ահա մեր այսօրվա լոզունգը։ Լուծելով որակի պրոբլեմը՝ կարելի է լուծել նաև քանակի պրոբլեմը։ Սա ժամանակակից տեխնիկայի նկատմամբ երկրի պահանջմունքների, բազմազան ապրանքների նկատմամբ բնակչության հարաճուն պահանջմունքի ավելի ու ավելի լրիվ բավարարման, ժողովրդական տնտեսության մեջ դեֆիցիտների հաղթահարման միակ հուսալի ուղին է։

Մենք ինչ հարց էլ որ քննարկելիս լինենք, ինչ կողմից էլ որ էկոնոմիկային մոտենանք, վերջին հաշվով ամեն ինչ հանգում է կառավարման, ամբողջությամբ վերցված տնտեսական մեխանիզմի լուրջ բարելավման անհրաժեշտությանը։ Սրանում մեկ անգամ ևս հարկ եղավ համոզվել վերջերս ՍՄԿԿ Կենտկոմում բանվորների և տնտեսական ղեկավարների հետ կայացած հանդիպման ժամանակ, ինչպես նաև ԶԻԼ այցելելիս։ Հանդիպումների մասնակիցները մեծ մտահոգությամբ էին խոսում այն մասին, թե ի՛նչն է հասունացել, թե ինչպե՛ս են աշխատանքի պայմանները բարդացել կառավարման համակարգի անկատարության պատճառով, մանրախնդիր կանոնակարգման և չափից դուրս մեծ թղթաբանության պատճառով։ Այդ վիճակից դուրս գալու միայն մեկ ելք կա. հարկավոր են անհապաղ և եռանդագին միջոցառումներ կառավարման պրոբլեմների ամբողջ կոմպլեքսի առումով։

Այժմ մեզ համար ավելի պարզ է դարձել տնտեսական մեխանիզմի վերակառուցման կոնցեպցիան։

Է՛լ ավելի զարգացնելով կենտրոնացման սկզբունքը ստրատեգիական խնդիրների լուծման գործում, հարկավոր է ավելի համարձակորեն առաջ գնալ ձեռնարկությունների իրավունքների, դրանց ինքնուրույնության ընդլայնման ուղիով, արմատավորել տնտեսական հաշվարկը և այդ հիման վրա բարձրացնել աշխատավորական կոլեկտիվների պատասխանատվությունն ու շահագրգռությունը աշխատանքի վերջնական արդյունքներով։

Այս ասպարեզում անցկացված խոշորամասշտաբ տնտեսափորձի արդյունքները կարծես թե վատ չեն։ Բայց դրանք չեն կարող լիովին բավարարել։ Ձեռք է բերված այնպիսի բնագիծ, երբ տնտեսափորձից հարկավոր է անցնել տնտեսավարման ու կառավարման ամբողջական համակարգի ստեղծման։ Իսկ սա նշանակում է, որ պետք է սկսել տնտեսական կառավարման նաև վերին էշելոնների աշխատանքի գործնական վերակառուցումը, նրանց ամենից առաջ նպատակամղել սոցիալ-տնտեսական և գիտատեխնիկական հեռանկարային խնդիրների լուծմանը, արտադրության հետ գիտության միացման առավել գործուն ձևերի որոնմանը։

Կյանքն ավելի ու ավելի բարձր պահանջներ է ներկայացնում պլանավորմանը, որը կառավարման առանցքն է։ Այն պետք է դառնա արտադրության ինտենսիվացման, տնտեսական առաջադիմական լուծումների իրականացման ակտիվ լծակը, ապահովի էկոնոմիկայի համակշռված և դինամիկ աճ։ Սրա հետ մեկտեղ միավորումների ու ձեռնարկությունների պլանները պետք է բեռնաթափել ցուցանիշների առատությունից, ավելի լայնորեն կիրառել տնտեսական նորմատիվները, որոնք նախաձեռնության և ձեռներեցության ասպարեզ են բացում։

Ժամանակն է ձեռնամուխ լինելու կառավարման կազմակերպական կառուցվածքների կատարելագործմանը, վերացնելու ավելորդ օղակները, պարզեցնելու ապարատը, բարձրացնելու նրա արդյունավետությունը։ Սա կարևոր է նաև այն պատճառով, որ կառավարման որոշ օղակներ վերածվել են խոչընդոտի, սկսել են արգելակել շարժումը։ Հարկավոր է խիստ սահմանափակել հրահանգների, կանոնադրությունների, մեթոդիկաների թիվը, որոնք երբեմն կամայականորեն մեկնաբանելով կուսակցության ու կառավարության որոշումները, կաշկանդում են ձեռնարկությունների ինքնուրույնությունը։

Մեծ նշանակություն ունի տնտեսական հաշվարկի սկզբունքները բոլոր սկզբնական աշխատանքային բջիջներին, յուրաքանչյուր աշխատատեղին հաս-

ցրնելը: Դա հնարավորություն կընձեռի կառավարման համակարգը վերևից կատարելագործելու միջոցառումները շաղկապելու աշխատանքը ներքևից կազմակերպելու և խթանելու կոլեկտիվ ձևերի զարգացման հետ, բարձրացնելու աշխատավորների ակտիվությունը:

Պակաս կարևոր չէ հանրապետական ու տեղական մարմինների պատասխանատվության բարձրացումը տնտեսական ու սոցիալ-կուլտուրական շինարարության կառավարման, աշխատավորների պահանջմունքների բավարարման գործում: Բայց դրա համար, անշուշտ, անհրաժեշտ է է՛լ ավելի ընդլայնել տեղական մարմինների իրավունքները, ուժեղացնել նրանց նախաձեռնությունն ու շահագրգռությունը արտադրության զարգացման, ռեսուրսների օգտագործման, բնակչության սպասարկման բոլոր ոլորտների կազմակերպման գործում: Ուրեմն՝ տեղերում պետք է լիովին պատասխան տան իրենց իրավասությանը վերաբերող բոլոր հարցերի լուծման համար, ավելի արագ ձերբազատվեն խնամառուական տրամադրություններից:

Ընկերնե՛ր, երկրի սոցիալ-տնտեսական զարգացումն արագացնելու բարձրագույն իմաստը կուսակցությունը համարում է այն, որ անշեղորեն, հետզհետե բարձրացնի ժողովրդի բարեկեցությունը, բարելավի սովետական մարդկանց կյանքի բոլոր կողմերը, բարենպաստ պայմաններ ստեղծի անհատի ներդաշնակ զարգացման համար: Ընդսմին անհրաժեշտ է հետևողականորեն վարել նյութական ու հոգևոր բարիքների բաշխման գործում սոցիալական արդարությունն ամրապնդելու, էկոնոմիկայի զարգացման և դրա արդյունավետության բարձրացման վրա սոցիալական գործոնների ազդեցությունն ուժեղացնելու գիծը:

Այդ գիծն արժանանում է սովետական մարդկանց լիակատար հավանությանն ու պաշտպանությանը: Եվ այժմ պետք է մշակել կոնկրետ, գործուն միջոցառումներ բաշխման մեխանիզմը համահարթումից, անաշխատ եկամուտներից, այն ամենից մաքրելու համար, ինչը հակասում է մեր հասարակության տնտեսական նորմաներին ու բարոյական իդեալներին, ապահովել յուրաքանչյուր աշխատողի և յուրաքանչյուր կոլեկտիվի նյութական դրության ուղղակի կախումը նրանց աշխատանքի արդյունքներից: Կուսակցությունն այսուհետ ևս ամենավճռական պայքարը կմղի այն բոլոր բացասական երևույթների դեմ, որոնք խորթ են սոցիալիստական ապրելակերպին, մեր կոմունիստական բարոյականությանը:

Այժմ հանգամանորեն մշակվում է այն սոցիալական ծրագիրը, որով կուսակցությունը հանդես է գալու իր XXVII համագումարում: Բայց կան անհետաձգելի խնդիրներ, որոնք հատուկ ուշադրություն են պահանջում:

Սա նախ և առաջ վերաբերում է պարենային ծրագրի կենսագործմանը: Գյուղատնտեսության զարգացման ասպարեզում վերջին տարիներս դրական վերափոխումներ են կատարվել, որոշ չափով բարելավվել է սննդամթերքի մատակարարումը բնակչությանը: Բայց սա դեռևս հեռու է նրանից, ինչ հարկավոր է: Կոլտնտեսությունների ու սովխոզների, վերամշակող ձեռնարկությունների տրամադրության տակ կան պարենային ապրանքների արտադրության զգալի մեծացման հնարավորություններ: Հարկավոր է տանտիրոջ պես տնօրինել դրանք, արդյունավետ օգտագործել առկա պոտենցիալը:

Երբեմն հանդիպում ենք պարենամթերքի մատակարարման և հատկապես անասնակերի ապահովման բոլոր հոգսերը կենտրոնի վրա բարդելու տեղական մարմինների փորձերի: Այդպիսի պրակտիկան անընդունելի է: Խնդիրն այն է, որ սկսեն ավելի լիակատար չափով գործել պարենամթերքի արտադրությունն ավելացնելու ռեզերվները ինչպես կոլտնտեսություններում ու սովխոզներում, այնպես էլ քաղաքացիների ու ձեռնարկությունների օժանդակ տնտեսություններում:

Մի խոսքով, ընկերնե՛ր, մենք պետք է ուժեղացնենք պարենային ծրագրի կատարման աշխատանքը, այն լրացնենք ագրոարդյունաբերական համալիրի վերամշակող ճյուղերը զարգացնելու, նրանց ձեռնարկությունները կոլտնտեսություններին ու սովխոզներին մոտեցնելու լուրջ միջոցառումներով: Այդպի-



սի հանձնարարություններ քաղբյուրոն տվել է ՍՍՀՄ պետպլանին ու համապատասխան մինիստրություններին, և նրանք պետք է ամենայն պատասխանատվությամբ ու հիմնավորապես մոտենան դրանց կատարմանը:

Հետագա կատարելագործում է պահանջում նաև ագրոարդյունաբերական համալիրի կառավարումը: Այստեղ դեռևս բնավ էլ ամեն ինչ չի արված: Գերատեսչական շահերի ազդեցությամբ շրջանային և մարզային միավորումները հաճախ չեն կարողանում հարկ եղածին պես համաձայնեցված լուծել գյուղատնտեսության և դրա հետ կապված ճյուղերի կոմպլեքսային զարգացման հարցերը: Եթե մենք հաստատ համոզված ենք, որ հողի վրա պետք է լինի միասնական տեր և ագրոարդյունաբերական միավորումներն են լիակատար պատասխանատվություն կրում պարենային ծրագրի կատարման համար, մի բան, որը կարծում ենք, ոչ ոքի մեջ կասկած չի հարուցում, ապա հարկավոր է իրականացնել այնպիսի միջոցառումներ, որոնք հնարավորություն կընձեռեն կառավարելու, պլանավորելու և ֆինանսավորելու ագրոարդյունաբերական համալիրը բոլոր մակարդակներում՝ որպես միասնական ամբողջություն: Հենց այդպես էլ մենք ձեզ հետ պայմանավորվեցինք ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի մայիսյան պլենումում:

Շատ բան պետք է անել նաև արդյունաբերական ապրանքների ու սպասարկումների պահանջարկի ավելի լրիվ բավարարման համար, շուկան հագեցնել պետքական արտադրանքով, բարելավել արտադրվող ապրանքների որակը և ընդլայնել տեսականին, ավելի մեծ ճկունություն հաղորդել գների համակարգին, բարձրացնել առևտրի կուլտուրան: Այս խնդիրների լուծմանն է ենթարկված ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և սպասարկումների ոլորտի զարգացման կոմպլեքսային ծրագիրը: Ծրագրով նախատեսվում է էապես ավելացնել բարձրորակ հագուստի ու կոշիկի, կուլտուրկենցաղային և տնտեսական գործածության արդիական ապրանքների արտադրությունը, զարգացնել սպասարկումների բազմապիսի տեսակները:

Մոտ ժամանակներս այդ ծրագիրը կհաստատվի: Դրա հետ մեկտեղ, ինչպես գիտեք, ծրագրի մի շարք ուղղություններով արդեն ընդունված են Կենտրոնական կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումներ: Խոսքը վերաբերում է կոշիկի արտադրության ավելացմանը, տեղական արդյունաբերության, բնակարանների նորոգման ու կառուցման սպասարկումների զարգացմանը, հեռախոսային կապով բնակչության սպասարկման բարելավմանը: Կարևոր է, որ սովետական մարդիկ արդեն մոտ ժամանակներս զգան դրական փոփոխությունները:

Մենք չենք կարող հաշվի չառնել այն տեղաշարժերը, որ կատարվում են վճարունակ պահանջարկի կառուցվածքում: Աշխատավորներն ուզում են իրենց եկամուտներն ավելի մեծ չափով օգտագործել բնակարանային և կուլտուրկենցաղային պայմանների բարելավման, հանգստի, տուրիզմի և այլ նպատակների համար: Այդ պահանջարկներն ու պահանջմունքները պետք է ավելի լրիվ բավարարվեն: Դա ձեռնտու է նաև պետությանը: Բայց այստեղ հնարավորությունները թույլ են իրացվում: Վերցնենք, թեկուզ, այնպիսի մի կոնկրետ հարց, ինչպիսին այգեգործական-բանջարաբուծական ընկերությունների զարգացումն է: Այս գործն անչափ օգտակար է, դրա նկատմամբ լայն հետաքրքրություն է ցուցաբերվում: Սակայն դա դեռևս պատշաճ զարգացում չի ստացել: Այգու հողամասերի ու տնակների, շինանյութերի ու գույքի պահանջարկը ամենևին էլ լրիվ չափով չի ապահովվում: Քաղբյուրոն, շատ մանրամասնորեն քննարկելով այդ հարցը, հանձնարարեց համապատասխան միջոցներ ձեռնարկել մարդկանց պահանջարկներին առավելագույնս ընդառաջելու, անհիմն արգելքները վերացնելու համար:

Հասարակության և յուրաքանչյուր մարդու կյանքում, ուրեմն նաև կուսակցության սոցիալական քաղաքականության մեջ ավելի ու ավելի մեծ նշանակություն են ստանում այնպիսի ոլորտներ, ինչպիսիք են առողջապահությունը և ժողովրդական կրթությունը: Մենք շատ բանի ենք հասել դրանց զարգացման ասպարեզում, ապահովել ենք կենսականորեն կարևոր այդ բա-

րիքներից օգտվելու բոլոր քաղաքացիների հավասար հնարավորություն։ Բայց այսօր այստեղ նույնպես նոր խնդիրներ են ծառանում։

Արդի պահանջների տեսանկյունից էական բարելավման կարիք ունեն առողջապահության նյութատեխնիկական բազան, բժշկական սպասարկման որակը, դեղորայքով բնակչության ապահովումը։ Այդ բնագավառում լուրջ միջոցառումների անհրաժեշտության մասին վերջերս խոսվեց քաղբյուրոյում։ Դրանք պետք է նախատեսել տասներկուերորդ հնգամյակի պլաններում։

Մենք սկսել ենք դպրոցի ռեֆորմը, որի նշանակությունը երկրի ապագայի համար դժվար է գերագնահատել։ Եվ այժմ պահանջվում է ոչ թե ձևականորեն, այլ ըստ էության վերաբերվել առաջադրված խնդիրներին և արմատապես բարելավել աճող սերունդների ուսուցման ու դաստիարակության որակը, հանրօգուտ աշխատանքի համար նրանց պատրաստումը։

Կան նաև շատ այլ հարցեր, որոնց մասին պետք է հանգամանորեն խորհել, լուծման ուղիներ գտնել։ Դրանցից է աշխատանքի վետերանների և, մանավանդ, այն վետերանների նյութական վիճակի բարելավումը, ովքեր վաղուց իրենց վաստակած հանգստի են գնացել, երիտասարդ ընտանիքների կենսապայմանների, մայրության ու մանկության պահպանության բարելավումը։ Եվ, իհարկե, կարևոր է այսուհետ ևս մեծացնել ջանքերը սոցիալական այնպիսի պրոբլեմի լուծման գործում, ինչպիսին է բնակարանային պրոբլեմը, որպեսզի հեռանկարային առումով յուրաքանչյուր ընտանիք ապահովվի առանձին բնակարանով կամ բարեկարգ տնով։

Մենք պետք է անսահման ուշադիր լինենք այն ամենի նկատմամբ, ինչ վերաբերում է մարդուն, նրա աշխատանքին, նյութական բարեկեցությանն ու հանգստին։ Դա մեզ համար քաղաքականության հիմնական հարց է։

Իսկ հիմա տարեկան պլանի կատարման հետ կապված ընթացիկ գործերի մասին։ Մենք տարին սկսեցինք ոչ այնքան լավ. առաջին եռամսյակում արդյունաբերական արտադրանքի հավելաճը կազմեց ընդամենը երկու տոկոս։ Առանձնապես ետ պահեցին նավթը, մետաղը, էներգետիկան, տրանսպորտը։ Բանն դանդաղեցին աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը։ Ապրիլի լավ չէ ինքնարժեքի, շահույթի, մյուս ցուցանիշների հարցում։ Ապրիլին վիճակը մի փոքր շտկվում է, բայց հարկավոր է ջանքերը մեծացնել բացթողնվածը մնացած ութ ամսում լրացնելու համար։ Ուղղակի կասենք, հեշտ խնդիր չէ։ Բայց հարցն այսպես է դրված. 1985 թվականի պլանը պետք է կատարվի և ընդ որում առանց որևէ ճշգրտման։ Սրան պետք է նպատակամղել սոցիալիստական մրցությունը, կազմակերպչական ու քաղաքական ամբողջ աշխատանքը։

Պատասխանատու խնդիրներ են դրված գյուղի աշխատավորների առջև։ Հարկավոր է այնպես աշխատել, որ երկրին ուրախացնենք բարձր արդյունքներով։

Միաժամանակ պետք է ապահովել եկող տարվա պլանի և ամբողջությամբ վերցված տասներկուերորդ հնգամյակի որակյալ մշակումը։ Իսկ դրա համար նպատակահարմար կլիներ արդեն մոտ ժամանակներս կոնտրոլ թվերն ու նորմատիվները հասցնել մինիստրություններին ու գերատեսչություններին, միավորումներին ու ձեռնարկություններին։ Դա հնարավորություն կտա ավելի լրիվ չափով հաշվի առնելու ռեզերվների մոբիլիզացման մասին աշխատավորական կոլեկտիվների առաջարկությունները և, որ ամենագլխավորն է, եկող տարվա սկզբից կազմակերպված թևակոխելու նոր՝ տասներկուերորդ հնգամյակը, որը պետք է եռանդուն մեկնարկ ունենա։

Ընկերնե՛ր, արդի փուլի բարդ ու մասշտաբային խնդիրները, որոնք շոշափում են մեր կյանքի բոլոր կողմերը, կարելի է լուծել միայն հենվելով ժողովրդի կենդանի ստեղծագործության, նրա բանականության, տաղանդի և աշխատանքի վրա։ Մենք պետք է այդ խնդիրների կատարման համար ոտքի հանենք միլիոնավոր աշխատավորների, մշտապես զարգացնենք բանվոր դասակարգի, գյուղացիության և մտավորականության նախաձեռնությունն ու եռանդը, գործի մղենք այն անսպառ հնարավորությունները, որ ունի սոցիա-



լիստական հասարակությունը, ավելի ակտիվորեն պաշտպանենք բոլոր օգտակար ձեռնարկումները։

Ժողովրդի ավանգարդում միշտ ընթացել և ընթանում է լենինյան կուսակցությունը, կոմունիստների կուսակցությունը։ Այսօր նա կոչված է գլխավորելու համաժողովրդական շարժումը երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման նպատակով։ Դրա համար պահանջվում է, որ հանուն մոտակա ու հեռանկարային նպատակների իրագործման պայքարի ելնի յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն, յուրաքանչյուր կոմունիստ։

Համագումարի նախապատրաստությունը, առաջիկա հաշվետվություններն ու ընտրությունները պետք է ըստ ամենայնի նպաստեն կոմունիստների ակտիվության և պատասխանատվության բարձրացմանը, կուսակցական կազմակերպությունների մարտունակության ուժեղացմանը, մասսաների հետ նրանց կապերի ամրապնդմանը և, վերջին հաշվով կուսակցության ղեկավար դերի բարձրացմանը։

Հաշվետու-ընտրական կամպանիան սկսվելու է սկզբնական կազմակերպություններից, որոնք կազմում են կուսակցության գլխավոր պոտենցիալը։ Այստեղ կուսակցական քաղաքականությունը մարմնավորվում է ռեալ գործում։ Այստեղ առանձնապես ցայտուն են երևում մեր հաջողություններն ու թերությունները, մեր հնարավորություններն ու ռեզերվները։

Ահա թե ինչու այնքան կարևոր է, որ կոմունիստների ժողովներում լենինաբար, առանց կեղծ իդեալականացման, առանց դատարկ բանավեճերի ամփոփվեն արվածի արդյունքները, հատիկ-հատիկ կուտակված դրական փորձը, առանց վախենալու բացահայտվեն թերությունները, ի հայտ բերվեն արտադրության աճի, էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման, գործի բարելավման հնարավորություններն ու կոնկրետ ուղիները։

Կուսակցական կոմիտեների պարտքն է առավելագույն հոգատարություն ցուցաբերել, որպեսզի սկզբնական կազմակերպությունների ժողովներն անցնեն գործարար կերպով, քննադատության և ինքնաքննադատության, բոլշևիկյան անկեղծության մթնոլորտում, որպեսզի քննարկվեն կոլեկտիվների կյանքի ցավոտ հարցերը, այն ամենի վերացման ուղիները, ինչն արգելակում է աշխատանքը։ Անհրաժեշտ է այնպես անել, որ կուսակցության յուրաքանչյուր անդամ կարողանա լիովին օգտվել առաջարկություններ ու դիտողություններ անելու իր կանոնադրական իրավունքից, որ ոչ մի քննադատական ելույթ չանտեսվի։

Այսօր առանձնապես հրատապ է կարգուկանոնի և կարգապահության ամրապնդման հարցը։ Սա օրվա հրամայական պահանջն է, որը սովետական մարդիկ պետք է հասկանան լայնորեն, դրա մեջ ներառնելով կարգուկանոնը արտադրության մեջ ու սպասարկման ոլորտում, հասարակական կյանքում ու կենցաղում, յուրաքանչյուր աշխատավորական բջջում, յուրաքանչյուր քաղաքում, յուրաքանչյուր գյուղում։ Եվ մենք բոլոր ուժերը կգործադրենք, որպեսզի երկրում ամրապնդվի այդ կարգը։ Կյանքը ցույց է տվել, թե ժողովրդի մեջ ինչպիսի միահամուռ հավանություն են գտնում կարգուկանոնի ամրապնդման միջոցառումները, թե ինչպիսի ծանրակշիռ արդյունքներ են տալիս դրանք։ Բայց պետք է ուղղակի ասել. վերջին ժամանակներս այդ կարևորագույն հարցի նկատմամբ ուշադրությունը թուլացել է։ Եվ այստեղ նախ և առաջ հարկավոր է ավելի խստապահանջ լինել կոլեկտիվների ղեկավարների նկատմամբ, որոնք անձնական պատասխանատվություն են կրում կարգապահության համար։ Հաճախ է պատահում, որ ձեռնարկությունների ղեկավարները ներում են աշխատողների անկարգապահությունը, հույս ունենալով, որ ենթականերն իրենց հերթին կներեն իրենց վրիպումները։ Փոխադարձ ներման այս հոգեբանության հետ մենք չենք հաշտվի։

Կարգապահությունը և կարգուկանոնն ամրապնդելու համար անհրաժեշտ է ևս մեկ պարտադիր պայման։ Յուրաքանչյուրը պետք է զբաղվի իր գործով, բարեխղճորեն կատարի իր ուղղակի պարտականությունները։ Գործունեության ոչ մի ոլորտում էական արդյունքների չի կարելի հասնել այնքան ժամանակ,

քանի դեռ կուսակցական աշխատողը տնտեսական աշխատողի տեղը կբռնի, ինժեները՝ ցրիչի, քանի դեռ գիտնականը կաշխատի բանջարեղենի բազայում, ջուլհակուհին՝ ֆերմայում: Ցավոք, այսօր հաճախ հենց այդպես էլ լինում է: Իհարկե, նման վիճակը միանգամից չի ստեղծվել, ինչ-որ տեղ պայմանավորված է հայտնի դժվարություններով և մեկ օրում դա հնարավոր չէ ուղղել: Իսկ ուղղել պետք է: Միայն այդ պարագայում մենք կկարողանանք ինչպես հարկն է ազատվել անպատասխանատվությունից ու թափթփվածությունից:

Հարկավոր է ավելի մեծ պահանջներ ներկայացնել շրջանային, քաղաքային, մարզային, երկրամասային առաջիկա կուսակցական կոնֆերանսների, միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարների տոնայնությանը, գործարարությանը և խստապահանջությանը: Դրանցում տեղ չպիտի գտնեն, ինչպես լինում է երբեմն, գովաբանություններ ու հաճոյախոսություններ, ընդհանուր բառերի ետևում գործի էությունը թաքցնելու, թերությունների համար մեղքը օբյեկտիվ հանգամանքների կամ գերատեսչական թերացումների վրա բարդելու փորձեր:

Մենք հույս ունենք, որ ղեկավար կադրերը, Կենտրոնական կոմիտեի անդամները, մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարները անմիջականորեն կմասնակցեն ո՛չ միայն կուսակցական կոնֆերանսներին, այլև սկզբնական կազմակերպությունների ժողովներին, ամեն ինչ կանեն, որպեսզի կոմունիստների նախահամագումարյան կոլեկտիվ խորհրդակցությունն անցնի կոնստրուկտիվ ու քննադատական ամենաբարձր մակարդակով:

Ժամանակի գլխավոր լոզունգները, որոնք պետք է դարձնել մեր նախահամագումարյան ժողովների, կուսակցության XXVII համագումարի ողջ նախապատրաստության լեյտմոտիվը, հետևյալն են. ստեղծագործական աշխատանք, խոսքի ու գործի միասնություն, նախաձեռնություն և պատասխանատվություն, պահանջկոտություն իր և ընկերների նկատմամբ: Այստեղ օրինակ պետք է տան կոմունիստները: Անհրաժեշտ է ուժեղացնել կուսակցության յուրաքանչյուր անդամի նկատմամբ պահանջկոտությունը հասարակական պարտքի հանդեպ վերաբերմունքի համար, կուսակցական որոշումների կատարման համար, կուսակցականի ազնիվ ու մաքուր կերպարի համար: Կոմունիստը գնահատվում է իր արարքներով ու գործերով: Ուրիշ չափանիշներ չկան ու չեն կարող լինել:

Հաշվետվությունների և ընտրությունների ընթացքում պետք է ձևավորվեն ղեկավար կուսակցական մարմինները, դրանք համալրվեն թարմ ուժերով, վերլուծվեն հասունացած կադրային հարցերը: Կուսակցական կոմիտեների՝ վերջերս տեղի ունեցած պլենումները համոզիչ կերպով ցույց տվեցին, թե ինչպիսի հասուն կադրեր ունի կուսակցությունը: Դրա հետ մեկտեղ պլենումները մի անգամ ևս հաստատեցին կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության լենինյան սկզբունքները խստագույնս կիրառելու անհրաժեշտությունը: Այնտեղ, ուր այդ սկզբունքները խախտվում են, ուր թույլ է տրվում աշխատողների առաջքաշում անձնական նվիրվածության, հաճոյակատարության, պրոտեկցիոնիզմի հիման վրա, այնտեղ անխուսափելիորեն սկսում են մարել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, թուլանալ կապերը մասսաների հետ և որպես հետևանք սկսվում են ձախողումներ աշխատանքում:

Քաղբյուրոն սկզբունքորեն կարևոր է համարում այսուհետ ևս վարել կուսակցական ղեկավարման կայունության ապահովման, փորձառու և երիտասարդ աշխատողների ճիշտ զուգորդման գիծ: Բայց դա չի կարող ուղեկցվել կադրերի տեղաշարժման մեջ որևէ լճացումով: Կոմունիստները Կենտրոնական կոմիտեին գրած իրենց նամակներում ուշադրություն են հրավիրում այն բանի վրա, որ որոշ ղեկավարներ, երկար ժամանակ գրավելով միևնույն պոստը, հաշտվում են թերությունների հետ: Այսհաճախ դադարում են տեսնել նորը, հարկավոր է գտնել մեր ղեկավար կադրերի ավելի տեղ խորհելու շատ բան կա, ակտիվ տեղաշարժի ուղիներ: Անհրաժեշտ է ավելի համարձակորեն պատաս-



խանատու պոստերի առաջ քաշել կանանց և երիտասարդ հեռանկարային աշխատողներին:

Եվս մեկ կարևոր եզրակացություն, որը հուշում են կուսակցական կոմիտեների անցած պլենումները. ոչ մի կուսակցական կազմակերպություն, ոչ մի աշխատող չի կարող վերահսկողությունից դուրս մնալ: Վերջին երկու տարվա ընթացքում ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի և քարտուղարության նիստերում այս կամ այն հարցի վերաբերյալ հաշվետվություններ են տվել միութենական շատ հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության երկրկոմների և մարզկոմների առաջին քարտուղարները: Լսվել են մի շարք սկզբնական կուսկազմակերպությունների, շրջկոմների, քաղկոմների, շատ մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարների հաշվետվությունները: Այս աշխատանքը, իհարկե, պետք է այսուհետ ևս առաջ ընթանա, ակտիվորեն անցկացվի հանրապետություններում, երկրամասերում ու մարզերում: Դա համապատասխանում է մեր ներկուսակցական կյանքի նորմերին:

Քանի որ խոսք բացվեց վերահսկողության մասին, ապա կուզենայի նաև այսպիսի մի նկատառում հայտնել: Ստուգել պետք է, վերահսկել անհրաժեշտ է, և ամեն մի ստուգում պիտի գործնական օգուտ տա, գործի շահերին ծառայի: Բայց հազիվ թե արդարացված են միևնույն, երբեմն փոքր հարցի կապակցությամբ ստուգումները, մեծաթիվ հանձնաժողովները, որոնք կազմվում են ձևական նկատառումներով, մարդկանց կտրելով աշխատանքից, ստեղծելով նյարդայնության մթնոլորտ:

Հաշվետու ժողովները, կոնֆերանսները և համագումարները հնարավորություն են տալիս բազմակողմանի գնահատելու ընտրովի կուսակցական մարմինների գործունեությունը, մանրամասն խորամուխ լինելու նրանց աշխատանքի բովանդակության ու մեթոդների մեջ: Ընդ որում, շեշտն առաջին հերթին պետք է դրվի այն բանի վերլուծության վրա, թե նրանք ինչպե՛ս են լուծում մարդկանց, արտադրական կոլեկտիվների կյանքի ու աշխատանքի, էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման հանգուցային հարցերը, թե ինչպե՛ս են կազմակերպչական աշխատանք վարում մասսաների շրջանում: Անհրաժեշտ է հաստատակամորեն շարունակել ստորին կուսակցական կազմակերպություններին ամենօրյա և առարկայական օգնություն ցույց տալու, գործարարությունն ու օպերատիվությունը բարձրացնելու, թղթերի հոսքը կրճատելու, աշխատանքի գրասենյակային ոճը, բազմաթիվ նիստերի ու խորհրդակցությունների ձգտումը հաղթահարելու գիծը:

Պետք է ուղղակի ասել. այս երևույթների դեմ մղվող պայքարում բնավ ամեն ինչ չի արված: Դրա օրինակները շատ են: Վերջերս ՍՄԿԿ Կենտկոմը լսեց կուսակցության Կալինինի և Ցելինոգրադի մարզկոմների հաշվետվությունները ագրոարդյունաբերական համալիրի զարգացման հարցերի վերաբերյալ: Բացահայտվեցին տնտեսության կուսակցական ղեկավարման գործում, կադրային և դաստիարակչական աշխատանքում, մարզկոմների բյուրոների և քարտուղարների գործունեության ոլորտում տեղ գտած լուրջ թերություններ: Այստեղ թերությունների գլխավոր պատճառը ոչ քննադատական վերաբերմունքն է կատարվածի նկատմամբ, ձեռք բերված արդյունքները չափազանցնելու հակումը, բացասական երևույթները նկատել չցանկանալը: Հարկ եղավ ձեռնարկել համապատասխան միջոցներ:

Ղեկավարման գործում հին մոտեցումների հակվածություն, ինքնաքննադատության բացակայություն են դրսևորվում նաև մինիստրությունների ու գերատեսչությունների որոշ ղեկավարների շրջանում: Դա խանգարում է գործին: Կյանքն ինքն է օրակարգի հարց դարձնում աշխատանքը վճռականորեն բարելավելու, հասարակության զարգացման արդի փուլի պահանջներին այդ աշխատանքը համապատասխանեցնելու անհրաժեշտությունը:

Այժմ արդեն բավարար չէ հասարակ ճշտակատարությունը, թեև երբեմն դա էլ է պակասում: Ավելի ու ավելի է մեծանում այնպիսի գործնական հատ-

կությունների նշանակությունը, ինչպիսիք են՝ բանիմացությունը, նորի զգացումը, նախաձեռնությունը, պատասխանատվությունն իր վրա վերցնելու համարձակությունն ու պատրաստակամությունը, խնդիրն առաջադրելու և դրա լուծումը մինչև վերջ հասցնելու կարողությունը, տնտեսավարման քաղաքական իմաստը չանտեսելու ընդունակությունը: Եվ կասեի նաև՝ աշխատել սովորելու ցանկությունը: Հաշվետու ընտրական կամպանիայի կարևոր խնդիրն է սովետների, արհմիությունների, կոմերիտմիության և մեր քաղաքական սիստեմի մյուս օղակների, սովետական դեմոկրատիայի զարգացման ողջ աշխատանքի կուսակցական ղեկավարման հետագա ուժեղացումը:

Պետք է միշտ հիշել լենինյան այն միտքը, որ սոցիալիստական դեմոկրատիան չի կարելի վերացականորեն հասկանալ: Այն եղել ու մնում է էկոնոմիկայի զարգացման, մարդու ակտիվության աճի, մասսաների կոմունիստական դաստիարակության միջոց: Հենց այս կերպ է գործել ու կգործի կուսակցությունը՝ խորացնելով սովետական կարգերի դեմոկրատիզմը:

Կուսակցության XXVII համագումարի նախապատրաստությունը, աշխատավորների կողմից համագումարի փաստաթղթերի նախագծերի քննարկումը, անտարակույս, կխթանեն սովետական մարդկանց ակտիվությունը: Կուսակցական կոմիտեները պետք է լավ հոգան այն մասին, թե ինչպե՞ս է ապահովվում հրապարակայնությունը, ինչպե՞ս են աշխատում մասսաների հետ կապի բոլոր միջոցները, թե ինչպիսի ուշադրություն է նվիրվում հասարակական կարծիքին, քաղաքացիների քննադատական դիտողություններին, դիմումներին ու նամակներին: ՍՄԿԿ Կենտկոմը դա համարում է մեծ օգնություն աշխատանքում, իրենց պետության գործերով սովետական մարդկանց շահագրգռության ակնբախ դրսևորում:

Կենտրոնական կոմիտեում բազմիցս քննարկվել են կուսակցության քաղաքական-դաստիարակչական, գաղափարախոսական աշխատանքի խնդիրները: Այս տեղամասի նկատմամբ ցուցաբերվող ուշադրությունը հասկանալի է, կա նաև առաջընթաց: Բայց, կարծում եմ, դեռևս բնավ ամեն ինչ չի արված, որպեսզի գաղափարախոսական աշխատանքը սերտորեն կապված լինի կյանքի հետ: Շարունակում են խանգարել ձևականությունը և խրատականությունը: Վնասը հաճախ գալիս է դատարկախոսությունից, մարդկանց հետ ճշմարտության լեզվով խոսել չկարողանալուց: Եվ երբեմն այնպես է ստացվում, որ մարդը լսում է մի բան, իսկ կյանքում տեսնում մի ուրիշ բան: Այստեղ հարցը լուրջ է և ո՛չ միայն դաստիարակչական է, այլև քաղաքական:

Գաղափարաքաղաքական դաստիարակությունն իր բոլոր ձևերով պետք է առավելագույնս շաղկապված լինի մեր օրերի գլխավոր խնդրի՝ երկրի սոցիալ-տնտեսական զարգացման արագացման հետ: Այս բանին չի կարելի հասնել, եթե համակողմանիորեն հաշվի չառնվեն ներքին կյանքի պայմանները, միջազգային իրադրության առանձնահատկությունները՝ ամբողջությամբ վերցված: Դուք գիտեք, որ այս իսկ հարցերին էր նվիրված անցած տարվա դեկտեմբերի համամիութենական գիտագործնական կոնֆերանսը, որը քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքը: Այսօր մի անգամ ևս կարելի կլիներ հիշեցնել, որ պրոպագանդայում, գաղափարախոսական ողջ աշխատանքում, թող սա ոմանց տարօրինակ չթվա, նույնպես պետք է լինի ավելի քիչ խոսք և ավելի շատ գործ:

Հատկապես պիտի խոսել մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատանքի մասին՝ գործարանայիններից, շրջանայիններից մինչև կենտրոնականները: Մամուլը, հեռուստատեսությունը, ռադիոն մասսաների կազմակերպման ու դաստիարակության, հասարակական կարծիքի ձևավորման ազդու միջոցներ են: Վերջին ժամանակներս դրական փոփոխություններ են կատարվում դրանց աշխատանքում: Բայց կյանքը պահանջում է ավելին:

Ինֆորմացիայի միջոցները կոչված են խորապես վերլուծելու իրադարձություններն ու երևույթները, բարձրացնելու լուրջ պրոբլեմներ և առաջարկելու դրանց լուծման ուղիներ, համոզելու իրենց բովանդակալիությամբ, օպե-



րատիվությամբ, ինֆորմացիոն հագեցվածությամբ: Մարդուն ուղղված խելամիտ, կուսակցական խոսքը միտք է արթնացնում, զարգացնում մարդկանց նախաձեռնությունը, դաստիարակում անհաշտ վերաբերմունք թերությունների նկատմամբ: Մամուլի, հեռուստատեսության, ռադիոյի ներգործունությունը զգալիորեն մեծանում է, երբ կուսակցական կոմիտեները նրանց ակտիվ օգնություն և աջակցություն են ցույց տալիս: Հարկավոր է միայն, որ այդ օգնությունն ու աջակցությունը միշտ լինեն ժամանակին ու ծանրակշիռ: Եվ, իհարկե, պետք է սկզբունքային կուսակցական գնահատական ստանան հիմնավորված քննադատությունը ճնշելու կամ անտեսելու բոլոր փորձերը:

Նոր արժեքներով հասարակության հոգևոր կյանքի հարստացման, սովետական մարդու գաղափարական ու բարոյական վեհացման գործում մեծ է գրականության և արվեստի դերը: Արվեստագետ մտավորականները՝ գրողները, բանաստեղծները, կոմպոզիտորները, նկարիչները, թատրոնի ու կինոյի աշխատողները, մեծ հեղինակություն և ճանաչում են վայելում: Բայց այստեղից հետևում է նաև նրանց հսկայական պատասխանատվությունը հասարակության հանդեպ: Այն ամեն լավագույնը, ինչ ստեղծել են սովետական գրականությունն ու արվեստը, միշտ անբաժանելի է եղել կուսակցության ու ժողովրդի գլխավոր գործերից ու հոգսերից: Կասկած չկա, որ այսօր լուծվող նոր խնդիրները արժանի արձագանք կգտնեն սոցիալիստական կյանքի արդարությունը հաստատող գեղարվեստական ստեղծագործության մեջ:

Ընկերնե՛ր, մենք գտնվում ենք ֆաշիզմի դեմ նվաճված մեծ հաղթանակի 40-ամյակի շեմին: Հիշելով, թե ինչպիսի աներևակայելի թանկ գնով հաղթանակը նվաճեցին սովետական ժողովուրդը, հակահիտլերյան կոալիցիայի մյուս ժողովուրդները, կրկին ու կրկին անդրադառնալով մարդկությանը բաժին ընկած ողբերգությանը, կոմունիստական կուսակցությունը, սովետական կառավարությունը իրենց արտաքին քաղաքական գործունեության գլխավոր իմաստն են համարում թույլ չտալ, որ որևէ նման բան կրկնվի: Առավել ևս թույլ չտալ միջուկային աղետ:

Սովետական Միությունը, մեր կուսակցությունը միշտ հավատարիմ են եղել ու հավատարիմ են մնում ֆաշիզմին հաղթած ժողովուրդների անմահ սխրագործության սրբազան հիշատակին:

Սովետական Միությունը կրկին ու կրկին հայտարարում է, որ հաստատակամորեն կհետևի խաղաղության և խաղաղ գոյակցության լենինյան կուրսին, որը սահմանվում է մեր հասարակական կարգերով, մեր բարոյականությամբ և աշխարհայացքով: Մենք հանդես ենք գալիս միջազգային իրավունքի նորմաները իրոք հարգելու վրա հիմնված հավասար, կոռեկտ, եթե ուզում եք, քաղաքակիրթ միջպետական հարաբերությունների օգտին: Բայց պետք է անսահման պարզ լինի. երկու հասարակական սիստեմների պատմական վեճը ռազմական միջոցներով լուծելու փորձերից իմպերիալիզմի հրաժարվելու դեպքում միայն կհաջողվի միջազգային հարաբերությունները նորմալ համագործակցության հունի մեջ դնել:

Մարդկության խաղաղ ապագայի համար մղվող պայքարում անհաղթահարելի ուժ են սոցիալիստական պետությունների համախմբված ընկերակցությունը, նրա տնտեսական ու պաշտպանական հզորությունը, միջազգային ասպարեզում նրա գործողությունների միասնությունը: Սոցիալիզմի եղբայրական երկրների բացառիկ կարևոր պատմական նվաճումն է ՆԱՏՕ-ի ագրեսիվ բլոկի պետությունների հետ ռազմաստրատեգիական հավասարակշռության հասնելը: Այդ հավասարակշռությունը պետք է ըստ ամենայնի պահպանել հանուն խաղաղության: Դա հուսալիորեն զսպում է իմպերիալիզմի ագրեսիվ ախորժակը:

Մենք այսուհետ ևս ջանք չենք խնայի, որպեսզի ՍՍՀՄ զինված ուժերը անհրաժեշտ ամեն ինչ ունենան մեր հայրենիքի, նրա դաշնակիցների հուսալի պաշտպանության համար, որպեսզի ոչ ոք մեզ չկարողանա հանկարծակիի բերել:





Այսօր մարդկությունն ունի խաղաղության հսկայական պոտենցիալ, բազմակողմանի փորձ, պատմական ու սոցիալական բավարար տեսահորիզոն՝ հասկանալու համար, թե ուր կարող է հասցնել ագրեսիայի քաղաքականությունը։ Այս բանի ըմբռնումը ավելի սերտորեն է համախմբում խաղաղասեր ուժերին, ակտիվացնում հակապատերազմական, հակամիջուկային շարժումները, պատերազմի սպառնալիքի դեմ պայքարի հանում նորանոր առաջադիմական, դեմոկրատական ջոկատների։ Հարկ չկա զարմանալու, որ Վաշինգտոնի եսամոլական, ռազմամոլական կուրսը ավելի մեծ քննադատություն ու դիմադրություն է առաջ բերում շատ երկրներում։ Խաղաղության պայքարի ընդհանուր գործում հսկայական ավանդ են ներդնում կոմունիստական ու բանվորական կուսակցությունները, արհմիությունները, մասսայական հասարակական մյուս կազմակերպությունները։

Չկա ոչ մի ժողովուրդ, որը պատերազմ ցանկանար։ Սա հսկայական ռեզերվների ու հնարավորությունների աղբյուր է խաղաղության և առաջադիմության քաղաքականության իրականացման համար։ Պետք է ամեն ինչ արվի, որպեսզի միլիտարիզմի և ագրեսիայի ուժերը գերակշռություն ձեռք չբերեն միջազգային հարաբերություններում։

Մենք համոզված ենք. համաշխարհային պատերազմը կարելի է կանխել։ Բայց, ինչպես ցույց է տալիս փորձը, խաղաղության պահպանման և ընդհանուր անվտանգության ապահովման համար մղվող պայքարը դյուրին գործ չէ, դա նորանոր ջանքեր է պահանջում։ Իմպերիալիզմի մեղքով միջազգային իրադրությունը շարունակում է մնալ տագնապալի ու վտանգավոր։ Մարդկությունը հայտնվել է երկընտրանքի առաջ. կա՛մ լարվածության ու առճակատման հետագա ուժեղացում, կամ էլ փոխադարձաբար ընդունելի այնպիսի համաձայնությունների կոնստրուկտիվ որոնումներ, որոնք կասեցնեին միջուկային կոնֆլիկտի նյութական նախապատրաստության պրոցեսը։

Ստեղծված իրավիճակի համար պատասխանատվություն են կրում նախ և առաջ Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարող շրջանները, և այս մասին պետք է ասել ամենայն որոշակիությամբ։ Նրանք շարունակում են հանդես գալ որպես սպառազինությունների մրցավազքի նախաձեռնողներ և սաբոտաժի են ենթարկում զինաթափումը, որի մասին համաշխարհային հասարակայնությունը լավ գիտե։ Նրանց նախաձեռնությամբ ստեղծվում են զանգվածային ոչնչացման զենքի նորանոր տեսակներ։ Այսօր սպառազինությունների մրցավազքը փորձում են տարածել նաև տիեզերքում։ Աշխարհի իրադրությունը ապակայունացնում են նաև հարյուրավոր ամերիկյան ռազմական բազաները, որոնք սփռված են երկրագնդով մեկ։

ԱՄՆ-ը բացեիբաց հավակնում է ամենուրեք միջամտելու «իրավունքին», անտեսում, իսկ երբեմն էլ ուղղակի ոտնահարում է ուրիշ երկրների ու ժողովուրդների շահերը, միջազգային հաղորդակցման ավանդույթները, գործող պայմանագրերն ու համաձայնագրերը։ Նա մշտապես ստեղծում է կոնֆլիկտների ու պատերազմական վտանգի օջախներ, իրադրությունը շիկացնելով աշխարհի մերթ այս, մերթ այն շրջանում։ Այսօր ԱՄՆ-ը պատերազմական հաշվեհարդարով է սպառնում Նիկարագուայի հերոսական ժողովրդին, փորձելով նրան զրկել ազատությունից ու սուվերենությունից, ինչպես դա եղավ Գրենադայում։ Մեզ համար սկզբունքային հարց է համերաշխությունը առաջադիմության ու դեմոկրատիայի ուժերի հետ, այն երկրների ու ժողովուրդների հետ, որոնք իրենց ազատությունն ու անկախությունը պաշտպանում են հետադիմության ճնշման դեմ-հանդիման։ Այստեղ մեր գիծը մնում է նույնքան պարզորոշ, որքան եղել է միշտ։

Քաղաքական հատուկ տեսողություն հարկավոր չէ տեսնելու համար, թե իմպերիալիզմը վերջին տարիներս ինչպես է ուժեղացրել քայքայիչ աշխատանքը և կոորդինացնում է իր գործողությունները սոցիալիստական պետությունների դեմ։ Դա տարածվում է բոլոր՝ քաղաքական, տնտեսական, գաղափարախոսական ու ռազմական ոլորտների վրա։ Եղբայրական կուսակցու-



թյունների փաստաթղթերում բազմիցս նշվել է, որ իմպերիալիզմը փորձում է սոցիալական ռևանշ կատարել ամենալայն ճակատով՝ թե՛ սոցիալիստական ընկերակցության նկատմամբ, թե՛ գաղութային ճնշումից ազատագրված երկրների, ազգային ազատագրական շարժումների դեմ և կապիտալիստական պետությունների աշխատավորների դեմ։

Ընդլայնվում և ակտիվանում է ԱՄՆ-ի տնտեսական էքսպանսիան։ Զեղչադրույքներով ձեռնածություն անելը, վերազգային կորպորացիաների կողոպտչական դերը, առևտրի ասպարեզում քաղաքական սահմանափակումները, ամեն կարգի բոյկոտներն ու սանկցիաները միջազգային տնտեսական հարաբերություններում ստեղծում են լարվածության ու անվստահության իրադրություն, կազմալուծում են համաշխարհային էկոնոմիկան ու առևտուրը, խարխլում նրա իրավական հիմքերը։ Ուժեղանում է ազատագրվող աշխարհի երկրների շահագործումը, արգելակվում են նրանց տնտեսական ապագաղութացման պրոցեսները։ Իր ձեռքին կենտրոնացնելով ուրիշ երկրների ֆինանսական ու նյութական ռեսուրսների հարաճուն զանգվածը, ԱՄՆ-ը դրանք ուղղակի և անուղղակի կերպով ի սպաս է դնում իր վիթխարի ռազմական ծրագրերին։

Այս պայմաններում աշխարհում ավելի ու ավելի մեծ հետաքրքրություն է առաջացնում միջազգային տնտեսական հարաբերությունների նորմալացման, պետությունների տնտեսական անվտանգության ապահովման միջոցառումներ մշակելու և իրականացնելու գաղափարը։

Միջազգային դրության բարդությունը, լարվածության սրությունը մեզ պարտավորեցնում են այսուհետ ևս առաջնահերթ նշանակություն տալ արտաքին քաղաքականության հարցերին։

Ավելի ու ավելի կարևոր խնդիր են դառնում համագործակցության համակողմանի կատարելագործումն ու հարստացումը, բազմակողմանի կապերի զարգացումը սոցիալիզմի եղբայրական երկրների հետ, նրանց սերտ փոխգործողության ապահովումը քաղաքական, տնտեսական, գաղափարախոսական, պաշտպանական և մյուս բնագավառներում, հոգատարությունը մեծ ընկերակցության բոլոր մասնակիցների ազգային և ինտերնացիոնալ շահերի օրգանական զուգորդման նկատմամբ։

Եղբայրական երկրների համատեղ աշխատանքի օրակարգում է ՏՓԽ-ի անդամ երկրների անցյալ տարվա հունիսին կայացած բարձր մակարդակի տնտեսագիտական խորհրդակցության որոշումների իրացումը։ Այդ բանն այժմ հրամայաբար պահանջում են թե՛ ընկերակցության ընդհանուր շահերը, թե՛ յուրաքանչյուր պետության սոցիալ-տնտեսական զարգացման պահանջմունքները և թե միջազգային իրադրության առանձնահատկությունները։

Վարշավայի պայմանագրի անդամ երկրների կուսակցությունների ու պետությունների ղեկավարների հետ մարտի կեսերին մեզ մոտ կայացած կարծիքների փոխանակումը թույլ է տալիս վստահորեն պնդելու. մենք միաբան ենք, որ Վարշավայի պայմանագրի կազմակերպությունը այսուհետ ևս, քանի դեռ գոյություն ունի ՆԱՏՕ-ի բլոկը, պետք է կարևոր դեր խաղա Եվրոպայում և աշխարհում սոցիալիզմի դիրքերի պաշտպանության գործում, ծառայի որպես միջուկային պատերազմի կանխման, միջազգային անվտանգության ամրապնդման հուսալի գործիք։

Սովետական Միությունը նպատակասլացորեն և հաստատակամորեն կամրապնդի փոխադարձ կապերը և կզարգացնի համագործակցությունը սոցիալիստական մյուս երկրների, այդ թվում Չինական Ժողովրդական Հանրապետության հետ։ Այս հարցի առթիվ մեր դիրքավորումը հայտնի է, այն մնում է ուժի մեջ։

Մենք հանդես ենք գալիս Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրների հետ բազմակողմանի համագործակցության հետագա ընդլայնման օգտին։ ՍՄԿԿ-ն, սովետական պետությունը միշտ էլ պաշտպանում են բոլոր

ժողովուրդների՝ անձամբ, սեփական ընտրությանը համապատասխան, առանց
որևէ արտաքին միջամտության իրենց սոցիալ-տնտեսական ներկան որոշելու
և ապագան կառուցելու իրավունքը։ Ժողովուրդների այդ սուվերեն իրավունքը
մերժելու փորձերը անհուսալի են, դատապարտված ձախողման։

Մենք անշեղորեն հանդես ենք գալիս կապիտալիստական երկրների հետ
նորմալ, իրավահավասար հարաբերությունների զարգացման օգտին։ Վիճելի
պրոբլեմները, կոնֆլիկտային իրավիճակները պետք է լուծվեն քաղաքական մի-
ջոցներով. այսպիսին է մեր հաստատ համոզմունքը։

Քաղբյուրոն ելնում է այն բանից, որ լարվածության լիցքաթափման ժա-
մանակաշրջանի միջպետական վավերագրերը, ներառյալ Հելսինկիի եզրափա-
կիչ ակտը, իրենց նշանակությունը չեն կորցրել։ Դրանք այն բանի օրինակն
են, թե միջազգային հարաբերությունները ինչպես կարելի է կառուցել, եթե
առաջնորդվում են հավասարության և միատեսակ անվտանգության սկզ-
բունքներով, աշխարհում ստեղծված իրողություններով, եթե չեն ձգտում որևէ
առավելության հասնել, այլ փնտրում են փոխադարձաբար ընդունելի լուծում-
ներ և համաձայնություններ։ Թվում է, որ Եվրոպայի անվտանգության ու
համագործակցության խորհրդակցության տասնամյակի առթիվ օգտակար կլի-
ներ, որ եզրափակիչ ակտն ստորագրած պետությունների անունից Հելսին-
կիում կրկին արտահայտվեր վտանգավոր լարվածության հաղթահարման, մի-
ջազգային կյանքում խաղաղ համագործակցության և կոնստրուկտիվ հի-
մունքների զարգացման կամք։

Սովետական Միությունը հանդես է գալիս արգասավոր և բազմակողմանի
տնտեսական ու գիտատեխնիկական համագործակցության օգտին, որը հիմ-
նըված լինի փոխադարձ շահավետության սկզբունքների վրա և բացառի որևէ
խտրականություն. պատրաստ է այսուհետ ևս ընդլայնելու և խորացնելու առև-
տրական հարաբերությունները, զարգացնելու գիտատեխնիկական ու տեխնո-
լոգիական նորույթների համատեղ յուրացման, ձեռնարկությունների նախա-
գծման ու կառուցման, հումքային ռեսուրսների շահագործման բնագավառում
կողմերի փոխադարձ շահագրգռության վրա հիմնված տնտեսական կապերի
նոր ձևեր։

Հարցը այս կերպ դնելով, անհրաժեշտ է ուշի-ուշով խորամուխ լինել մեր
արտաքին տնտեսական կապերի վիճակին, կշռադատել դրանք՝ հաշվի առնե-
լով հեռանկարը։ Ջնայած միջազգային լարվածությանը, այստեղ բարենպաստ
հնարավորություններ կան։ Փոխշահավետ տնտեսական կապերի և արտաքին
առևտրի նկատմամբ մոտեցումը պետք է լինի լայն, խոշորամասշտաբ, ապա-
գային միտված։

Մենք կողմնակից ենք լայն, բազմապլանային փոխշահավետ համագոր-
ծակցությանը Արևմտյան Եվրոպայի պետությունների, Ճապոնիայի և մյուս
կապիտալիստական երկրների հետ։

Հայտնի է նաև Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ հարաբերություն-
ները բարելավելու մեր պատրաստակամությունը՝ հօգուտ երկու կողմերի և
առանց միմյանց օրինական իրավունքներն ու շահերը ոտնահարելու փոր-
ձերի։ Երկու կողմերի առճակատման որևէ ճակատագրական անխուսափե-
լիություն գոյություն չունի։ Եթե իմաստավորենք սովետա-ամերիկյան հարա-
բերությունների ինչպես հեռավոր, այնպես էլ վերջին շրջանի պատմությամբ
կուտակված թե՛ դրական և թե բացասական փորձը, ապա հարկ է ասել, որ
ամենաբանականը դեպի հարաբերությունների հարթեցում տանող ուղիների
որոնումն է, համագործակցության կամրջի կառուցումը, բայց կառուցումը՝
երկու կողմերից էլ։

Սակայն Ժնևի բանակցությունների արդեն ավարտված առաջին փուլը
հիմքեր է տալիս ասելու, որ Վաշինգտոնը Սովետական Միության հետ հա-
մաձայնության գալու կուրս չի բռնում։ Դա երևում է թեկուզ նրանից, որ նա
առհասարակ մերժում է սպառազինությունների մրցավազքը տիեզերքում չսա-



րածելու հարցը քննարկել միջուկային զենքի սահմանափակման ու կրճատման հարցի քննարկման հետ միաժամանակ։ Այդպիսով նա խախտում է հունվարին ձեռք բերված համաձայնությունը երեք ուղղությունների՝ տիեզերքում սպառազինությունների մրցավազքի կանխում, միջուկային ստրատեգիական սպառազինությունների կրճատում և Եվրոպայում միջին հեռահարության միջուկային սպառազինությունների կրճատում, փոխադարձ կապի շուրջը։

Հարց է ծագում. ինչո՞վ է բացատրվում նման դիրքավորումը։ Դա բացատրվում է նրանով, որ ԱՄՆ-ի որոշակի շրջաններ դեռևս ուզում են աշխարհում հասնել գերիշխող դիրքի, ամենից առաջ ռազմական առումով։ Մենք ամերիկյան կողմի ուշադրությունը բազմիցս հրավիրել ենք այն բանի վրա, որ այդ հավակնոտ պլաններն անհեռանկար են։ Սովետական Միությունը, նրա բարեկամներն ու դաշնակիցները և առհասարակ այն բոլոր մյուս պետությունները, որոնք կանգնած են խաղաղության ու խաղաղ համագործակցության դիրքերում, չեն ընդունում որևէ պետության կամ պետությունների խմբի գերազունության և սրանց կամքը մնացած երկրներին ու ժողովուրդներին պարտադրելու իրավունքը։

Սովետական Միությունը իր կողմից երբեք իր առջև նման նպատակ չի դրել և չի դնի։

Մենք կցանկանայինք հույս հայտնել, որ ԱՄՆ-ի ներկայիս դիրքավորումը շտկումների կենթարկվի։ Դա հնարավորություն կստեղծեր հասնելու փոխադարձաբար ընդունելի համաձայնությունների։ Մեր կողմից այդպիսի պատրաստակամությունն առկա է։

Դրա վկայությունն է ՍՍՀՄ-ի առաջարկությունը բանակցությունների ամբողջ ժամանակաշրջանում տիեզերական զենքի ստեղծման վրա երկու կողմերից մորատորիում սահմանելու, ստրատեգիական միջուկային զինանոցները սառեցնելու մասին։ Շարունակելով այդ գիծը՝ Սովետական Միությունը միակողմանի կարգով հայտարարեց միջին հեռահարության հրթիռների ծավալման և Եվրոպայում մյուս պատասխան միջոցառումների մեծացման մորատորիում։ Այդ որոշումն ամբողջ աշխարհում գնահատվեց որպես բանակցությունների հաջողությանը նպաստող կարևոր ու կոնստրուկտիվ որոշում։

Կցանկանայի հիշեցնել, որ դա նման կարգի միակ քայլը չէ։ 1982 թվականից գործում է առաջինը միջուկային զենք չգործադրելու Սովետական Միության միակողմանի պարտավորությունը, 1983 թվականից՝ առաջինը տիեզերք հակաարբանյակային զենք դուրս չբերելու միակողմանի մորատորիումը։ Այս նախաձեռնություններից ոչ մեկին ԱՄՆ-ի կառավարությունը բարի կամքի ոչ մի ժեստով չի պատասխանել։ Ընդհակառակը, պատերազմական վտանգի թուլացման, համաձայնությունների հասնելու նպատակին ուղղված ՍՍՀՄ-ի գործողությունները ամեն կերպ փորձում են ներկայացնել կեղծ լույսով, անվստահություն առաջացնել դրանց նկատմամբ։ Մի խոսքով՝ ամեն ինչ արվում է, միայն թե խույս տան պատասխան դրական քայլերից։

Չի կարող չզարմացնել նաև այն հապճեպությունը, որով ամերիկյան վարչակազմն իր ստանդարտ ու սովորական «ոչ»-ով է պատասխանում մեր առաջարկություններին։ Դա բացահայտորեն վկայում է, որ ԱՄՆ-ը չի ցանկանում գործը հանգեցնել բանական արդյունքների։ Մի բան կասեմ. սպառազինությունների մրցավազքը և զինաթափման շուրջը բանակցությունները անկարելի է համատեղել. սա պարզ է, եթե երկերեսանիության չդիմեն և նպատակ չհետապնդեն հասարակայնությանը խաբել։ Այդպիսի կուրսին Սովետական Միությունը չի նպաստի, և այս բանը պետք է իմանան նրանք, ովքեր այժմ զբաղվում են քաղաքական խաղով և ոչ թե լուրջ քաղաքականությամբ։ Մենք չէինք ցանկանա նախորդ բանակցությունների տխուր փորձի կրկնությունը։

Իր կողմից Սովետական Միությունը հաստատակամորեն կձգտի Ժնևում հասնել փոխադարձաբար ընդունելի այնպիսի կոնկրետ համաձայնությունների, որոնք հնարավորություն ընձեռեին ոչ միայն վերջ դնելու սպառազինությունների մրցավազքին, այլև առաջ մղելու զինաթափման գործը։ Այժմ, ինչ-

*պես երբեք, քաղաքական կամք է հարկավոր հանուն աշխարհի խաղաղության, հանուն լավագույն վաղվա։*

*Այսպիսիք են, ընկերնե՛ր, ներքին ու արտաքին քաղաքականության մեր խնդիրները, հիմնական ուղղությունները։ Կասկածից վեր է, որ դրանք համգամանալի քննարկման առարկա կլինեն սույն պլենումում, որը պետք է սահմանի ամբողջ կուսակցության, նրա յուրաքանչյուր կազմակերպության նախահամագումարյան գործունեության բնույթը։*

*Մենք պետք է պլենումի աշխատանքը այնպես տանենք, որ կարելի լինի այն համրագումարի բերել Լենինի հետևյալ խոսքերով.*

*«Մենք մեր խնդիրներն այժմ գիտենք շատ ավելի պարզ, ավելի կոնկրետ, ավելի ակներևորեն, քան երեկ. մենք չենք վախենում մեր սխալները բացահայտորեն մատնանշելու, դրանք ուղղելու համար։ Մենք այժմ կուսակցության ամբողջ ուժերը կտրամադրենք նրա լավագույն կազմակերպման, նրա աշխատանքի որակի ու բովանդակության բարձրացման, մասսաների հետ ավելի սերտ կապ ստեղծելու, բանվոր դասակարգի համար ավելի ու ավելի կանոնավոր ու ճիշտ տակտիկա և ստրատեգիա մշակելու համար»։*

*Կուսակցությունը, սովետական ժողովուրդը մեզանից սպասում են համակողմանիորեն կշռադատված և պատասխանատու վճիռներ, և կարելի է վստահությամբ ասել, որ դրանք կպաշտպանվեն կոմունիստների, բոլոր աշխատավորների կողմից։ Կպաշտպանվեն հասարակական շահագրգռությամբ, ակտիվությամբ ու աշխատանքով։* (Զեկուցումը լսվեց մեծ ուշադրությամբ և բազմիցս ընդհատվում էր երկարատև ծափահարություններով)։

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

## ՍՄԿԿ ՀԵՐԹԱԿԱՆ XXVII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՀՐԱՎԻՐՄԱՆ ՄԱՍԻՆ

Լսելով և քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչովի զեկուցումը «ՍՄԿԿ հերթական XXVII համագումարի հրավիրման և դրա նախապատրաստմանն ու անցկացմանն առնչվող խնդիրների մասին», ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի պլենումը որոշում է.

1. Սովետական Միության կոմունիստական կուսակցության հերթական XXVII համագումարը հրավիրել 1986 թ. փետրվարի 25-ին։

2. Հաստատել համագումարի հետևյալ օրակարգը.

1) ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության խնդիրները. զեկուցող՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Մ. Ս. Գորբաչով։

2) ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի հաշվետվությունը. զեկուցող՝ ՍՄԿԿ կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի նախագահ ընկ. Գ. Ֆ. Սիզով։

3) ՍՄԿԿ ծրագրի նոր խմբագրության մասին։

4) ՍՄԿԿ կանոնադրության փոփոխությունների մասին։

5) ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման 1986—1990 թվականների և մինչև 2000 թվականն ընկած ժամանակաշրջանի հիմնական ուղղությունների մասին. զեկուցող՝ ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ ընկ. Ն. Ա. Տիխոնով։

6) Կուսակցության կենտրոնական մարմինների ընտրություններ։

3. ՍՄԿԿ XXVII համագումարում ներկայացուցչության նորման սահմանել մեկ պատգամավոր կուսակցության 3.670 անդամից։

4. ՍՄԿԿ XXVII համագումարի պատգամավորները, կուսակցության կանոնադրության համաձայն, ընտրվում են փակ (գաղտնի) քվեարկությամբ մարզային, երկրամասային կուսակցական կոնֆերանսներում և միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարներում։ Ուկրաինայի, Բելոռուսիայի, Ուզբեկստանի և Ղազախստանի կոմկուսների կողմից ՍՄԿԿ XXVII համագումարի պատգամավորների ընտրությունները անցկացվում են մարզային կուսակցական կոնֆերանսներում։

Սովետական բանակի, ռազմածովային նավատորմի, ներքին և սահմանապահ զորքերի կուսակցական կազմակերպություններում գտնվող կոմունիստները ՍՄԿԿ XXVII համագումարի պատգամավորներ են ընտրում համապատասխան տերիտորիալ կուսակցական կազմակերպությունների հետ համատեղ՝ մարզային, երկրամասային կուսկոնֆերանսներում կամ միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարներում։

Սովետական բանակի և ռազմածովային նավատորմի՝ արտասահմանում գտնվող զորամասերի կուսակցական կազմակերպությունների կոմունիստները

ՍՄԿԿ XXVII համագումարի պատգամավորներ են ընտրում համապատասխան զորամիավորումների կուսակցական կոնֆերանսներում:

5. ՍՄԿԿ XXVII համագումարին նախորդող հաշվետու-ընտրական կամպանիան անցկացնել հետևյալ ժամկետներում. սկզբնական կուսակցական կազմակերպությունների ժողովները՝ ս. թ. սեպտեմբեր-նոյեմբերին, շրջանային, քաղաքային, օկրուգային կուսակցական կոնֆերանսները՝ նոյեմբեր-դեկտեմբերին, մարզային, երկրամասային կուսակցական կոնֆերանսները՝ 1985 թ. դեկտեմբեր—1986 թ. հունվարին, միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարները՝ 1986 թ. հունվարին—փետրվարի սկզբին:

6. Հաշվետու-ընտրական ժողովներում, կոնֆերանսներում, միութենական հանրապետությունների կոմկուսների համագումարներում խորապես և համակողմանիորեն քննության առնել կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի ետհամագումարյան պլենումների որոշումների կենսագործման ասպարեզում կատարված աշխատանքը, հանգամանորեն քննարկել տնտեսական ու մշակութային շինարարության կուսակցական ղեկավարման հարցերը, կազմակերպական-կուսակցական, գաղափարախոսական աշխատանքի վիճակը:

Հաշվետու-ընտրական կամպանիայի ընթացքում անհրաժեշտ է կուսակցական կազմակերպությունների, աշխատավորական կոլեկտիվների ջանքերը կենտրոնացնել 1985 թվականը և ամբողջությամբ վերցված տասնմեկերորդ հնգամյակը հաջողությամբ ավարտելու, տասներկուերորդ հնգամյակի պլանների կատարումը ժամանակին և որակով նախապատրաստվելու, տնտեսական ու սոցիալական զարգացման հանգուցային պրոբլեմները լուծելու, արտադրությունը գիտատեխնիկական առաջընթացի նվաճումների լայն արմատավորման հիման վրա բուռն ամենայնի ինտենսիվացնելու, պլանավորումն ու կառավարումը կատարելագործելու, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում կազմակերպվածությունը, կարգապահությունը և կարգուկանոնը ամրապնդելու վրա: Ապահովել կոմունիստների ավանգարդային դերը նախահամագումարյան սոցիալիստական մրցության ծավալման ասպարեզում, ներքին ռեզերվների հայտնաբերման և լավագույն օգտագործման նպատակին ուղղված արժեքավոր նախաձեռնությունների գործարար պաշտպանությունը:

Կուսակցական ժողովները, կոնֆերանսները և համագումարները պետք է անցնեն գործարարության, սկզբունքայնության մթնոլորտում, կուսկազմակերպությունների և նրանց ղեկավար մարմինների աշխատանքի գնահատման նկատմամբ ինքնաքննադատական մոտեցման մթնոլորտում: Կարևոր է, որ հաշվետվությունները և ընտրությունները նպաստեն կուսակցական կյանքի լենինյան նորմերի հետագա ամրապնդմանը, ներկուսակցական դեմոկրատիայի զարգացմանը, վերևից ու ներքևից արվող քննադատության զարգացմանը, կոմունիստների ակտիվության ու նախաձեռնության աճին, իրենց կազմակերպությունների և ամբողջ կուսակցության գործերի համար նրանց պատասխանատվության բարձրացմանը:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն հաստատ վստահություն է հայտնում, որ ՍՄԿԿ XXVII համագումարի նախապատրաստությունը կընթանա կազմակերպական ու գաղափարաքաղաքական բարձր մակարդակով, կուսակցական շարքերի սերտ համախմբվածության, կուսակցության ու ժողովրդի անխախտ միասնության նշանաբանով:

---

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

**1985 թվականի ապրիլի 12-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:**

**Պլենումը քննության առավ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահության ագրոարդյունաբերական կոմպլեքսի հարցերի հանձնաժողովի զեկուցումը ձմռան ծանր պայմանների հետևանքների հաղթահարման, գարնան դաշտային աշխատանքների կազմակերպված անցկացման, անասունների ձմեռման հաջող ավարտման և 1985 թվականի ու ամբողջ հնգամյակի պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարման աշխատանքի մասին:**

**Այդ հարցի առթիվ հանդես եկավ Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ ընկ. Վ. Մ. Մովսիսյանը:**

**Զեկուցման քննարկմանը մասնակցեցին ՀԿԿ Արտաշատի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ա. Հովհաննիսյանը, Հայկական ՍՍՀ պտուղբանջարեղենի տնտեսության մինիստր ընկ. Ռ. Ա. Սուխուդյանը, Կալինինոյի շրջանի Կաթնառատի սովխոզի կթվորուհի ընկ. Պ. Դ. Առաքելյանը, Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության արտադրատեխնիկական ապահովման պետական կոմիտեի նախագահ ընկ. Ա. Ն. Ծահվերդյանը, Հոկտեմբերյանի շրջանի «Նաիրի» սովխոզի անասնապահական բրիգադի բրիգադավար ընկ. Գ. Դ. Բաղդասարյանը, Վարդենիսի շրջանի Ջողի սովխոզի դիրեկտոր ընկ. Կ. Մ. Ազիզովը, Արարատի շրջանային ագրոարդյունաբերական միավորման նախագահ ընկ. Վ. Վ. Հովհաննիսյանը:**

**Պլենումում ճառով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը:**

**Քննարկված հարցի առթիվ պլենումն ընդունեց համապատասխան որոշում:**

**Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:**

**Պլենումը ընկ. Գ. Ն. Անդրեևին ազատեց Հայաստանի կոմկուսի Կենտ-**

կոմի երկրորդ քարտուղարի և բյուրոյի անդամի պարտականություններից՝ դիվանագիտական աշխատանքի անցնելու կապակցությամբ:

Պլենումը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար և բյուրոյի անդամ ընտրեց ընկ. Յու. Պ. Կոչետկովին, որը մինչ այդ աշխատում էր որպես ՍՄԿԿ Կենտկոմի տեսուչ:

Այլ աշխատանքի անցնելու կապակցությամբ պլենումը ընկ. Յու. Վ. Ծատալինին ազատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամի պարտականություններից:

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի անդամ ընտրվեց ընկ. Մ. Պ. Կոլեսնիկովը:

Դրանով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումն ավարտեց աշխատանքը:

Պլենումի աշխատանքին մասնակցում էր և ելույթ ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչի տեղակալ ընկ. Վ. Մ. Նիկիֆորովը:

---

# ԵՐԵՎԱՆԻ ԲՈՒՌՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՀՈՅԱԿԱՊ ԾՐԱԳԻՐԸ

## Հանրապետական կուսակցական ակտիվի ժողով

**Օրերս ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընդունեցին «1986—1990 թվականներին Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշումը: Ծրագրվում է զգալիորեն ակտիվացնել բնակելի տների, մանկական նախադպրոցական հիմնարկների, հանրակրթական դպրոցների, հիվանդանոցների, պոլիկլինիկաների և քաղաքային ու կոմունալ տնտեսության մի շարք այլ օբյեկտների շինարարությունն ու գործարկումը: Նախատեսված են արտադրական օբյեկտների, մագիստրալային ջերմացանցերի կառուցում, վերակառուցում և ընդլայնում, ինչպես նաև Սովետական Հայաստանի մայրաքաղաքի օդային և ջրային ավազանների աղտոտումը կանխելու միջոցառումներ:**

*ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի «1986—1990 թթ. Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշման կենսագործման ասպարեզում հանրապետական կուսակցական կազմակերպությունների խնդիրները քննարկվեցին հանրապետական կուսակցական ակտիվի ժողովում, որը տեղի ունեցավ ապրիլի 19-ին Հայաստանի կոմկուսի Կենտկոմում:*

*Ակտիվի ժողովին մասնակցում էին կուսակցության քաղաքային և շրջանային կոմիտեների քարտուղարներ, մինիստրներ, պետական կոմիտեների նախագահներ, ժողովրդական դեպուտատների քաղաքային և շրջանային սովետների գործադիր կոմիտեների նախագահներ, հանրապետության կուսակցական, սովետական, պետական մարմինների և հասարակական կազմակերպությունների ղեկավար աշխատողներ, ժողովրդական տնտեսության տարբեր բնագավառների ներկայացուցիչներ:*

*Ակտիվի ժողովում հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը:*

*Երեկ, ասաց նա, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ընդունեցին «1986—1990 թվականներին Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշումը:*

*Այդ պատմական փաստաթուղթը մեր ժողովրդի բարեկեցության, Սովետական Հայաստանի և նրա մայրաքաղաքի ծաղկման նկատմամբ լենինյան կուսակցության հայրական հոգատարության մի նոր վառ դրսևորում է: Մոբիլիզացնող վիթխարի ուժի այդ փաստաթուղթը երևանցիների, հանրապետու-*

թյան բոլոր աշխատավորների կողմից ընդունվեց հսկայական ոգևորությամբ, նրանց մեջ առաջ բերելով ստեղծագործական ուժերի հուժկու ալիք, սոցիալիստական մեր մեծ հայրենիքի նյութական և հոգևոր հարստությունները ոգեշունչ աշխատանքով բազմապատկելու անհողդողդ վճռականություն:

Թույլ տվեք, ձեր անունից, Երևանի, հանրապետության բոլոր աշխատավորների անունից ջերմ շնորհակալություն և երախտագիտություն հայտնել ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Մ. Ս. Գորբաչովին՝ Սովետական Հայաստանի նկատմամբ ցուցաբերվող այդ մեծ հոգատարության համար և հավաստիացնել, որ մեր բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և մտավորականությունը իրենց ողջ ուժն ու եռանդը կներդնեն կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի ետհամագումարյան պլենումների որոշումները մինչև վերջ կենսագործելու, տասնմեկերորդ հնգամյակը հաջողությամբ ավարտելու, մեր սիրելի քաղաքի տնտեսական և սոցիալ-կուլտուրական զարգացման հոյակապ ծրագիրը լրիվ իրականացնելու պայքարում:

Մեծ է հայ ժողովրդի սերը Երևանի հանդեպ: Նա իր մայրաքաղաքի նկատմամբ համակված է մի առանձնահատուկ հպարտության զգացումով: Եվ դա բնական է: Իր հինավուրց մայրաքաղաքներից ժառանգելով միայն փլատակներ, սոցիալիստական պետականություն ձեռք բերած մեր ժողովուրդը արտասովոր մի խանդավառությամբ ձեռնամուխ եղավ Հայաստանի նոր ու շենշող մայրաքաղաքի ստեղծմանը:

Զարգանում էր հանրապետությունը, աննախադեպ բարձր տեմպերով զարգանում էր նաև Երևանը, որը պատմական կարճ ժամանակահատվածում դարձավ մեր մեծ հայրենիքի ինդուստրիալ, գիտական ու կուլտուրական խոշոր կենտրոններից մեկը:

Այսօր հիանալով մեր մայրաքաղաքով, նրա ինդուստրիալ հզորությամբ, գիտատեխնիկական վիթխարի պոտենցիալով, նրա հոգևոր հարստությամբ, այն անգնահատելի և հարաճուն ավանդով, որ նա ներդնում է հանրապետության համակողմանի ծաղկման ու զարգացման մեջ, դժվար է պատկերացնել, որ բարգավաճող, պայծառ ապագա կերտող, եռուն կյանքով ապրող ստեղծարար եռանդով լեցուն, ինքնատիպ գեղեցկության այս քաղաքը ընդամենը վեց ու կես տասնամյակ առաջ մի փոքր, կավածեփ բնակավայր էր՝ 30 հազար բնակչությամբ, ասես հայտնված պատմության ճամփեզրին:

Հիրավի զարմացնող է Երևանի սոցիալիստական կենսագրությունը: Անգամ մեծ Թամանյանը իր նախագծերում Երևանը պատկերացնում էր ոչ ավելի քան 150 հազար բնակչությամբ քաղաք: Բայց այն, ինչ երևակայությունից դուրս էր, շատ շուտով իրականություն դարձավ: Երևանի սրընթաց ակսելերացիան գերազանցեց նույնիսկ ոչ այնքան վաղեմի, 60-ական թվականներին կազմված գլխավոր հատակագծի կանխանշումները, այն 20-ամյա առաջանցումով ոստնեց-հատեց միլիոնանոց քաղաքի սահմանագիծը:

Սովետական Հայաստանի մայրաքաղաքի նման բուռն վերելքը արդյունքն է սովետական ժողովուրդների եղբայրական միասնական ընտանիքում ապրելու և արարելու իր մեծագույն երջանկությունը գտած մեր վերածնված ժողովրդի սոցիալ-տնտեսական և կուլտուրական փայլուն նվաճումների, հանրապետության աշխատավորների բոլոր սերունդների հայրենանվեր, ոգեշունչ ու ստեղծարար աշխատանքի:

Սովետական Հայաստանի, նրա մայրաքաղաքի աննախընթաց նվաճումները արգասիքն են Սովետական Միության կոմկուսի, նրա Կենտկոմի, սովետական կառավարության հմուտ ղեկավարության և անդուլ հոգատարության, կուսակցության լենինյան իմաստուն ազգային քաղաքականության անշեղ իրականացման, մեր մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդների և, առաջին հերթին, ռուս մեծ ժողովրդի անշահախնդիր օգնության և աջակցության:

Օբյեկտիվ և սուբյեկտիվ հանգամանքների բերումով հանրապետության տնտեսական պոտենցիալի մեծ մասը կենտրոնացավ Երևանում: Դա հանգեցրեց քաղաքաստեղծ գործոնների բուռն աճի: Առաջացավ մի իրավիճակ, երբ



բնակչության աճի տեմպերը գերազանցեցին համապատասխան ինֆրակառուցվածքի ստեղծման տեմպերին: Այս անհամամասնությունը մեծ դժվարություններ հարուցեց ամբողջ քաղաքային տնտեսության մեջ, ջրաջերմամատակարարման գործում, քաղաքային տրանսպորտում, մյուս ասպարեզներում: Բարդացավ բնակարանային պրոբլեմի, կոմունալ, սոցիալ-կենցաղային շինարարության, նախադպրոցական հիմնարկների, առևտրական, բժշկական և կուլտուրական սպասարկման հարցերի լուծումը: Բնական է, որ այս ամենը դարձավ անհետաձգելի լուծում պահանջող խնդիր, առանձնակի հոգածության առարկա:

Այդ պրոբլեմների լուծմանը մենք ձեռնամուխ ենք եղել ավելի վաղ: Դեռևս 1978 թվականին Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը իրենց համատեղ որոշման մեջ նշել են ծագող դժվարությունների հաղթահարման և Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման կոնկրետ միջոցառումները, որոնք հետևողականորեն իրականացվում են: Սակայն գործերի արմատական բարելավումը պահանջում էր միութենական մարմինների օգնությունը, մի շարք այն մինիստրությունների ու գերատեսչությունների ջանքերի միավորումը, որոնք ձեռնարկություններ ունեն քաղաքի տարածքում, առավել մեծամասշտաբ ծավալի աշխատանք, պրոբլեմների կոմպլեքսային լուծում, որոնք, բնականաբար, կապված են կապիտալ խոշոր ներդրումների հետ:

Այդ պրոբլեմների մասին զեկուցվեց ՍՄԿԿ Կենտկոմին և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին, որոնք ինչպես միշտ, մեծ ուշադրությամբ և հոգատարությամբ քննության առան դրանք, ընդունելով «1986—1990 թվականներին Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշումը:

Այդ որոշումը նոր փուլ է նշանավորում մայրաքաղաքի, ամբողջ հանրապետության կյանքում: Այն լայն և ռեալ հնարավորություններ է ընձեռում՝ հաջողությամբ լուծելու քաղաքի տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացման հրատապ հարցերը, ընդլայնելու և կատարելագործելու Երևանի ինֆրակառուցվածքը: Որոշումը մայրաքաղաքի կառավարման և զարգացման պրոցեսի կարգավորման գիտականորեն հիմնավորված ծրագիր է: Նրա լրիվ իրականացումը որակական նոր աստիճանի կբարձրացնի բնակիչների կյանքի, աշխատանքի և հանգստի պայմանները, առավել նպաստավոր հնարավորություններ կստեղծի մարդու համակողմանի զարգացման համար:

Նախատեսվում է մեծ չափերով ավելացնել մայրաքաղաքի սոցիալական, կուլտուրական նշանակության օբյեկտների շինարարությանը հատկացվող կապիտալ միջոցները:

Որոշումը, շարունակում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, հնարավորություն է ընձեռում նախ և առաջ հաջողությամբ լուծելու բնակարանային պրոբլեմը: Այսպես, 1986—1990 թվականներին նախատեսվում է կառուցել երկու մլն 407 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն, որը մոտ 30 տոկոսով ավելի է, քան ընթացիկ հնգամյակում կառուցվելիքը: Ընդ որում, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի կենտրոնացված կապիտալ ներդրումների գծով կկառուցվի 1 միլիոն 240 հազար քառակուսի մետր բնակելի մակերես, որը 11-րդ հնգամյակում կառուցվածից ավելի է շուրջ 75 տոկոսով:

Դա, ինքներդ հասկանում եք, շատ մեծ աճ է: Դրանով մենք լայն հնարավորություններ ենք ստանում լուծելու վթարային, խարխուլ տների արագ վերացման, ինչպես նաև նկուղային հարկերում ապրող քաղաքացիներին նոր բնակարաններ տեղափոխելու, քաղաքի կառուցապատման հետ կապված մի ամբողջ շարք պրոբլեմներ:

Զգալիորեն կամրապնդվի Երևանի ժողովրդական կրթության նյութատեխնիկական բազան: Մասնավորապես կավելանան աշակերտական տեղերը: Եթե ընթացիկ հնգամյակում մայրաքաղաքում կառուցվելու են մոտ 19 հազար տեղով դպրոցներ, ապա առաջիկա հինգ տարիներին շարք կմտնեն 32 հազար տեղով դպրոցներ կամ՝ 67 տոկոսով ավելի: Սա հնարավորություն կընձեռի

մայրաքաղաքի դպրոցներն անցկացնելու հիմնականում մեկհերթ պարապմունքների, հաջողությամբ իրականացնելու դպրոցական ռեֆորմի պահանջները։ Զգալի բարեփոխումներ տեղի կունենան արտադպրոցական աշխատանքներում։ Կկառուցվեն պիոներական նոր պալատներ։ Մատաղ սերնդի գեղագիտական դաստիարակության հանրապետական կենտրոնի հնարավորությունները շատ ավելի կընդարձակվեն նրա նոր շենքի կառուցումից հետո, որը նույնպես նախատեսվում է այս որոշումով։ Այն կլինի նաև Երևանի ճարտարապետական ինքնատիպ կոթողներից մեկը։

Առաջիկա հինգ տարիներին կլուծվի նաև Երևանի այսօրվա մյուս լուրջ խնդիրը՝ նախադպրոցական հիմնարկների ցանցի ընդլայնումը։ Ներկայումս քաղաքը ունի 51 հազար տեղով մսուր-մանկապարտեզ։ Որոշմամբ նախատեսվում է 12-րդ հնգամյակում կառուցել մոտ 120 նախադպրոցական հիմնարկներ՝ 24.660 տեղով։ Դա 11-րդ հնգամյակի համեմատությամբ ավելի է կրկնակի։

Դրանով ո՛չ միայն կդյուրանա երեխաներին նախադպրոցական հիմնարկներում տեղավորելու գործը, այլև լայն հնարավորություններ կստեղծվեն ավելի շատ կանանց ընդգրկելու հանրային արտադրության մեջ, աշխատանքի այլ ոլորտները, էլ չենք խոսում մայրերի հոգսերը թեթևացնելու մասին։ Շատ կարևոր է նաև հարցի մյուս կողմը՝ ստեղծվող բազան մեծապես կնպաստի՛ էլ ավելի բարելավելու մանուկների ֆիզիկական ու հոգեկան դաստիարակությունը։

Որոշման մեջ առանձնահատուկ ուշադրություն է նվիրվում Երևանի բնակչության առողջապահության զարգացմանը։ Եվ դա հասկանալի է, քանի որ այս տեսակետից ներկայիս դրությունը հեռու է բավարար լինելուց։ Մայրաքաղաքի յուրաքանչյուր հազար բնակչի ապահովվածությունը հիվանդանոցային մահճակալներով ցածր է միջին միութենականից։ Ցածր է նաև պոլիկլինիկաներով ապահովվածության մակարդակը։

Ծրագրվում է 1986—1990 թվականներին միայն կենտրոնացված կապիտալ ներդրումների հաշվին կառուցել 2.700 մահճակալով հիվանդանոցներ և մեկ հերթում 7.050 հաճախումով պոլիկլինիկաներ։ Դա կկրկնապատկի հաճախումների թիվը։ Կկառուցվեն շտապ օգնության նոր կայաններ, բազմաթիվ դեղատներ։

Այստեղ հարկ է նշել, որ ընթացիկ հնգամյակում առողջապահական օբյեկտների շինարարության գծով մենք ավելացրինք կապիտալ ներդրումները, որոնք, ցավոք, չափազանց վատ են իրացվում, չխոսելով այն մասին, որ առանձին նախագծեր չեն համապատասխանում ժամանակակից պահանջներին։

Շինարարական աշխատանքներն արդյունավետ կազմակերպելու համար անհրաժեշտ է վերջնականապես լուծել միասնական պատվիրատուի հարցը, հասնել այն բանին, որ կառուցվող օբյեկտները նախագծվեն բուժման ժամանակակից պահանջներին համապատասխան, դրանք լինեն հարմարավետ, ունենան ճարտարապետական ուրույն տեսք ու բարեկարգ շրջակայք։

Երևան քաղաքը ապահովված չէ անհրաժեշտ քանակի հյուրանոցային տեղերով։ Այդ բացը որոշակիորեն կլրացվի առաջիկա հնգամյակում՝ 1.500 տեղ ունեցող երեք նոր հյուրանոցների կառուցումով։

Որոշմամբ հնարավորություն է ընձեռվում կառուցել երկու հազար տեղով նոր կինոթատրոններ, որով զգալիորեն կբարելավվի կինոսպասարկման գործը։ Երաժշտասերներին ու թատերասերներին լավ նվեր կլինի հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեի համերգային ստուդիայի նոր շենքի կառուցումը։ Կկառուցվեն Բարեկամության տունը, ռուսական թատրոնի նոր շենքը։

Օղակաձև զբոսայգու վերջին հատվածում Երևանի հին կրկեսին փոխարինելու կգա արվեստի այս ճյուղի ժամանակակից բոլոր պահանջները բավարարող մի նոր շենք։

Երևանի կարևոր խնդիրներից մեկը, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը,



նրա կոմունալ տնտեսության անընդհատ զարգացման ապահովման անհրաժեշտությունն է։ Այս նպատակով քիչ գործ չի կատարվել հատկապես վերջին երկու հնգամյակներում։ Սակայն այսօր էլ քաղաքի ջրամատակարարման, ջերմամատակարարման, կոյուղացման, էլեկտրատրանսպորտի զարգացման ասպարեզներում ունենք չլուծված հարցեր։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը արմատական բեկում կմտցնի քաղաքի կոմունալ տնտեսության զարգացման գործում։ Դրա համար նախատեսվում են շուրջ 300 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ կամ մոտ երկուսուկես անգամ ավելի, քան 11-րդ հնգամյակում։

Մեծածավալ աշխատանքներ են կատարվելու քաղաքի ջրամատակարարման, այդ թվում՝ տաք ջրամատակարարման պրոբլեմները լուծելու համար։ Կկառուցվի ջրմուղի 230 կմ ցանց։ Առաջիկա տարիներին հիմնականում կլուծվի Երևանի բնակչության կոմունալ-կենցաղային և արդյունաբերական օբյեկտների նորմալ ջրամատակարարման պրոբլեմը։

Սակայն սա օրակարգից չի հանում ջրասպառիչ օբյեկտներում, հատկապես արդյունաբերական ձեռնարկություններում, ինչպես նաև բնակչության կողմից ջրի կորուստների ու շռայլումների դեմ պայքարի ուժեղացման հարցը. այն մշտապես պետք է գտնվի ամենքիս ուշադրության կենտրոնում։

Վերջին 10 տարիներին ծավալուն աշխատանքներ տարվեցին Երևան քաղաքի ջերմամատակարարման պրոբլեմները լուծելու համար։ Կառուցվեցին կենտրոնական կաթսայատներ, որոնք նկատելիորեն բարելավեցին ջեռուցման և տաք ջրամատակարարման վիճակը։ Միաժամանակ վերացվեցին ավելի քան 200 մանր կաթսայատներ, որ հնարավորություն տվեց խնայելու վառելիքաէներգետիկ ռեսուրսներ, պակասեցնելու քաղաքի օդային ավազանի աղտոտումը։

Սակայն պրոբլեմը վերջնականապես կլուծվի, եթե մենք հետևողականորեն իրագործենք այդ առնչությամբ որոշման մեջ նախատեսված միջոցառումները։ ՍՍՀՄ էներգետիկայի և էլեկտրիֆիկացիայի մինիստրության վրա են դրված 100 և ավելի հեկտակալորիա հզորությամբ կենտրոնական կաթսայատների շինարարության պատվիրատուի պարտականությունները։ Որոշմամբ նախատեսված է քաղաքում կառուցել շրջանային նոր կաթսայատներ։ Ներկայումս գործող կաթսայատները կվերակառուցվեն։ Քաղաքի ջերմամատակարարման ցանցը կընդլայնվի 220 կիլոմետրով, զգալիորեն կհզորացվի ջերմամատակարարմամբ զբաղվող կազմակերպությունների նյութատեխնիկական բազան։ 1988 թվականից կսկսվի Երևանի ջերմաէլեկտրակենտրոնի վերակառուցումը՝ նրա կարողությունների ավելացմամբ հանդերձ։

Այդ ամենից բացի, նախատեսվում է Երևանի ջերմամատակարարման կարիքներին ուղղել Երևանից դուրս գործող ջերմային հզորությունները և այդ նպատակով 1988 թվականից սկսել 40 կմ ընդհանուր երկարությամբ քառաշարք մագիստրալ գծերի կառուցումը։

Այսպիսով, հնարավորություն կընձեռվի էապես բարելավելու Երևանի ջերմամատակարարման վիճակը, զգալիորեն կրճատելու մանր, շահագործման տեսակետից ոչ շահավետ և օդային ավազանը աղտոտող կաթսայատների թիվը, ապահովելու վառելիքաէներգետիկ ռեսուրսների զգալի տնտեսում։

Նշված աշխատանքները պահանջում են հսկայական ջանքեր։ Քաղաքի ջերմամատակարարման սխեմայի իրականացման նպատակով որոշմամբ նախատեսված միջոցառումները կյանքի կոչելը պետք է դառնա համապատասխան հանրապետական կազմակերպությունների, և, հատկապես, «Հայգլխէներգոյի», Երևանի քաղաքային ու շրջանային սովետների գործադիր կոմիտեների կարևորագույն խնդիրներից մեկը։

Ինչպես գիտեք, վերջին տարվա խստաշունչ ձմեռը հանրապետության և մայրաքաղաքի արդյունաբերական ոչ քիչ թվով ձեռնարկությունների և կոմունալ-կենցաղային օբյեկտների լուրջ դժվարությունների առաջ կանգնեցրեց վառելիքաէներգետիկ ռեսուրսներով ապահովելու գործում։

Երևանի արդյունաբերական հանգույցի հուսալի և կայուն գազամատա-

կարարումը իրականացնելու նպատակով, որոշմամբ հանձնարարված է ՍՍՀՄ գազի արդյունաբերության մինիստրությանը 1986—1990 թվականներին իրականացնել կոմպլեքսային միջոցառումներ, այդ թվում՝ Երևանը օղակավորող գազատարի շինարարությունը։ Քաղաքի շուրջը կկառուցվի մոտ 110 կմ երկարությամբ մեծ տրամաչափի գազատար, կկառուցվեն և կվերակառուցվեն 100 կմ ընդհանուր երկարությամբ գազատար ցանցեր և 10 գազակարգավորիչ կետեր։ Դա հնարավորություն կընձեռի կարգավորելու գազամատակարարման ռեժիմները։

Քաղաքի ինժեներական ստորգետնյա կոմունիկացիաների երկարատև ու արդյունավետ շահագործման խնդրում կարևոր նշանակություն կունենա դրանք մեկ գլխավոր խրամուղում համատեղելը։ Որոշմամբ հանձնարարված է լուծել Երևան քաղաքի ինժեներական ստորգետնյա կոմունիկացիաների համատեղման հարցերը։ Անհրաժեշտ է արագ կարգով ձեռնարկել քաղաքի համար կենսական նշանակություն ունեցող գլխավոր խրամուղու նախագծումը, և այստեղ պետք է իրենց պրպտող միտքը դրսևորեն մեր ինժեներները։

Քաղաքի շրջակա միջավայրի պահպանման, օդային ավազանի մաքրության, սանիտարական վիճակի հարցերը եղել և մնում են մեր աշխատանքի կարևոր ուղղություններից մեկը։

Առհասարակ պետք է ասել, որ Երևանի օդային ավազանի և շրջակա միջավայրի մաքրության ապահովման ասպարեզում վերջին տարիներին քիչ բան չի արվել։ Սակայն ձեռնարկված միջոցառումները բավարար չեն։ Մայրաքաղաքի շրջակա միջավայրի մաքրության ապահովման խնդիրներին արմատական լուծում տալու նպատակով, որոշմամբ հանձնարարված է միութենական մի շարք մինիստրությունների ու գերատեսչությունների այն ձեռնարկություններում, որոնց արտանետումները աղտոտում են Երևանի օդային ավազանը, անցնել այլ հումքի և վառելիքի օգտագործման, ինչպես նաև փոխել արտադրանքի պրոֆիլը և կամ դրանք առաջիկա տասը տարիներին դուրս բերել մայրաքաղաքի տարածքից։

Անհրաժեշտ է, որպեսզի հանրապետության կառավարությունը, պետպլանը խորապես ուսումնասիրեն այս հարցերը և համապատասխան մինիստրությունների ու գերատեսչությունների հետ համաձայնեցված առաջարկություններ ներկայացնեն ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդ՝ նման արդյունաբերական ձեռնարկությունները Երևանից դուրս բերելու կոնկրետ ժամկետների վերաբերյալ։

Որոշմամբ նախատեսված է Երևանի աղտոտված ջրերի կենսաբանական մաքրման երկրորդ կայանի շինարարությունը։ Բացի դրանից, մայրաքաղաքի շուրջ 20 խոշոր ձեռնարկություններում կկառուցվեն ջրային մակերեսները և օդային ավազանն աղտոտումից ապահովող նոր մաքրման կայաններ։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ քաղաքի օդային ավազանի աղտոտվածության մոտ 60 տոկոսը բաժին է ընկնում ավտոմեքենաներից արտանետվող գազերին։ Դրանց ներազդեցությունը նվազեցնելու նպատակով, որոշմամբ հանձնարարված է ՍՍՀՄ նավթամթերքների ապահովման պետական կոմիտեին, սկսած 1986 թվականից, բավարարել Երևան քաղաքին անհրաժեշտ ծավալի ոչ էթիլային բենզինի պահանջարկը։

Այս ծրագրի իրականացմանը զուգընթաց, նախատեսվում է քաղաքի կոյուղու և հեղեղատար ցանցերի ընդարձակում 130 կմ-ով։ Ոռոգման նոր ցանցեր կանցկացվեն 100 կմ ընդհանուր երկարությամբ։ Կվերակառուցվեն Հրազդանի և Գետառի՝ քաղաքի տարածքով անցնող հատվածների հուները։ Քաղաքի սանիտարական մաքրման ծառայությունները կհամալրվեն արտադրական նոր բազաներով, նկատելիորեն կընդլայնվի սանիտարական մաքրման ծառայությունների մեքենայական շարժակազմը։

Առավել մեծ թափով կշարունակվեն Երևան քաղաքի բարեկարգման աշխատանքները, ինչպես նաև տրանսպորտային հանգույցների, ստորգետնյա հետիոտն անցումների, կամուրջների, նոր ճանապարհների շինարարությունը։



Կոկովի Ավանի կիրճի նոր կամրջի կառուցումը։ Քաղաքի կանաչ տարածությունների ընդարձակման գործում մեծ դեր կկատարի ջերմոցատնկարանային նոր տնտեսության ստեղծումը։

Երևան քաղաքի կենսագործունեության համար, բնակչության սպասարկման գործում, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, կարևորագույն նշանակություն ունի քաղաքային մարդատար տրանսպորտի աշխատանքի հստակ կազմակերպումը։ Խիստ կարևորություն տալով այս խնդրին, ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսվում է քաղաքի էլեկտրատրանսպորտի ցանցի հետագա զարգացում։ Կկառուցվեն շուրջ 80 կմ ընդհանուր երկարությամբ տրոլեյբուսի և տրամվայի գծեր։ Կամրապնդվի էլեկտրատրանսպորտի նյութատեխնիկական բազան։ Շարժակազմի անընդհատ համալրմանը զուգընթաց, կկառուցվեն տրոլեյբուսի և տրամվայի նոր հավաքակայաններ, շարք կմտնեն արտադրական բազան, վերանորոգման նոր արհեստանոցներ։

Որոշմամբ հանձնարարված է ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների, տրանսպորտային շինարարության մինիստրություններին և հանրապետության Մինիստրների խորհրդին միջոցներ ձեռնարկել՝ արագացնելու դեպի Աջափնյակ և էլեկտրալամպերի գործարանի թաղամաս տանող մետրոպոլիտենի ուղիների նախագծման և շինարարական աշխատանքները։

Բարելավման մեծ ծրագիր է նախատեսված Երևան քաղաքի առևտրի, հասարակական սննդի, կենցաղային սպասարկման բնագավառներում։ 1986—1990 թվականներին կկառուցվեն 30 հազար քառ. մետր տարածությամբ առևտրի և 9 հազար նստելատեղով հասարակական սննդի օբյեկտներ։ Նշենք, որ այս ցուցանիշները, 11-րդ հնգամյակի համեմատությամբ, մոտ երկու անգամ ավելի են։

Առևտրի և հասարակական սննդի ցանցի զարգացման նպատակով ձեռնարկվող այս միջոցառումներին զուգընթաց անհրաժեշտ է, որպեսզի հիմնարկ-ձեռնարկությունները, տրանսպորտային և շինարարական ու արտադրական այլ կազմակերպություններ իրենց հերթին լուրջ աշխատանք կատարեն առևտրի, հասարակական սննդի և կենցաղսպասարկման նոր օբյեկտների կազմակերպման, եղածների ընդարձակման համար։

Շահագործման կհանձնվի քաղաքացիական ավիացիայի գործակալության նոր շենքը, որը հագեցված կլինի սպասարկման ծառայությունների ժամանակակից սարքավորումներով և էապես կբարելավի քաղաքացիների՝ օդային տրանսպորտից օգտվելու պահանջները։

Երևանը կհարստանա շատ ուրիշ նոր հոյակապ կառույցներով, է՛լ ավելի կգեղեցկանա նրա ճարտարապետական դեմքը։ Առանձնապես մեծ ուշադրություն կնվիրվի մայրաքաղաքի կենտրոնի կառուցապատմանը, կլուծվի մի հարց, որը վերջին տարիներին մշտապես մտահոգել է մեզ, մասնագետներին, ճարտարապետներին, քաղաքաշինարարներին, հուզել է բոլոր երևանցիներին։

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին հանձնարարված է ապահովել քաղաքի կենտրոնի կառուցապատման և վերակառուցման է՛լ ավելի արագ թափ, կազմավորել ճարտարապետական ավարտուն համալիրներ, դրանք համակցելով արդեն գոյություն ունեցող օբյեկտներին, և քաղաքի կենտրոնում բնակելի ու հասարակական շենքերի կառուցումը իրականացնել անհատական նախագծերով։ Սա մեր ճարտարապետների առջև ստեղծագործելու լայն հնարավորություններ ու հեռանկարներ է բացում։ Անհրաժեշտ է միավորել ճարտարապետների, նկարիչների, ինժեներների ուժերը, դրանք նպատակամղել ստեղծելու իսկնատիպ անհատական նախագծեր, ճարտարապետական ամբողջական անսամբլներ, այնպիսի կառույցներ, որոնք վառ, տպավորիչ արտահայտեն մեր դարաշրջանի վեհությունը, հարազատ ժողովրդի սոցիալիստական վերածնունդը, մեր հինավուրց ճարտարապետական արվեստի դեմոկրատական ավանդույթները։

Եթե նկատի ունենանք միայն սույն որոշմամբ նախատեսված օբյեկտների քանակը, որոնք պետք է կառուցվեն անհատական նախագծերով, ապա մեր ճարտարապետների, նախագծային ինստիտուտների, ճարտարապետական և

հատակագծման գլխավոր վարչության, ճարտարապետների միության, Երևանի քաղսովետի գործկոմի և հանրապետության պետպլանի ու պետշինի առջև խնդիր է դրվում արդեն այսօր, առանց հապաղելու զբաղվել դրանց իրականացման հարցերով։

Հարկավոր է նկատի ունենալ, որ այն, ինչ մենք պետք է իրագործենք Երևանի կենտրոնի կառուցապատման ընթացքում ոչ թե սոսկ քանակական փոփոխություն է, այլ որակական նոր թռիչք։ Վերակառուցումը պետք է է՛լ ավելի գեղեցիկ ու բարեկարգ դարձնի մեր մայրաքաղաքի կենտրոնը։ Դրա իրականացման ժամանակ պարտադիր է ապահովել արդեն ստեղծված և նոր կառույցների ճարտարապետական ներդաշնակությունը։

Այս գործում մեծ անելիքներ ունեն հանրապետության պետշինը, շինարարական ու նախագծային կազմակերպությունները, ճարտարապետների միությունը, որոնք պետք է, եթե կուզեք, հոգեբանական շրջադարձ կատարեն, Երևանի կենտրոնի կառուցապատման խնդիրը համարելով հարազատ գործ, պատվախնդրության գործ։

Նկատի ունենալով, որ դեռևս 1971 թվականին հաստատված Երևանի զարգացման գլխավոր հատակագիծը կորցրել է իր արդիականությունը, որոշմամբ հանձնարարված է հանրապետության կառավարությանը 1986—1988 թվականներին ապահովել քաղաքի զարգացման նոր գլխավոր հատակագծի մշակումը։ Դա պահանջում է համախմբել մեր բոլոր լավագույն ստեղծագործական ուժերը, այդ գործում ներգրավել նաև երկրի նախագծային առաջավոր կազմակերպություններին, ընդհուպ հայտարարել Երևան քաղաքի գլխավոր հատակագծի կազմման համամիութենական մրցույթ։

Լենինի շքանշանակիր մեր մայրաքաղաք Երևանը, շարունակում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, իրավամբ համարվում է երկրի գեղեցկատես, ճարտարապետական ուրույն նկարագրով, ինքնատիպ կառույցներով, զբոսայգիներով ու պուրակներով, շատրվաններով ու հուշարձաններով զարդարուն արդյունաբերական, գիտական ու մշակութային խոշոր կենտրոններից մեկը։

Երևանը անընդհատ բուռն զարգացում է ապրում։

Մենք հպարտանում ենք մեր քաղաքով և մեզ պարտավորված զգում այն ամենի համար, ինչը համարում ենք երևանյան։ Այստեղից բխում է այն համընդհանուր հոգածությունը, որ մենք հանդես ենք բերում՝ կապված Երևանի կառուցապատման, նրա ճարտարապետական կերպարի ամբողջացման հետ։ Տարեցտարի, լուծելով Երևանում շինարարության ծավալների ընդլայնման և այդ գործի բարելավման հարցերը, մենք, միաժամանակ, պետք է ամենայն լրջությամբ հոգանք նրա ճարտարապետական նկարագրի, շինարարության և հատկապես բնակելի շինարարության որակի մասին, անենք ամեն ինչ, որպեսզի կառուցվածը, ստեղծվածը ունենան մեր քաղաքին արժանի տեսք ու մակարդակ, որպեսզի Երևանը բոլորին առինքնի իր գեղեցկությամբ, բարեկարգությամբ, իր ինքնատիպությամբ։

Ինչպես տեսնում եք, ընկերներ, ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը բազմակողմանիորեն ընդգրկում է Երևանի քաղաքային տնտեսության զարգացման ամբողջ երանգապնակը՝ շեշտը դնելով հատկապես նրա սոցիալական, կոմունալ-կենցաղային, կուլտուրական վերելքի արմատական ուղղությունների վրա։ Հիշյալ պրոբլեմները իրականացնելիս մենք պարտավոր ենք դրանք անպայման սերտորեն զուգակցել, շաղկապել Երևանի տնտեսական պոտենցիալի, արդյունաբերական արտադրության մոտակա և հեռանկարային զարգացման խոշորամասշտաբ խնդիրների խելացի լուծման հետ, այն բանի հետ, թե ինչպես և ինչ ուղղություններով է առաջադիմելու նրա էկոնոմիկան։ Իսկ նրա էկոնոմիկան, ինչպես մեկ անգամ չէ, որ շեշտվել է, պետք է զարգացնել խելացիորեն, գիտական հիմքի վրա, պետական շահերի, ամբողջությամբ վերցրած հանրապետության ժողովրդական տնտեսության առաջընթացի հեռանկարի հաշվառմամբ։ Երևանի էկոնոմիկան և հատկապես արդյունաբերությունը պետք է կողմնորոշվի դեպի նվազ նյութատար, նվազ



էներգատար, էկոլոգիապես մաքուր տեխնիկայի և տեխնոլոգիայի կիրառումը, գիտատար արտադրանքի թողարկումը։

Ի դեպ, զարգացման այս գիծը պետք է իրականացնել, ելնելով աշխատանքային ռեսուրսներով ինքնապահովման սկզբունքից՝ քաղաքի բնակչության բնական աճի հիման վրա։

Քաղաքի բնակչության մեխանիկական աճի սահմանափակմանը զուգընթաց, հարկավոր է հասնել նրա բնական աճի անհրաժեշտ տեմպերի, որոնց պետք է նպաստի մեր ակտիվ ժողովրդագրական քաղաքականությունը։

Մենք ունենք որոշման լրիվ իրականացման բոլոր հնարավորություններն ու պայմանները, շեշտում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը հանձնարարել են ՍՍՀՄ պետպլանին և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին՝ 1986—1990 թվականների տարեկան պլաններում նախատեսել համապատասխան ծավալի կապիտալ ներդրումներ, որոնք անհրաժեշտ են որոշմամբ նախատեսված շինարարական աշխատանքները Երևանում կատարելու համար։

Երևանի քաղաքային տնտեսության զարգացման գործում զգալի պարտականություններ են դրված միութենական մինիստրությունների ու գերատեսչությունների վրա։ Հանրապետության կառավարությունը պետք է բոլոր պայմաններն ստեղծի, որպեսզի նրանք կարողանան հաջողությամբ կատարել իրենց խնդիրները։

Որոշման կատարումը պետք է դառնա բոլոր այն հանրապետական մարմինների ու կազմակերպությունների առաջնահերթ խնդիրը, որոնք ապահովում են ինվեստիցիոն պրոցեսը Երևան քաղաքում։ Ժամանակին պլանավորել, ժամանակին նախագծել, ժամանակին կառուցել. ահա կարևորագույն խնդիրը։ Եթե ապահովենք այս խնդրի կատարումը, հիմնականում կիրականացնենք և որոշումը։

ՀԿԿ Երևանի քաղկոմը, Երքաղսովետի գործկոմը, կուսակցության շրջկոմներն ու շրջսովետների գործկոմները, ելնելով որոշման դրույթներից, պետք է կազմեն գործողությունների կոնկրետ ծրագիր, սահմանեն յուրաքանչյուր կազմակերպության տեղն ու դերը որոշման կատարման գործում, հետևողական հսկողություն ապահովեն ամբողջ նախատեսվածի կատարման նկատմամբ, ծավալեն կազմակերպական ու քաղաքական ակտիվ աշխատանք կուսակցական կազմակերպություններում և աշխատավորական կոլեկտիվներում, մոբիլիզացնեն նրանց ուժերը ծրագրվածը կատարելու համար։

Դա առավել հրատապ է այն պատճառով, որ արդեն իսկ 1986 թվականից շատ ուղղություններում և հատկապես բնակարանային շինարարության ասպարեզում նախատեսվում է աշխատանքների ծավալների մեծ աճ. որպեսզի ապահովվի դրանց իրականացումը, հարկ է հենց այսօրվանից ձեռնամուխ լինել շատ օբյեկտների նախագծմանը, ամրապնդել և հզորացնել շինարարական կազմակերպությունները։ Մի խոսքով, որոշման կատարմանը ձեռնամուխ լինել հենց այժմվանից։

Այս գործում քաղաքային կազմակերպություններին պետք է ակտիվ օգնություն ցույց տան հանրապետության պետպլանը, պետշինը, մինիստրություններն ու գերատեսչությունները, որոնցից յուրաքանչյուրը նույնպես պետք է ունենա որոշման կատարման գործողությունների իր ծրագիրը։ Հանրապետության կառավարությունը պետք է կոորդինացնի այս գործը և անհրաժեշտության դեպքում, որոշման կատարման նպատակով, ներգրավի նաև տարբեր կազմակերպությունների ուժերը։

Առաջին հերթին անհրաժեշտ է համախմբել, մոբիլիզացնել քաղաքում գործող նախագծային և շինարարական բոլոր կազմակերպությունների ուժերը, դրանք նպատակամղել որոշմամբ նախատեսված օբյեկտների նախագծման ու կառուցման գործին։

Ծրագրված մեծածավալ շինարարության հաջող իրականացման համար որոշմամբ նախատեսված է ՍՍՀՄ արդյունաբերական շինարարության և շինանյութերի արդյունաբերության մինիստրությունների գծով 1986 թվականից

սկսած Երևան քաղաքին հարող շրջաններում ստեղծել և վերակառուցել շինարարական ինդուստրիայի մի շարք արդյունաբերական ձեռնարկություններ և արտադրատեխնիկական բազաներ։

Արդեն այսօրվանից հանրապետության արդյունաբերական շինարարության և շինանյութերի արդյունաբերության մինիստրությունները պետք է ամենայն ակտիվությամբ միջոցներ ձեռնարկեն այդ օբյեկտների նախագծումը և շինարարությունը սահմանված ժամկետներին, իսկ ցանկալի է, է՛լ ավելի շուտ սկսելու և ավարտելու համար։ Հարկ է նկատի ունենալ, որ այդ օբյեկտների արագ գործարկումը կնպաստի ո՛չ միայն Երևանում, այլև հանրապետության մյուս քաղաքներում ու շրջաններում նախատեսված շինարարական աշխատանքների արդյունավետ կազմակերպմանը։

Որոշման իրականացման ասպարեզում քիչ անելիքներ չունեն գիտական կազմակերպությունները։ Երևանի քաղաքային սովետի գործկոմի հետ համատեղ նրանք, մասնավորապես, պետք է մշակեն այնպիսի թեմաներ, որոնք ընդգրկեն քաղաքային տնտեսության կարևորագույն բնագավառները, ինչպիսին, ասենք, ջրամատակարարման, ջերմամատակարարման, գազամատակարարման կառավարման, քաղաքի օդային ավազանի վիճակի և այլ ճյուղերի վերահսկման ավտոմատացումն է։

Ընկերնե՛ր։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը հետագա բուռն զարգացման նոր հիանալի հեռանկարներ և լայն հորիզոններ է բացում Երևանի առջև։ Այն ամբողջությամբ համակված է մեծ ուշադրությամբ և ջերմ հոգատարությամբ մարդու նկատմամբ։ Ահա թե ինչու ենք մենք այս որոշումը համարում պատմական, ահա թե ինչու են մեր սրտերը լցվում խոր երախտագիտության զգացումով մեր մեծ լենինյան կուսակցության հանդեպ։ Ինչպես սովորեցնում էր Վ. Ի. Լենինը, որոշումը ընդունելուց հետո ամենակարևոր խնդիրը նրա իրականացումն է։ Եվ, որպեսզի ամբողջ նախանշվածը կենսագործվի, մեզ բոլորիս, քաղաքի յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվի, յուրաքանչյուր ձեռնարկության, յուրաքանչյուր կազմակերպության հարկավոր է ակտիվորեն լծվել որոշման կատարման բազմակողմանի աշխատանքներին։

Որոշման կատարումը պետք է լինի, առանց բացառության, բոլոր երևանցիների հարազատ գործը, նրանց հայրենասիրական պարտքն ու պարտականությունը։ Շատ կարևոր է, որպեսզի մայրաքաղաքի յուրաքանչյուր բնակիչ իր անմիջական մասնակցությունը, հոգու կրակը բերի հարազատ քաղաքի բարեկարգմանն ու գեղեցկացմանը, տանտիրոջ հոգատարություն դրսևորի այն ամենի նկատմամբ, ինչ ստեղծված է և պետք է ստեղծվի Երևանի աշխատավորների կյանքի, աշխատանքի և հանգստի պայմանների հետագա բարելավման համար։

Քաղաքի կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է մոբիլիզացնել երևանցիների ջանքերը, որոշման կապակցությամբ առաջացած նրանց խանդավառությունն ուղղել կոնկրետ գործերի։

Հարկավոր է բոլոր տեղամասերում, ամենուրեք և ամենուր ամրապնդել կարգապահությունն ու կարգն ու կանոնը, բարձրացնել կազմակերպվածությունը, հանձնարարված գործի համար պահանջկոտությունն ու պատասխանատվությունը, հասնել արտադրության և աշխատանքի բարձր արդյունավետության, թողարկվող արտադրանքի որակի բարելավման, սահմանել խնայողության խստագույն ռեժիմ՝ աշխատանքային բոլոր տեղերում բարձր արդյունքներ ձեռք բերելու, պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները կատարելու, հնգամյակը հաջողությամբ ավարտելու, Երևանի ավանդը մեր սովետական հայրենիքի հզորության ամրապնդման ասպարեզում բազմապատկելու համար։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը, վերջում ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, հաստատ վստահություն է հայտնում, որ Սովետական Միության կոմունիստական կուսակցության նկատմամբ շնորհակալության և երախտագի-



տության խոր զգացումով համակված երևանցիները, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորները, որոնք միահամուռ պաշտպանում են հարազատ լենինյան կուսակցության ներքին և արտաքին իմաստուն քաղաքականությունը, ոգեշունչ, հայրենանվեր աշխատանքով կպատասխանեն հանրապետության մայրաքաղաքի նկատմամբ ցուցաբերված հսկայական հոգատարությանը, է՛լ ավելի կհամախմբվեն հարազատ կուսակցության Կենտրոնական կոմիտեի շուրջը, աշխատանքային նոր սխրանքներով կդիմավորեն Հայրենական մեծ պատերազմում նվաճած հաղթանակի 40-ամյակը, ՍՄԿԿ XXVII համագումարը։

Ակտիվի ժողովում ելույթ ունեցան ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար Լ. Ն. Ներսիսյանը, ՀԿԿ Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար Դ. Ա. Հարությունյանը, «Երարդշին» տրեստի № 31 շինվարչության բրիգադավար Գ. Ս. Մարգարյանը, ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար Հ. Ա. Օհանյանը, «Հայէլեկտրամեքենա» արտադրական միավորման գլխավոր դիրեկտոր Ռ. Պ. Ամիրյանը, «Սովետական գրականություն» ամսագրի գլխավոր խմբագիր Հ. Կ. Հովհաննիսյանը, Արտաշատի շրջանի Վերին Արտաշատ գյուղի կոլտնտեսության վարչության նախագահ Պ. Ա. Պետրոսյանը։ Նրանք նշեցին, որ Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը առաջ է բերել հանրապետության կոմունիստների, Երևանի, Սովետական Հայաստանի բոլոր աշխատավորների ջերմ հավանությունը, նոր թափ հաղորդել ստեղծագործ այն աշխատանքին, որն ուղղված է հանրապետության տնտեսական և սոցիալական զարգացման 11-րդ հնգամյակի բարձր բնագծերի նվաճմանը, ՍՄԿԿ XXVI համագումարի, կուսակցության Կենտկոմի ետհամագումարյան պլենումների որոշումների անթերի կատարմանը։ Հանրապետության, նրա մայրաքաղաքի աշխատավորները, գործողության մարտական ուղեցույց ունենալով ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թ. մարտյան պլենումի որոշումները, բոլոր ջանքերը մոբիլիզացրել են՝ ամենուրեք ամրապնդելու աշխատանքային, պլանային ու կատարողական կարգապահությունը, բարձրացնելու աշխատանքի արդյունավետությունն ու որակը։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշումը նրանք դիտում են որպես մեր հանրապետության, նրա մայրաքաղաքի հետագա զարգացման, հայ ժողովրդի, հանրապետության բոլոր աշխատավորների բարեկեցության անշեղ բարձրացման նկատմամբ կուսակցության և սովետական պետության անդուլ հոգատարության նոր, վառ դրսևորում, որը առաջ է բերում ժողովրդի ջերմ երախտագիտությունը, նրա աներեր կամքն ու պատրաստակամությունը՝ անդուլ աշխատանքով իրականացնել կուսակցության վեհ կանխագծումները, արժանի ավանդ բերել մեր մեծ սոցիալիստական հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման գործին։

Ակտիվի ժողովում եզրափակման խոսքով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանը։

Մեծ խանդավառությամբ ընդունվեց ողջույնի նամակ՝ հասցեագրված ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդին։

Միահամուռ ընդունված բանաձևում հանրապետական կուսակցական ակտիվը երևանցիների, հանրապետության բոլոր աշխատավորների, ամբողջ հայ ժողովրդի անունից խորին շնորհակալության խոսք ուղղեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին՝ հանրապետության, նրա մայրաքաղաքի նկատմամբ ցուցաբերած հսկայական ուշադրության և մեծ օգնության համար, հավաստիացրեց, որ նրանք բոլոր ջանքերը կգործադրեն Երևանի քաղաքային տնտեսության հետագա զարգացման հոյակապ ծրագրի անշեղ իրականացման համար, հայրենանվեր գործերով կնշանավորեն մեծ հաղթանակի 40-ամյակը, նորանոր նվաճումներով կգնան դեպի ՍՄԿԿ XXVII համագումարը։

Մեծ հաղթանակի 40 տարին

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԸ

Մ. ԿՈԼԵՍՆԻԿՈՎ

*1985 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՅԻՍԻ 9-ԻՆ լրանում է 40 տարին այն օրվանից, երբ հաղթականորեն ավարտվեց իր մասշտաբներով և դաժանությամբ պատմության մեջ աննախադեպ ճակատամարտն ընդդեմ իմպերիալիզմի ամենառեակցիոն հարվածային ուժի՝ հիտլերյան ֆաշիզմի, որը նպատակ էր դրել ոչնչացնել աշխարհում առաջին սոցիալիստական պետությունը, հասնել համաշխարհային տիրապետության։*

*ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակը նշվում է որպես համաժողովրդական տոն։ Այդ փառապանծ հոբելյանը քաղաքական խոշոր իրադարձություն է մեր երկրի կյանքում։ Մեզ հետ միասին այն հանդիսավորությամբ նշում են եղբայրական սոցիալիստական երկրների ժողովուրդները, մոլորակի խաղաղասեր ուժերը, ողջ առաջադեմ մարդկությունը։*

*Տոնի նախապատրաստությունն ընթացավ սովետական ժողովրդի տնտեսական ու քաղաքական բարձր ակտիվության պայմաններում, որը նպատակամղված էր կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հետագա պլենումների որոշումների իրականացմանը, տասնմեկերորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարմանը։ Այդ ակտիվությանն առավել նշանակություն ու թափ է հաղորդում առաջիկա ՍՄԿԿ XXVII համագումարը։*

*Սովետական մարդիկ, զինված ուժերի մարտիկները, սերտորեն համախմբված կոմունիստների լենինյան կուսակցության շուրջը, լուծում են զարգացած սոցիալիզմի կատարելագործման խնդիրները։ Խիստ շահագրգռված լինելով երկրի վրա խաղաղության պահպանմամբ, նրանք ջերմորեն հավանություն են տալիս և միահամուռ պաշտպանում ՍՄԿԿ-ի և սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականությունը՝ դրանում տեսնելով իրենց արմատական շահերի և ամենանվիրական իղձերի արտահայտությունը։ Մեր կուսակցության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը համապատասխանում է նաև բոլոր ժողովուրդների կենսական շահերին։*

*Ինչպես հայտնի է, պատերազմն սկսվեց ֆաշիստների համար շահեկան պայմաններում։ Ֆաշիստական Գերմանիան և նրա դաշնակիցները ՍՍՀՄ-ի դեմ նետեցին 5,5 մլն մարդուց բաղկացած բանակ։ Այն բաղկացած էր 190 դիվիզիայից, որից 153-ը՝ գերմանական։ Դրանց աջակցում էին հազարավոր ինքնաթիռներ ու տանկեր, տասնյակ հազարավոր հրանոթներ ու ականանետներ։ Կարմիր բանակը հարկադրված էր մենամարտել այդ հսկայական բանակի դեմ, որի նմանը երբեւէ ոչ մի պետություն և ոչ մի կոալիցիա մարտի չէին նետել ընդդեմ իրենց հակառակորդների։*

*Սովետական մարդկանց խաղաղ աշխատանքն ընդհատվեց։ Մեր հայրենիքը մահացու գոտեմարտի բռնվեց ողջ մարդկության ամենաոխերիմ թըշնամու՝ գերմանական ֆաշիզմի հետ։ Սկսվեց սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմը, որը տևեց գրեթե չորս տարի։*

*Պատերազմի առաջին իսկ րոպեներից սկսած մեր սահմանապահ ուղեկալների մատույցներում դաժան մարտեր ծավալվեցին Բարենցի ծովից մինչև Սև ծովն ընկած հսկայական ռազմաճակատում։ Ֆաշիստական զավթիչների դեմ սովետական զինվորները մարտնչում էին անձնուրաց կերպով։ Բայց թշնամու անակնկալ հարձակումը կարմիր բանակին դրեց չափազանց ծանր դրության մեջ։ Չնայած տոկունությանն ու արիությանը, նա չկարողացավ կասեցնել թվով և մարտական հանդերձանքով գերազանցող թշնամու առաջխաղացումը և ստիպված էր ծանր մարտեր մղելով նահանջել։ Սովետական երկրի վրա մահացու վտանգ կախվեց։*

*Երկրի համար այդ բացառիկ ծանր պահին կոմունիստական կուսակցությունը, ղեկավարվելով սոցիալիստական հայրենիքի պաշտպանության վերաբերյալ լենինյան ուսմունքով, հանդես եկավ որպես ֆաշիստական Գերմանիայի դեմ սովետական ժողովրդի պայքարի ոգեշնչողն ու կազմակերպիչը։ Նա ժողովրդին կազմակերպեց ու ոտքի հանեց Հայրենական մեծ պատերազմի՝ հանուն մեր հայրենիքի ազատության ու անկախության, հանուն սոցիալիզմի։*

*Կուսակցության Կենտրոնական կոմիտեն գլխավորեց ագրեսորին հակահարված տալու նպատակով ուժերի կազմակերպման հսկայական աշխատանքը։ Կենտկոմի անդամները, ականավոր զորահրամանատարներն ու տնտեսական գործիչները ռազմաճակատում և թիկունքում պատասխանատու տեղամասերի գլուխ կանգնեցին. ղեկավարվելով կուսակցության Կենտկոմի և սովետական կառավարության ցուցումներով, հաշվի առնելով կոնկրետ իրադրությունը՝ տեղերում լուծում էին պատերազմական ժամանակի անհետաձգելի հարցերն ու ամենաբարդ խնդիրները։*

*Թշնամուն հակահարված տալու և ջախջախելու համար երկրի բոլոր ուժերն առավել արագությամբ մոբիլիզացնելու նպատակով 1941 թ. հունիսի 30-ին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և ՍՍՀՄ ժողովրդական կոմիսարների խորհրդի համատեղ որոշմամբ ստեղծվեց Պաշտպանության պետական կոմիտե (ՊՊԿ)՝ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի գլխավոր քարտուղար Ի. Վ. Ստալինի գլխավորությամբ։ Այդ արտակարգ մարմնի ձեռքում կենտրոնացվեց երկրի ամբողջ իշխանությունը, պետական, ռազմական ու տնտեսական ղեկավարությունը։ Այն միավորում էր բոլոր պետական ու ռազմական հիմնարկությունների, կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների գործունեությունը։*

*Կուսակցության Կենտրոնական կոմիտեի և սովետական կառավարության մշակած ծրագիրը շարադրեց Պաշտպանության պետական կոմիտեի նախագահ Ի. Վ. Ստալինը 1941 թ. հուլիսի 3-ի իր ռադիոելույթում։ Կուսակցությունը բացատրեց ժողովրդին Հայրենական մեծ պատերազմի արդարացի բնույթը, սովետական յուրաքանչյուր մարդու սրբազան պարտքը՝ պաշտպանելու հայրենիքը, սոցիալիզմի նվաճումները, կոչ արեց արիության ու հերոսության՝ ռազմաճակատում, անձնուրաց աշխատանքի՝ թիկունքում։ Նա դիմեց բանվոր դասակարգին, կոլտնտեսային գյուղացիությանը և մտավորականությանը՝ «Ամեն ինչ ռազմաճակատի համար։ Ամեն ինչ հաղթանակի համար» կոչով։ Կարմիր բանակի առջև խնդիր էր դրվում պաշտպանել յուրաքանչյուր թիզ հողը, մեր քաղաքների ու գյուղերի համար մաքառել մինչև արյան վերջին կաթիլը, պաշտպանական մարտերում հյուծել ու արյունաքամ անել գերմանական զորքերին, նրանց ջախջախել և վռնդել սովետական հողից, Եվրոպայի ժողովուրդներին օգնել թոթափելու ֆաշիստական լուծը։*

*Իրականացնելով պատերազմական ժամանակի ընդունած ծրագիրը, կուսակցությունը հսկայական կազմակերպչական և քաղաքական աշխատանք ծավալեց երկիրը մեկ միասնական ռազմական ճամբարի վերածելու նպատակով։ Կուսակցական մարմինները կազմակերպվածություն ու օպերատիվություն*

արմատավորեցին պետական ու հասարակական կազմակերպությունների աշխատանքում, համակողմանի աջակցություն էին ցույց տալիս կարմիր բանակին, զինակոչիկների մոբիլիզացմանը, ղեկավարում էին պաշտպանական կառույցների շինարարությունը, կործանիչ և պարտիզանական խմբերի ստեղծման, բնակչության և նյութական արժեքների էվակուացման գործը։ Կուսակցական կազմակերպություններն ապահովում էին գործարանների ու ֆաբրիկաների անցումը ռազմական արտադրանքի թողարկմանը, օգնում էին նոր զորամասերի ու միավորումների ձևավորմանն ու հանդերձավորմանը, նրանց արագ տեղափոխմանը ռազմաճակատ, զինվորական մարմինների հետ միասին մեծ աշխատանք էին կատարում սպայական կադրեր պատրաստելու գործում, սովետական մարդկանց դաստիարակում էին բոցաշունչ հայրենասիրության, թշնամու նկատմամբ այրող ատելության, նրա հանդեպ մեր հաղթանակի հավատի ոգով։

ՀամԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեն զինված ուժեր գործուղեց Կենտկոմի բազմաթիվ անդամների ու անդամության թեկնածուների, կուսակցության ականավոր գործիչների։ Կուսակցության Կենտկոմի գրեթե մեկ երրորդը, ինչպես նաև միութենական հանրապետությունների կենտկոմների, երկրկոմների ու մարզկոմների շատ քարտուղարներ, փորձված կուսակցական աշխատողներ գտնվում էին ռազմաճակատում։

Թշնամու ջախջախման գործում մեծ նշանակություն ուներ քաղաքական ու ռազմական ղեկավարության միասնության հետագա ամրապնդումը։ Այդ բանին ՊՊԿ-ի ստեղծումից հետո նպաստեց Գերագույն գլխավոր հրամանատարության ռազմակայանի ստեղծումը, որի աշխատանքային մարմինը գլխավոր շտաբն էր։ Ռազմակայանը, որպես բարձրագույն զինվորական մարմին, իրականացնում էր ռազմական շինարարության կենտրոնացված ղեկավարումը և մարտական գործողությունների ստրատեգիական ղեկավարումը։ Զինված ուժերի՝ ռազմակայանի մշակած պաշտպանական և հարձակողական գործողությունների կարևորագույն ստրատեգիական պլանները քննարկվում էին ՊՊԿ-ում և ՀամԿ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյում։ Ռազմակայանն իր գործունեությունում հենվում էր ռազմաճակատների ու բանակների զինվորական խորհուրդների վրա։ Զինվորական խորհուրդների անդամները կապված էին կուսակցության Կենտկոմի, ՊՊԿ-ի հետ, կենսագործում էին նրանց ցուցումները։

Ողջ սովետական ժողովուրդն անդուլ կերպով և համակողմանիորեն աջակցում էր բանակին ու նավատորմին։ Ռազմաճակատն ու թիկունքը մեկ ամբողջություն էին կազմում։ Մասսաների նախաձեռնությունը ռազմաճակատին օգնելու բազում հիանալի հայրենասիրական ձեռնարկումներ և արդյունավետ ձևեր էր ծնում։ Կուսակցության Կենտկոմն ու ՊՊԿ-ն կարմիր բանակի առջև խնդիր դրեցին. «Կանգնեցնե՛լ թշնամուն»։ Այս խնդրի կատարմանն էր ենթարկված բարձրագույն ռազմական ղեկավարության, ռազմաճակատների ու բանակների, նավատորմիղների ու նավատորմիկների ռազմական խորհուրդների, զորամիավորումների, զորամասերի ու նավերի հրամանատարների, քաղմարմինների, բանակային ու նավատորմիղային կուսակցական կազմակերպությունների ողջ աշխատանքը։

Սովետական զինվորներն անօրինակ քաջությամբ, արիությամբ ու տոկունությամբ էին մարտնչում ատելի թշնամու դեմ։ Անանց փառքով պսակեցին իրենց Օդեսայի, Կիևի, Լենինգրադի, Սևաստոպոլի, Տուլայի հերոսական պաշտպանները։ Այստեղ ծնվեց սովետական գվարդիան։ Լենինգրադի, Օդեսայի ու Սևաստոպոլի պաշտպանությունը մեծ նշանակություն ունեցավ ֆաշիստական «կայծակնային պատերազմի» ձախողման ու Մոսկվայի պաշտպանության համար, որի դեմ գլխավոր հարձակումը թշնամին ծավալեց սեպտեմբերի վերջին։

Հիտլերյան կլիկը հասկանում էր, որ սովետական մայրաքաղաքի մատույցներում վճռվում էր գերմանական ֆաշիզմի բախտը։ Գիտակցելով այդ՝ հակառակորդի զորքերը կռվում էին մոլեգնորեն։ Աշնանային երկու հարձա-



կումներին մասնակցում էին գերմանական ընտիր դիվիզիաների հզոր խմբավորումներ։ Դրությունը խիստ վտանգավոր էր։ Սակայն թշնամու պլանները լիովին ձախողվեցին։ Մայրաքաղաքի պաշտպանները անձնազոհ կերպով կռվում էին ամեն մի թիզ հայրենի հողի համար։ Նրանց լոզունգներն էին. «Մոսկվան չտա՛լ», «Մոսկվայի տակ պետք է սկսվի թշնամու ջախջախումը»։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի, սովետական կառավարության, Պաշտպանության պետական կոմիտեի, Գերագույն գլխավոր հրամանատարության ռազմակայանի, Մոսկվայի քաղաքային կուսակցական կազմակերպության հսկայական ջանքերի շնորհիվ, մայրաքաղաքի բնակիչների կայունության ու արիության, նրա պաշտպանների մասսայական հերոսության, երկրի բոլոր ծայրերից նրանց ուղարկվող օգնության շնորհիվ թշնամին նախ կանգնեցվեց, արյունաքամ արվեց, իսկ այնուհետև, մեր հակահարձակման շնորհիվ հսկայական կորուստներ կրելով, Մոսկվայի պատերից հեռու շպրտվեց։ Դեկտեմբերին ֆաշիստական զորքերին հուժկու հարվածներ հասցվեցին նաև Ռոստովի և Տիխվինի տակ։ Սկսվեց մեր զորքերի ընդհանուր հարձակումը։ Զավթիչների թիկունքում եռանդուն գործում էին ընդհատակայիններն ու բազմաթիվ պարտիզանական խմբերը։

Մոսկվայի տակ հիտլերականների պարտությունն ու 1941—1942 թթ. ձմռանը կարմիր բանակի հաջող հարձակումը ունեցան հսկայական ռազմաքաղաքական և միջազգային նշանակություն։ Այդ հաղթանակները վկայեցին սովետական պետության, նրա բանակի անսպառ ուժի և հզորության մասին։ Մոսկվայի տակ ֆաշիստական բանակների ջախջախումը Հայրենական մեծ պատերազմի առաջին տարվա վճռական ռազմաքաղաքական իրադարձությունն էր, նրա արմատական բեկման սկիզբը և հիտլերականների առաջին խոշոր պարտությունը երկրորդ համաշխարհային պատերազմում։ Վերջնականապես ձախողվեց «կայծակնային պատերազմի» ֆաշիստական պլանը և հօդս ցնդեց գերմանական բանակի անպարտելիության մասին եղած առասպելը։ Գերմանիայի համար սպասվում էր երկարատև պատերազմ։ Ձախողվեցին նաև ֆաշիստների հաշվարկները սովետական հասարակական ու պետական կարգի, սովետական թիկունքի անկայունության վերաբերյալ։

Մոսկվայի տակ կրած պարտությունից հետո հիտլերյան հրամանատարությունը զորքերի խոշոր խմբավորում ստեղծեց հարավային ուղղությամբ՝ ստեղծելով ուժերի զգալի գերակշռություն։ Նրա հարվածային ուժերը ձգտում էին հասնել Վոլգա։ Սկսվեց երկրորդ համաշխարհային պատերազմի մեծագույն՝ Ստալինգրադյան ճակատամարտը, իսկ ավելի հարավ՝ կատաղի ճակատամարտ Կովկասի համար, որի հերոսական պաշտպաններն իրենց մարտական գործողություններով հիտլերականներին զրկեցին Ստալինգրադի տակ խոշոր ուժեր նետելու հնարավորությունից և փակեցին նրանց ճանապարհը դեպի Անդրկովկաս, Մերձավոր ու Միջին Արևելք։

Վոլգայի ափին կարմիր բանակի տարած հաղթանակը երկրորդ համաշխարհային պատերազմի ամենախոշոր ռազմաքաղաքական իրադարձությունն է։ Այն Հայրենական մեծ պատերազմում և ամբողջ երկրորդ համաշխարհային պատերազմում արմատական բեկման սկիզբը դրեց։ Ստալինգրադի տակ ֆաշիստական զորքերի ջախջախումը ելակետ հանդիսացավ թշնամուն հետագա հարվածներ հասցնելու՝ Հյուսիսային Կովկասում, Միջին Դոնում, Վորոնեժի տակ, ռազմաճակատի կենտրոնական հատվածում և Լենինգրադի տակ 1942—43 թթ. ձմռանը կարմիր բանակի հուժկու հարձակման համար։

Հսկայական ռազմաքաղաքական նշանակություն ուներ Լենինգրադի շրջափակման ճեղքումը 1943 թ. հունվարին։ Այն էապես բարելավեց Լենինի քաղաքի հերոսական պաշտպանների ու բնակիչների վիճակը, որոնք արիաբար պաշտպանում էին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության օրրանը, աննկուն կերպով դիմանում շրջափակման, ռմբակոծությունների պատճառած արհավիրքներին։ Վերացվեց հակառակորդի Ռժևսկ—Վյազեմսկի պլացդարմը։ Ռազմաճակատի գիծը ավելի տեղափոխվեց Մոսկվայից դեպի արևմուտք։

Սակայն հիտլերյան կլիկը, համընդհանուր մոբիլիզացիա կատարելով, ևս մեկ փորձ կատարեց իր արկածախնդրային նպատակներին հասնելու համար. 1943 թ. ամռանը նա խոշոր հարձակում սկսեց Կուրսկի ելուստի շրջանում, և դրան էապես նպաստում էր Եվրոպայում երկրորդ ճակատի բացակայությունը: Թշնամին կարմիր բանակի դեմ պահում էր 232 դիվիզիա: Օրյոլի և Բելգորոդի շրջանում գերմանացիներն ստեղծեցին հզոր հարվածային խմբավորումներ՝ բաղկացած ավելի քան 50 դիվիզիայից, որից 20-ը տանկային ու մոտոմեքենայացված էին, զինված նոր տանկերով և ինքնագնաց հրանոթներով:

Հիտլերականների հարձակմանը, որն սկսվեց հուլիսի 5-ին, նախորդեց սովետական զորքերի հզոր հականախապատրաստությունը: Շահելով պաշտպանական ճակատամարտը, նրանք շուտով անցան վճռական հակահարձակման և թշնամուն քշեցին դեպի արևմուտք: Հիսնօրյա մարտերի ընթացքում ջախջախվեց թշնամու 30 դիվիզիա: Հակառակորդը կորցրեց շուրջ կես միլիոն զինվոր ու սպա, 1.500 տանկ, 3.000 հրանոթ և ավելի քան 3.700 ինքնաթիռ: Ֆաշիստական Գերմանիայի՝ կորցրած ստրատեգիական նախաձեռնությունը վերադարձնելու վերջին փորձը լիովին ձախողվեց:

Այդ հաղթանակը սկիզբ դրեց կարմիր բանակի նոր հաղթական արշավանքին, որը ծավալվեց մինչև երկու հազար կիլոմետր երկարություն ունեցող ճակատով: Կուրսկի ճակատամարտը երկրորդ համաշխարհային պատերազմի նշանավոր իրադարձություն էր: Այստեղ տարած հաղթանակի և սովետական զորքերի՝ Դնեպրին հասնելու շնորհիվ ավարտվեց արմատական բեկումը Հայրենական մեծ պատերազմի և ամբողջ երկրորդ համաշխարհային պատերազմի ընթացքում: Ստրատեգիական նախաձեռնությունը կարմիր բանակն իր ձեռքում ամուր պահեց ընդհուպ մինչև ֆաշիստական Գերմանիայի լիակատար ջախջախումը: Ազատագրվեցին Դոնբասն ու Ձախափնյա Ուկրաինան: Նոյեմբերի 6-ին թշնամին դուրս վռնդվեց Կիևից: Այս հուժկու հարվածները լրացվում էին մասսայական պարտիզանական շարժումով: 1943 թ. վերջին մաքրըվեց թշնամու կողմից ժամանակավորապես զավթված տարածքի կեսից ավելին:

Կուրսկի ճակատամարտի ամենակարևոր արտաքին քաղաքական հետևվանքը եղավ ֆաշիստական պետությունների բլոկի փլուզման սկիզբը. առաջինն այդ բլոկից դուրս եկավ Իտալիան: Կուրսկի մոտ տարած հաղթանակը մասնավորապես նպաստեց այն ժամանակ անգլո-ամերիկյան զորքերի՝ Իտալիա դեսանտ իջնելուն և այնտեղ ֆաշիստական վարչակարգի տապալմանը:

Չնայած ձեռք բերվածին և թշնամու նկատմամբ կարմիր բանակի աճող գերազանցությանը զորքերի թվով ու զինվածությամբ, հակառակորդը դեռևս բավականին հզոր էր: Նրա գլխավոր ուժերն առաջվա նման գտնվում էին սովետա-գերմանական ռազմաճակատում, որտեղ գործում էին թշնամու 236 դիվիզիաներ ու 18 բրիգադներ, մինչդեռ արևմտյան դաշնակիցների դեմ կար ընդամենը 102 դիվիզիա: Գերմանական բանակի համար շարունակում էր աշխատել գրեթե ողջ Եվրոպան:

Թշնամուն շունչ քաշելու հնարավորություն չտալով, մեր բանակը 1944 թվականին նրան հասցրեց առավել հուժկու հարվածներ: Հունվարին, Բալթիական նավատորմիղի օգնությամբ, սկսվեց Լենինգրադյան և Վոլխովի ռազմաճակատների զորքերի խոշոր հարձակումը, իսկ փետրվարին հետևեց հուժկու հարվածը Նովգորոդի տակ: Լենինգրադը լիովին ազատագրվեց 900 օր տևած շրջափակումից:

Փետրվար-մարտին ուկրաինական չորս ռազմաճակատների զորքերը Աջափնյա Ուկրաինայում ջախջախեցին թշնամու երկու խոշոր խմբավորումները: Ազատագրվեց Մոլդավիայի զգալի մասը, մարտի 26-ին սովետական զորքերը հասան Ռումինիայի հետ մեր սահմանին: Սկսվեց ՍՍՀՄ պետական սահմանի վերականգնումը:

1944 թ. ամռանը թշնամուց ազատագրվեց արդեն նրա զավթած տարածքի երեք քառորդը: Սովետական զորքերը, թշնամու ռազմաճակատը ճեղքելով երկու մասի, հասան Կարպատների նախալեռները և դուրս եկան Բալկանների



մատույցները: Ամբողջ աշխարհին պարզ դարձավ, որ ՍՍՀՄ-ն ի վիճակի է իր սեփական ուժերով ջախջախելու ֆաշիզմը և ազատագրելու Եվրոպան: Դա ստիպեց ամերիկյան և անգլիական կառավարություններին վերջապես սկսել ռազմական լայն գործողությունները մայր ցամաքում: Երկրորդ ճակատը Եվրոպայում բացվեց 1944 թ. հունիսին՝ երկու տարվա ուշացումով: Բայց դրանից հետո էլ սովետա-գերմանական ռազմաճակատը շարունակում էր մնալ վճռականը՝ իր վրա գամելով ֆաշիստական զորքերի երկու երրորդը:

Հունիսին Առաջին մերձբալթյան և երեք բելոռուսական ռազմաճակատների զորքերը թշնամու գլխին տեղացին կործանիչ հարվածներ Բելոռուսիայում: Հայրենի հողի ազատագրման գործում էական ավանդ ներդրեցին հերոս պարտիզանները: Նրանց անձնազոհ պայքարի հետ միաձուլվեց սովետական պարտիզանների գործողություններն արտասահմանում: Բելոռուսական հաջակավալ օպերացիայում մեր զորքերը ոչնչացրին ու գերի վերցրին թշնամու կես միլիոնից ավելի զինվորների ու սպաների: Սովետական բանակն ազատագրեց ամբողջ Բելոռուսիան և Լիտվական ՍՍՀ-ի մեծ մասը, ընդհուպ մոտեցավ Գերմանիայի սահմաններին:

Հուլիս-օգոստոսին սովետական զորքերը կործանիչ հարված հասցրին թշնամուն հարավում: Առաջին ուկրաինական ռազմաճակատի միավորումներն ազատագրեցին Արևմտյան Ուկրաինան: Ժողովրդական կոմիտեների պատգամավորների՝ նոյեմբերին կայացած համագումարը մանիֆեստ ընդունեց Սովետական Ուկրաինայի հետ Անդրկարպատյան Ուկրաինայի միավորման մասին:

Օգոստոսին Յասսի—Քիշնևյան օպերացիայում խոշոր հաղթանակ տարան երկրորդ և երրորդ ուկրաինական ռազմաճակատների զորքերը, որոնք շրջապատեցին և ջախջախեցին 22 դիվիզիայից բաղկացած թշնամու խոշոր խմբավորումը: Լիովին ազատագրվեց Մոլդավիան:

Սեպտեմբեր-հոկտեմբերին կարմիր բանակը խոշոր հաղթանակ տարավ Մերձբալթիկայում: Ազատագրվեցին Էստոնիան և Լատվիայի մեծ մասը:

Հոկտեմբերին կարելական ռազմաճակատի զորքերը հյուսիսային նավատորմիղի հետ միասին թշնամուն դուրս քշեցին Պեչենգայից՝ այդ վաղնջական ռուսական հողից, մտան Նորվեգիա և նրա ժողովրդին օգնեցին ազատագրվելու գերմանաֆաշիստական լծից:

ՍՍՀՄ-ի պետական սահմանը վերականգնվեց Բարենցի ծովից մինչև Սև ծով ընկած ողջ երկայնքով մեկ:

1944 թ. կեսերից սկսվեց կարմիր բանակի մեծ ազատագրական արշավանքը, որով նա ուղղակի օգնություն ցույց տվեց Եվրոպայի ժողովուրդներին՝ ֆաշիստական Գերմանիայի դեմ նրանց մղած պայքարում:

Իրենց հողն ազատագրելու համար կարմիր բանակի հետ միասին դեպի արևմուտք էին գնում լեհական բանակն ու չեխոսլովակյան կորպուսը, ռումինական դիվիզիան, հարավսլավական բրիգադը, որոնք ստեղծվել էին սովետական հողում և հանդերձավորվել սովետական ռազմական տեխնիկայով ու զենքով: Ամրապնդվում ու կոփվում էր ընդհանուր թշնամու դեմ համատեղ պայքարում ծնված մեր մարտական համագործակցությունը:

1944 թ. ամռան-աշնան կամպանիայի քաղաքական ու ռազմական արդյունքները հսկայական են: Դրա ընթացքում կարմիր բանակն ավարտեց սովետական հողի ազատագրումը և Հարավ-Արևելյան ու Կենտրոնական Եվրոպայի ժողովուրդներին օգնեց դեն շպրտելու հիտլերյան բռնատիրության լուծը: Ազատագրված ժողովուրդներն սկսեցին իրենց կյանքը կառուցել նորովի, ստեղծելով ժողովրդադեմոկրատական կարգ: Ֆաշիստական պետությունների կոալիցիան փլուզվեց: Ֆաշիստական Գերմանիան մնաց լիակատար մեկուսացման մեջ: Ռումինիայի, Բուլղարիայի և Հունգարիայի ժողովուրդները նրա դեմ շրջեցին իրենց զենքը:

Հավատարիմ իր դաշնակցային պարտքին, ձգտելով թեթևացնել անգլո-ամերիկյան զորքերի դրությունն Արդեններում, կարմիր բանակը Բալթիկ ծովից մինչև Կարպատներ ձգվող 1.200 կիլոմետրանոց ռազմաճակատով մեկ

իր հարձակումն սկսեց հունվարի 12-ին՝ կանխատեսված ժամկետից զգալիորեն շուտ։ Սովետական զորքերը զավթիչներից մաքրեցին ամբողջ Լեհաստանը և Հունգարիան, ազատագրեցին Չեխոսլովակիայի ու Ավստրիայի զգալի մասը, օգնեցին Դանիայի ժողովրդին՝ դեն շպրտելու հիտլերյան բռնատիրությունը։ Ռազմական գործողությունները տեղափոխվեցին բուն Գերմանիայի տարածքը։

Կարմիր բանակը ապրիլի 16-ին սկսեց Բեռլինի օպերացիան, որի ընթացքում շրջապատվեց, ոչնչացվեց և մասամբ գերի վերցվեց թշնամու ամենախոշոր խմբավորումը, որը բաղկացած էր շուրջ մեկ միլիոն զինվորներից ու սպաներից։ 10 օր համառ մարտեր էին տեղի ունենում բուն Բեռլինում։ Մայիսի 1-ի վաղ առավոտյան ռայխստագի վրա արդեն ծածանվում էր հաղթանակի դրոշը։ Մայիսի 2-ին Բեռլինի կայազորը հանձնվեց։ Բեռլինի անկումը նշանակում էր ֆաշիստական վարչակարգի խայտառակ վախճանը, հիտլերյան ռայխի լիակատար փլուզումը։ Մայիսի 8-ին Գերմանիան ստորագրեց անվերապահ կապիտուլյացիայի ակտը։ Պատերազմն ավարտվեց այնտեղ, որտեղից եկել է։ Մայիսի 9-ին սովետական զորքերը, օգնության հասնելով ապստամբած Պրագայի բնակիչներին, ջախջախեցին Չեխոսլովակիայի մայրաքաղաքը շրջապատած թշնամական խմբավորումը և մտան քաղաք, որտեղ ազատարար զինվորներին ցնծությամբ դիմավորեցին։

Պատերազմը Եվրոպայում ավարտվեց սովետական ժողովրդի ու նրա բանակի փայլուն հաղթանակով։ Ի նշանավորումն այդ մեծագույն իրադարձության, մայիսի 9-ը հռչակվեց հաղթանակի տոնի օր։

Հունիսի 24-ին Մոսկվայում, Կարմիր հրապարակում, տեղի ունեցավ հաղթանակի զորահանդեսը։ Լենինի դամբարանի առջևով, փառքով պսակված մարտական դրոշների ներքո հանդիսավոր երթով անցան ռազմաճակատների համահավաք գնդերը, ռազմածովային նավատորմի համահավաք գունդը, լեհական բանակի մարտիկները։ Ճակատայինների երթի վերջում սովետական հաղթանակած մարտիկները Լենինի դամբարանի պատի տակ նետեցին ջախջախված ֆաշիստական բանակի դրոշներն ու Հիտլերի անձնական դրոշակը։ Շքերթին մասնակցում էին նաև Մոսկվայի կայազորի զորքերը։ Այդ պատմական շքերթն ու ավելի ուշ ռազմական գլխավոր հանցագործների նկատմամբ կայացած Նյուրնբերգի դատավարությունը ահարկու նախազգուշացում են նաև համաշխարհային տիրապետության այսօրվա հավակնորդներին։

Հայրենական մեծ պատերազմում Սովետական Միության հաղթանակը միանգամայն օրինաչափ է։ Այն խոր արմատներ ունի։ Այն լիովին բացահայտեց սոցիալիզմի առավելությունները, նրա հսկայական տնտեսական, սոցիալ-քաղաքական և հոգևոր հնարավորությունները։ Դա մեծ Լենինի ստեղծած սովետական պետության, ամենաառաջավոր հասարակարգի, սոցիալիստական տնտեսական սիստեմի հաղթանակն էր։ Հայրենական մեծ պատերազմը համոզիչ կերպով ցուցադրեց սովետական մարդկանց բոցավառ հայրենասիրությունը, կուսակցության ու ժողովրդի միաձուլությունը, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և աշխատավոր մտավորականության դաշինքի, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության ու եղբայրության անխախտելիությունը։

Հայրենական մեծ պատերազմում տարած հաղթանակը ցույց տվեց սովետական ռազմական գիտության և ռազմական արվեստի գերազանցությունը, մեր ռազմական կադրերի ստրատեգիական ղեկավարության և մարտական վարպետության, ամբողջությամբ վերցրած ռազմական կազմակերպության բարձր մակարդակը։ ՍՍՀՄ զինված ուժերը մարտական գործողությունների ընթացքում ձախողեցին հիտլերյան, այսպես կոչված, կայծակնային պատերազմի պլանը, իսկ այնուհետև, խլելով նախաձեռնությունը, պատերազմում հասան արմատական բեկման և ավարտեցին թշնամու ջախջախումը։ Մեր զորքերի մարտական գործողությունների գլխավոր տեսակը վճռական, ստրատեգիական հարձակումն էր։ Պատերազմի տարիներին սովետական զորահրամանատարներն ու զորքերն իրականացրին 51 ստրատեգիական օպե-



րացիա, որոնցից 35-ը՝ հարձակողական։ Դրանց մեծ մասը մտել է համաշխարհային ռազմական արվեստի ոսկե գանձարանը։

Կոմունիստական կուսակցությունը դաստիարակեց և ղեկավար պաշտոնների առաջադրեց խոշոր զորահրամանատարների. Հ. Ք. Բաղրամյանին, Ս. Ս. Բիրյուզովին, Ս. Մ. Բուդյոննուն, Լ. Ա. Գովորովին, Ա. Ի. Երյոմենկոյին, Մ. Վ. Զախարովին, Գ. Կ. Ժուկովին, Ի. Ս. Կոնևին, Ռ. Յա. Մալինովսկուն, Կ. Ա. Մերեցկովին, Կ. Ս. Մոսկալենկոյին, Բ. Մ. Շապոշնիկովին, Ի. Դ. Չեռնյախովսկուն, Վ. Ի. Չույկովին, Ի. Ե. Պետրովին, Պ. Ս. Ռիբալկոյին, Կ. Կ. Ռոկոսովսկուն, Վ. Դ. Սոկոլովսկուն, Ա. Մ. Վասիլևսկուն, Ն. Ֆ. Վատուտինին, Ն. Ն. Վորոնովին, Կ. Ե. Վորոշիլովին, Ս. Կ. Տիմոշենկոյին, Ֆ. Ի. Տոլբուխինին, Ֆ. Ս. Օկտյաբրսկուն և ուրիշների։

Ֆաշիզմի դեմ դաժան գոտեմարտում բանակի ու նավատորմի զինվորները, ժողովրդական աշխարհազորի մարտիկները դրսևորեցին անձնուրաց նվիրվածություն կուսակցությանն ու ժողովրդին, սեր՝ հայրենիքի հանդեպ, մասսայական հերոսություն։ Պատերազմի ընթացքում ՍՍՀՄ-ի շքանշաններով ու մեդալներով պարգևատրվեցին ավելի քան 7 մլն զինվորներ, նավաստիներ, սերժանտներ, ավագներ, սպաներ, գեներալներ ու ծովակալներ՝ մեր մեծ երկրի բոլոր ազգերի ու ազգությունների ներկայացուցիչները։ Պատերազմի տարեգրության մեջ դրոշմված են սովետական հայրենասեր զինվորների հարյուր հազարավոր քաջագործություններ, այդ թվում հայրենիքի ազատության համար ինքնազոհության բազմաթիվ օրինակներ։

Սովետական Միության բոլոր ժողովուրդների հետ միասին հայրենիքի պաշտպանության համար ոտքի կանգնեց նաև հայ ժողովուրդը։ Պատերազմի առաջին օրերին հանրապետության գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություններում, հիմնարկություններում և ուսումնական հաստատություններում տեղի ունեցան աշխատավորության միտինգներ, որոնք ցուցադրեցին հայ ժողովրդի համախմբվածությունը կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության շուրջը։ Հանրապետության հազարավոր աշխատավորներ կամավոր մտան կարմիր բանակի շարքերը, առաջինը ռազմաճակատ մեկնեցին կոմունիստներն ու կոմերիտականները։ 1941—1943 թթ. կուսակցական կազմակերպության 36.800 անդամներից ռազմաճակատ մեկնեց ավելի քան 20 հազարը։ Հայաստանի լենինյան կոմերիտմիությունը բանակ ուղարկեց իր անդամներից ավելի քան 70 հազարին։

Հայաստանի հարյուր հազարավոր որդիներ ու դուստրեր, մյուս սովետական ժողովուրդների որդիների ու դուստրերի հետ ուս-ուսի, քաջաբար մարտնչում էին ռազմաճակատներում, մասնակցում պարտիզանական շարժմանը։ Ավելի քան 70 հազար հայ զինվորներ մարտերում ցուցաբերած արիության ու քաջության համար պարգևատրվեցին մարտական շքանշաններով ու մեդալներով, 100 խիզախ հայորդիներ արժանացան Սովետական Միության Հերոսի կոչման, իսկ 27 հայ զինվորներ դարձան փառքի շքանշանի լրիվ ասպետներ։

Հայրենական մեծ պատերազմի տարեգրության մեջ հավերժորեն գրված են փառապանծ մարշալ Հ. Ք. Բաղրամյանի, Սովետական Միության հերոսներ, Սովետական Միության նավատորմի ծովակալ Ի. Ս. Իսակովի, զրահատանկային զորքերի գլխավոր մարշալ Հ. Խ. Բաբաջանյանի, ավիացիայի մարշալ Ս. Ա. Խուդյակովի (Խանփերյանցի), հրետանու գեներալ-գնդապետ Մ. Ն. Պարսեղովի, գեներալ-լեյտենանտ Ս. Ս. Մարտիրոսյանի, գեներալ-մայոր Ա. Գ. Կարապետյանի և հայ ժողովրդի շատ ուրիշ արժանավոր զավակների անունները, զավակներ, որոնցից ավելի քան 60-ը դարձել էին գեներալներ։

Անդրկովկասյան ռազմաճակատում կռվում էին 89-րդ, 409-րդ և 408-րդ հայկական հրաձգային դիվիզիաները։ Կերչի թերակղզում արիաբար մարտնչեցին 390-րդ հայկական դիվիզիայի զինվորները։ Ստալինգրադյան ճակատամարտում փառաբանվեց 76-րդ հայկական լեռնահրաձգային դիվիզիան, որը հետագայում վերակազմվեց որպես 51-րդ գվարդիական դիվիզիա, մարտնչեց Կուրսկի աղեղում, մասնակցեց Բելոռուսիայի ազատագրմանը և իր մարտա-

կան ուղին ավարտեց Մերձբալթիկայում։ Իսկ 89-րդ Թամանյան դիվիզիան հասավ մինչև Բեռլին։

Բելոռուսիայում և Ուկրաինայում, Ղրիմում և Կուբանում, Մերձբալթյան հանրապետություններում և Լենինգրադի մարզում ծավալված պարտիզանական շարժմանը ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների հետ միասին մասնակցում էին շուրջ երկու հազար հայեր։

Հայ ժողովրդի հազարավոր զավակներ իրենց կյանքը զոհաբերեցին հանուն մեր հայրենիքի ազատության ու անկախության։ Գրեթե չկա այնպիսի հայկական ընտանիք, որին դաժան պատերազմի բոցը խանձած չլինի։ Հերոսների անմահ սխրանքը հավերժ կմնա որպես վառ օրինակ սովետական ժողովրդի ներկա և ապագա սերունդների համար։

Ռեակցիոն իմպերիալիստական շրջանների մեղքով ստեղծված արդի միջազգային դրության բարդությունն անհրաժեշտ է դարձնում սովետական մարդկանց զգոնության հետագա բարձրացումը, սոցիալիստական նվաճումների պաշտպանության համար ամեն րոպե զենքը ձեռքին հանդես գալու պատրաստության ուժեղացումը։

ԱՄՆ-ը և ՆԱՏՕ-ի գծով նրա դաշնակիցները չեն հրաժարվում ՍՍՀՄ-ի և Վարշավայի պայմանագրի մյուս երկրների նկատմամբ ռազմական գերազանցության հասնելու իրենց փորձերից։ Միացյալ Նահանգները հետզհետե ավելի են մեծացնում իրենց ռազմական նախապատրաստությունները, մեր երկրի և մյուս սոցիալիստական երկրների շուրջը նորանոր ռազմական բազաներ են ստեղծում, մոլորակի տարբեր ռեգիոններում բորբոքում են ռազմական կոնֆլիկտներ։ Արևմտյան Եվրոպայում շարունակվում է ամերիկյան առաջավոր բազավորման միջոցների՝ «Փերշինգ—2» և թևավոր հրթիռների տեղակայումը։ Խաղաղության գործի համար հատկապես մեծ վտանգ են ներկայացնում տիեզերքի ռազմականացման պլանները, որոնց նպատակն է ԱՄՆ-ին հնարավորություն ընձեռել միջուկային հարված հասցնելու Սովետական Միությանը՝ հույս ունենալով անպատիժ մնալ, ծածկվելով հակահրթիռային «վահանով»։

Կոմունիստական կուսակցությունը, սովետական պետությունը հաստատակամորեն և հետևողական կերպով իրականացնում են խաղաղության լենինյան արտաքին քաղաքականությունը։ Սոցիալիստական մյուս երկրների, ողջ առաջադեմ մարդկության հետ միասին ՍՍՀՄ-ը վճռականորեն պայքարում է ընդդեմ միջուկային աղետի, ընդդեմ ամեն մի՝ թե՛ երկրային, թե՛ «աստղային» պատերազմի, հանուն սպառազինությունների մրցավազքի դադարեցման, միջուկային զենքի սահմանափակման, կրճատման, իսկ այնուհետև սպառազինությունների զինանոցից դրա լրիվ վերացման, տիեզերքի ռազմականացումը կանխելու համար։

Անդուլ կերպով պայքարելով հանուն խաղաղության՝ մեր երկիրը միևնույն ժամանակ ստիպված է մտածել իր պաշտպանունակության ամրապնդման, զինված ուժերի մարտական հզորությունն ու մարտական պատրաստականությունը պատշաճ բարձրության վրա պահելու մասին։

ՍՄԿԿ-ի անդուլ հոգատարության, սովետական մարդկանց անձնուրաց աշխատանքի շնորհիվ մեր զինված ուժերը մեծ մարտական պոտենցիալ ունեն։ Նրանց հզորության մեջ մարմնավորված են հուժկու արտադրողական ուժերը, գիտատեխնիկական նվաճումները, մեր հասարակության սոցիալ-քաղաքական և գաղափարական միասնությունը, ՍՍՀՄ եղբայրական ժողովուրդների ամուր, անխախտ բարեկամությունը։ Սովետական բանակն ու ռազմածովային նավատորմը հագեցված են առաջնակարգ ռազմական տեխնիկայով ու զենքով, համալրված են կուսակցության գործին ու սոցիալիստական հայրենիքին անձնուրացորեն նվիրված անձնակազմով, բարձր պատրաստականություն ունեցող սպայական կադրերով, ունեն անհրաժեշտ ամեն ինչ՝ իրենց առջև դրված խնդիրները հաջողությամբ լուծելու համար։

Բանակի և նավատորմի ցեմենտող ուժը կուսակցական կազմակերպություններն են։ Նրանք հետևողականորեն աշխատում են, որպեսզի հաջողությամբ կատարեն կուսակցության XXVI համագումարի և նրան հաջորդած



պլենումների որոշումները, մարտական պատրաստականության բարձրացման առումով զինված ուժերի առջև դրված խնդիրները։

Կոմունիստների հուսալի օգնականն են ՀամԼԿԵՄ կազմակերպությունները։ Կոմերիտականները կազմում են զինված ուժերի անձնակազմի գերակշիռ մեծամասնությունը։ Բանակային կոմերիտմիության համար չկա ավելի պատասխանատու պարտականություն և խնդիր, քան զինվորական գործին վարպետորեն տիրապետելու, զինվորական պարտքն օրինակելի կատարելու համար երիտասարդության ուժերը, եռանդն ու կամքը մոբիլիզացնելը։

Կազմակերպելով քաղդաստիարակչական աշխատանքը, հրամանատարները, քաղմարմինները, կուսակցական ու կոմերիտական կազմակերպությունները մոբիլիզացնում են զինվորներին՝ մարտական կատարելագործման, զինվորական կարգապահության և կարգուկանոնի ամրապնդման գործում նոր բնագծերի հասնելու համար։ Նրանք անձնակազմին դաստիարակում են մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարներով, կոմունիստական անսասան համոզվածության, սովետական հայրենասիրության, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, բանակային ամուր ընկերասիրության ոգով։

Զինվորների շրջանում դաստիարակչական աշխատանքում լայնորեն օգտագործվում են մեր բանակի մարտական ավանդույթները։ Բանակային երիտասարդության արդի սերունդն արժանավայել կերպով է շարունակում հայրերի գործը, սրբորեն կատարում զինվորական երդման պահանջները, նրա համար թանկ են զինված ուժերի պատիվն ու մարտական փառքը, իր պատիվը, զինվորական կոչման պատիվը։

Ավանդույթներին հավատարմությունը դաստիարակվում է ողջ բանակային ապրելակերպով, օրինակելի ներքին կարգուկանոնով, զորքերի հստակորեն կազմակերպված ծառայությամբ։ Ոչ քիչ չափով դրան նպաստում է զինվորական երդում ընդունելու, զորամասի մարտական դրոշի դուրս բերման և այլ զինվորական արարողությունների անխախտ պահպանումը։ Այս ամենը մարդկանց, նրանց զգացմունքների, գիտակցության վրա հուզական մեծ ներգործություն է ունենում։ Բանակայինները հոգեկան վերելք են ապրում, ավելի սուր կերպով են անձնապես հաղորդակից զգում իրենց համագնդեցիների հերոսական գործերին, ձգտում են իրենց մարտական աշխատանքով, մարտական վարպետությամբ բազմապատկել նրանց փառապանծ մեծագործությունները։

Զինված ուժերի մարտական ավանդույթների ոգով անձնակազմին դաստիարակելու փորձված միջոց է հանդիպումը Հայրենական մեծ պատերազմի վետերանների հետ։ Հայրենիքի այսօրվա պաշտպանների համար նրանք սոցիալիստական հայրենիքին հավատարմորեն ծառայելու, զինվորական, հայրենասիրական, ինտերնացիոնալ պարտքի կատարման օրինակ են։ Զինվորները ձգտում են լինել ավագ սերունդների մարտական փառքի հավատարիմ ժառանգորդները, զինվորական պարտքի օրինակելի կատարումով բազմապատկել ու զարգացնել մարտական ավանդույթները, մշտապես պատրաստ լինել կուսակցության առաջին իսկ կանչով հմտորեն, արժանապատվությամբ ու նվիրվածությամբ, չխնայելով սեփական արյունն ու կյանքը, պաշտպանելու սովետական հայրենիքը։

Սովետական ժողովուրդը կարող է վստահ լինել, որ նրա սոցիալիստական նվաճումները, խաղաղ ստեղծագործ աշխատանքը, պետության սուվերենությունն ու տերիտորիալ ամբողջականությունը հուսալի պաշտպանության տակ են։ Ինչպես նշեց ՍՄԿԿ Կենտկոմի 1985 թվականի մարտյան պլենումում ընկեր Մ. Ս. Գորբաչովը, մենք անսասանորեն կընթանանք խաղաղության և խաղաղ գոյակցության լենինյան քաղաքականության կուրսով։ Բարի կամքին Սովետական Միությունը միշտ կպատասխանի բարի կամքով, վստահությանը՝ վստահությամբ։ Բայց բոլորը պետք է իմանան, որ մեր հայրենիքի ու նրա դաշնակիցների շահերը մենք երբեք չենք զոհաբերի։

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԸ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ

**Վ. ՄՈՒՐԱԴՅԱՆ**
Պատմական գիտությունների դոկտոր

ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ, զինված մարքսիզմ-լենինիզմի տեսությամբ, հեղափոխական պայքարի և սոցիալիստական շինարարության գործում սովետական բազմազգ ժողովրդին ղեկավարելու ստեղծարար գործունեության մեծ փորձով, մեր երկրի վրա ֆաշիստական Գերմանիայի հարձակման առաջին իսկ օրվանից ստանձնեց հայրենիքի ճակատագրի համար պատասխանատվության ողջ ծանրությունը և տիտանական աշխատանք ծավալեց՝ կազմակերպելով նրա զինված պաշտպանությունը։

Մշակելով գերմանաֆաշիստական զավթիչների դեմ մղվող պայքարի ծրագիրը՝ կուսակցությունն առաջ քաշեց «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար» մարտական լոզունգը։ ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և Ժողկոմխորհի հունիսի 30-ի որոշմամբ ստեղծվեց Պաշտպանության պետական կոմիտե, որն իր ձեռքում կենտրոնացրեց ողջ իշխանությունը երկրում։

Պատերազմի տարիներին ՀամԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեի, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտրոնական կոմիտեների, երկրկոմների, մարզկոմների, բոլոր կուսակցական կազմակերպությունների գործունեությանը բնորոշ էին գերօպերատիվությունն ու նպատակասլացությունը, խստագույն կարգապահությունը, ծագող խնդիրների լուծման առավել նպատակահարմար ուղիներն արագ գտնելու կարողությունը։ Դրանում նոր ուժով դրսևորվեց կուսակցության կազմակերպական կառուցվածքի ճկունությունը։ Ռազմաճակատում և թիկունքում կուսակցությունը հանդես եկավ որպես միասնական, մոբիլիզացնող և ուղղություն տվող ուժ։

Գերմանաֆաշիստական զավթիչների դեմ համաժողովրդական պայքարի՝ կուսակցության մշակած ծրագրի հաջող իրականացման գործում հսկայական էր նրա ազգային ջոկատների դերը։ Պատերազմի սկզբից ևեթ Հայաստանի կոմկուսը հանդես եկավ որպես ողջ հայ ժողովրդի, այդ թվում սփյուռքահայության առաջադիմական խավերի կազմակերպող և ոգեշնչող ուժ։ Բարձր գնահատելով հայ ժողովրդի սովետական ջերմ հայրենասիրությունը և շեշտելով նրա ատելությունը ֆաշիստական բարբարոսների և նրանց նախորդների նկատմամբ՝ «Պրավդա» թերթը «Հայ ժողովուրդը Սովետական Միության ազատագրական պատերազմի մարտական մասնակիցն է» առաջնորդող հոդվածում գրել է. «... Հայ ժողովուրդը, ինչպես և Սովետական Միության բոլոր մյուս ազատ և իրավահավասար ժողովուրդները, մեր երկրի վրա կախված մահացու վտանգն ընկալեց առավել խորությամբ, որովհետև իր բազմադարյան պատմության ընթացքում մի անգամ չէ, որ ենթարկվել է օտար բռնադատիչների հարձակմանը։ Նա գիտե՝ ինչ բան է ջարդը, կոտորածը, սովը, բռնությունը։ Հայ ժողովուրդը չի մոռացել արյունարբու Հիտլերի նախորդի՝ Վիլհելմ կայզե-



րի կազմակերպած հայերի ֆիզիկական բնաջնջումը առաջին իմպերիալիստական պատերազմի տարիներին։

Ուստի և, երբ բռնկվեց Սովետական Միության դեմ մարդակեր Հիտլերի սանձազերծած արյունահեղ պատերազմը, ողջ հայ ժողովուրդը մեկ մարդու պես ոտքի ելավ՝ պաշտպանելու հայրենիքը։ Սովետական Միության դեմ ուխտադրուժ, ավազակային հարձակման լուրը հարկադրեց զգաստանալ նաև հայ ժողովրդի՝ ՍՍՀՄ սահմաններից դուրս ապրող զավակներին։ Նրանց ողջ համակրանքը, ողջ կարեկցանքը Սովետական Միության կողմն է» («Правда», 25 օգոստոսի, 1941 թ.)։

Հայաստանի կոմկուսը պատերազմի առաջին իսկ օրվանից ծավալեց կազմակերպչական, ռազմամոբիլիզացիոն, ռազմատնտեսական և գաղափարաքաղաքական եռուն աշխատանք՝ մոբիլիզացնելու հանրապետության բոլոր ուժերը թշնամուն ջախջախելու համար։ Պատերազմի սկսվելու կապակցությամբ սովետական կառավարության՝ 1941 թվականի հունիսի 22-ին ռադիոյով արած հայտարարությունը հանրապետության բոլոր աշխատավորներին հասցնելու նպատակով ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոն նույն օրն իսկ որոշում ընդունեց հայտարարության տեքստով հրապարակել հատուկ թերթիկներ՝ հայերեն, ռուսերեն և ադրբեջաներեն[1]։ Թերթիկներն ուղարկվեցին հանրապետության բոլոր շրջաններն ու քաղաքները։ Հաջորդ օրը՝ հունիսի 23-ին, Հայաստանի կոմկուսի Կենտկոմը որոշում ընդունեց կոմունիստներին ռազմաճակատ մոբիլիզացնելու մասին և միջոցառումներ մշակեց մոբիլիզացիան կազմակերպված անցկացնելու համար։ Հունիսի 29-ին, քննարկելով Հայկական ՍՍՀ Ժողկոմխորհի նախագահ Ա. Փիրույանի զեկուցումը, Կենտկոմը գոհունակությամբ նշեց մոբիլիզացման առաջադրանքների կատարման հաջող ընթացքը։

Արտակարգ դժվարին և բարդ իրադրության մեջ կուսակցությունը և նրա բոլոր ազգային ջոկատները ներդրեցին հիրավի հերոսական ջանքեր՝ կարմիր բանակը ամրապնդելու, էկոնոմիկան ռազմական ձևով վերակառուցելու և երկիրը միասնական ռազմական ճամբարի վերածելու համար։

ՊԱՏԵՐԱԶՄԻ ԱՌԱՋԻՆ ԻՍԿ ՕՐԵՐԻՑ լայն թափ ստացավ Հայաստանի կոմկուսի ռազմամոբիլիզացիոն աշխատանքը։ Հայրենական պատերազմի առաջին փուլում Հայաստանի կոմկուսի գործունեության նպատակն էր կազմակերպված անցկացնել պահեստայինների մոբիլիզացիան, կազմավորել նոր դիվիզիաներ ու զորամասեր, այդ թվում՝ ազգային միավորումներ, ստեղծել ժողովրդական աշխարհազորայինների, կործանիչ ջոկատներ ու գումարտակներ, կազմակերպել զորակոչիկների համընդհանուր ուսուցումը, օդաչուներ, տանկիստներ, ականանետայիններ, գնդացրորդներ և ռազմական այլ մասնագետներ պատրաստել կոմերիտական-երիտասարդական հատուկ ստորաբաժանումներում և ռազմակամավորական կազմակերպություններում։ Կոմկուսը մոբիլիզացնում և զինվորական հրամանատարությանն էր տրամադրում ավտոմոբիլային և կենդանաքարշ տրանսպորտը, զինվորական հրամանատարությանն օգնում բանվորական ուժով և ավտոտրանսպորտով՝ պաշտպանական կառույցների շինարարության համար։

Այդ հարցերը Հայաստանի և Անդրկովկասի մյուս հանրապետությունների համար բացառիկ հրատապ նշանակություն ունեին, քանի որ այդ ժամանակ Թուրքիայի և Իրանի կառավարող շրջանները սերտորեն կապված էին ֆաշիստական Գերմանիայի հետ, և բացառված չէր թշնամական ուժերի ներխուժումը մեր երկիր՝ հարավային սահմաններից։ Հատկապես մեծ էր Սովետական Միության դեմ ռազմական գործողությունների սանձազերծման սպառնալիքը այն ժամանակվա Թուրքիայի ռեակցիոն կառավարողների կողմից։ Նրա գլխավոր շտաբը Անդրկովկասի արևմտյան սահմաններում կենտրոնացրել էր 26 դիվիզիա, որոնք պատրաստ էին առաջին իսկ ազդանշանի դեպքում հարված հասցնել Սովետական Անդրկովկասի հանրապետություններին։

Այդ պայմաններում Հայաստանի կոմկուսի ռազմամոբիլիզացիոն գործու-

[1] ՄԼԻ հայկական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 1, ց. 30, գ. 28, թ. 93։

առջև ծառացան պատասխանատու նոր խնդիրներ: Գերմանաֆաշիստա-
կան զորքերը մոտեցել էին Ստալինգրադին ու Կովկասի նախալեռնե-
րին, և այդ հանգամանքը շեշտակի փոխեց իրադրությունը երկրի հա-
րավում: Անդրկովկասյան հանրապետությունները կտրվեցին կենտրոնական
տնտեսական շրջաններից, ընդհատվեց հումքի ու սարքավորումների մատա-
կարարումը, զգալիորեն դժվարացավ Անդրկովկասյան ռազմաճակատին տեխ-
նիկա, զենք, ռազմամթերք, ռազմական գույք և սարքավորում մատակարա-
րելու գործը: 1942 թ. սեպտեմբերի 9-ին ՀամԿ(բ)Կ Կենտրոնական կոմիտեի
քաղբյուրոն, քննարկելով Անդրկովկասի հանրապետությունների համար
ստեղծված վտանգավոր դրությունը, մշակեց մի շարք անհետաձգելի միջոցա-
ռումներ Կովկասի պաշտպանությունը լավագույնս կազմակերպելու նպատա-
կով: ՀամԿ(բ)Կ Կենտկոմի ցուցումով եռանդուն միջոցներ ձեռնարկեցին նաև
Անդրկովկասի հանրապետությունների կուսակցական կազմակերպությունները:
Նրանք արեցին հնարավոր ամեն բան՝ իրենց հանրապետությունները ռազմա-
ճակատին զենք, ռազմամթերք, վառելիք, պարենամթերք, հանդերձանք մա-
տակարարող զինանոցներ դարձնելու համար:
Տարբեր տեսակի զենքերի, ռազմամթերքի և ինտենդանտական գույքի ար-
տադրության կազմակերպման հարցերը քննարկվում էին ՀԿ(բ)Կ Կենտկոմի և
հանրապետության Ժողկոմխորհի նիստերում, որտեղ նշվում էին կոնկրետ մի-
ջոցառումներ կուսակցության և կառավարության որոշումների կատարման
համար: ՀԿ(բ)Կ Կենտկոմը սեպտեմբերի 16-ին հրավիրեց Երևան քաղաքի ար-
դյունաբերական ձեռնարկությունների դիրեկտորների, տեխնիկական ղեկա-
վարների և սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղար-
ների խորհրդակցություն՝ արդյունաբերական ժողովրդական կոմիսարների և
տրեստների ղեկավարների մասնակցությամբ: Քննարկվեց արդյունաբերական
ձեռնարկությունների կողմից արտադրական պլանների կատարման հարցը
Կովկասի ուղղությամբ կարմիր բանակի պաշտպանական մարտերի ծանր
պայմաններում: Պլենումը ժողկոմատների, ձեռնարկությունների ու տնտեսու-
թյունների ղեկավարներից պահանջեց արտադրության մեջ հաստատել երկաթ-
յա կարգապահություն, բոլոր միջոցներով բարձրացնել աշխատանքի արտա-
դրողականությունը:
Նույն ժամանակաշրջանում ՀԿ(բ)Կ Կենտկոմը և հանրապետության Ժող-
կոմխորհը ընդունել են մի շարք որոշումներ ռազմամթերքի և բանակային
գույքի արտադրության ավելացման վերաբերյալ: Այսպես, 1942 թ. սեպտեմ-
բերի 25-ին ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոն որոշում ընդունեց ռազմամթերքի թո-
ղարկման ավելացման միջոցառումների մասին և հաստատեց չորրորդ եռամ-
սյակի պլանը[1]: Այդ իսկ որոշմամբ սահմանվել էին Երևանի Ձերժինսկու ան-
վան, Լենինականի մեխանիկական գործարանների և Կիրովականի քիմիական
կոմբինատի խնդիրները: ՀԿ(բ)Կ Կենտկոմը պարտավորեցրեց կուսակցության
Երևանի և Լենինականի քաղկոմների, Կիրովականի շրջկոմի քարտուղարներին՝
հատուկ հսկողության տակ առնել ռազմամթերք թողարկող ձեռնարկություն-
ների աշխատանքը և գործնական օգնություն ցույց տալ դրանց դիրեկտորնե-
րին[2]: ՀՍՍՀ Ժողկոմխորհը սահմանեց ռազմամթերքի արտադրության ամե-
նամսյա և եռամսյակային պլաններ: Ձեռնարկված միջոցների շնորհիվ ռազ-
մաճակատի պատվերը կատարվեց ժամանակին: Չորրորդ եռամսյակում Հա-
յաստանի ձեռնարկությունները թողարկեցին պլանավորվածից շատ ավելի
ականներ, ձեռքի նռնակներ և ռազմամթերքի այլ տեսակներ: 1942 թ. հոկտեմ-
բերին Երևանում անցան ռազմական մեքենաների պատրաստման, հավաքման
ու նորոգման ամբողջական ցիկլին:

ՀԱՅԱՍՏԱՆԻ, ՎՐԱՍՏԱՆԻ և ԱԴՐԲԵՋԱՆԻ էկոնոմիկայի առջև ծառացած
շատ բարդ խնդիրներ լուծվում էին երեք հանրապետությունների կուսակցա-
կան, սովետական և տնտեսական մարմինների համատեղ ջանքերով: Նրանց

1. ՄԼԻ հայկական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 1, ց. 31, գ. 27, թթ. 153—155:
2. Նույն տեղը:



տնտեսական սերտ համագործակցությունն անգնահատելի դեր խաղաց այդ
հանրապետություններին առաջադրված խնդիրների լուծման գործում: ՀԿ(բ)Կ
Կենտկոմը և հանրապետության Ժողկոմխորհը գործարար կերպով քննարկում
էին եղբայրական հանրապետությունների բոլոր պատվերներին առնչվող հար-
ցերը և հնարավորության սահմաններում ապահովում դրանց կատարումը:
Այսպես, 1942 թ. մարտի 30-ին կուսակցության Ադրբեջանի Կենտկոմը ՀԿ(բ)Կ
Կենտկոմին նամակ ուղարկեց, որում ասված էր, որ հանրապետության նավ-
թարդյունաբերությունը փայլարկիչ ռետինի, ծծմբաթթվի, քլորային ալյումինի
մեծ կարիք ունի, որոնց անբավարարությունը վտանգի տակ է դնում Պաշտ-
պանության պետական կոմիտեի առաջադրանքների կատարումը նավթի ար-
դյունահանման և նավթամթերքների արտադրության գործում: Նամակն ան-
միջապես քննարկվեց ՀԿ(բ)Կ Կենտկոմի բյուրոյում, և ձեռնարկվեցին բոլոր
անհրաժեշտ միջոցները՝ Ադրբեջանի նավթարդյունաբերությունը նշված արժե-
քավոր նյութերով ապահովելու համար: ՀԿ(բ)Կ Կենտկոմը, հաշվի առնելով
հանրապետության սահմանափակ հնարավորությունները, իր հերթին խնդրեց
օգնություն ցույց տալ մետաղի և սարքավորումների ձեռքբերման գործում:
Ադրբեջանի Կ(բ)Կ Կենտկոմը, պատասխան նամակում օգնության համար շնոր-
հակալություն հայտնելով ՀԿ(բ)Կ Կենտկոմին, նրան իրազեկ պահեց, որ Սո-
վետական Հայաստանին անհրաժեշտ սարքավորումների արտադրության պատ-
վերները կկատարվեն Ադրբեջանի նավթակոմբինատի մեքենաշինական գործա-
րաններում[1]: Մեկուկես-երկու ամսվա ընթացքում Հայաստանի քիմիական ար-
դյունաբերության արտադրանքի կարևոր տեսակներն սկսեցին առաքել Ադրբե-
ջանի նավթակոմբինատին:
Եղբայրական հանրապետությունների միջև գործարար համագործակցու-
թյան նման օրինակներ շատ կարելի է բերել: 1942 թ. նոյեմբերի 10-ին Վրաս-
տանի կոմկուսի Կենտկոմը Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քար-
տուղար Գ. Հարությունյանին հղեց մի նամակ, որտեղ ասված էր. «Մոնոքրո-
մատ չունենալու պատճառով Վրացական ՍՍՀ-ի թեթև արդյունաբերության
ժողկոմատի կաշվե գործարանները և կոշիկի ֆաբրիկաները ի վիճակի չեն կա-
տարելու հատուկ պատվերները: Խնդրում ենք պարտավորեցնել Հայկական ՍՍՀ
թեթև արդյունաբերության ժողկոմատին՝ ապահովելու դրա առաքումը Վրա-
ցական ՍՍՀ թեթև արդյունաբերությանը...»[2]: Մի քանի օր անց՝ 1942 թվականի
նոյեմբերի 17-ին, ՀԿ(բ)Կ Կենտկոմը Վրաստանի Կ(բ)Կ Կենտկոմին հայտնեց.
«Երևանի քրոմնիկային գործարանը չորրորդ եռամսյակում կթողարկի 120 տոն-
նա մոնոքրոմատ: Հայաստանի թեթև արդյունաբերության ժողկոմատին առա-
ջարկված է մոնոքրոմատի նշված քանակությունից Վրաստանի թեթև արդյու-
նաբերության ժողկոմատին հատկացնել 31 տոննա, Ադրբեջանի թեթև արդյու-
նաբերության ժողկոմատին՝ 24 տոննա, ռազմական գերատեսչությանը՝ 33
տոննա և Հայաստանի թեթև արդյունաբերության ձեռնարկություններին՝ 32
տոննա...»[3]:
Բազմաթիվ վավերագրերը վկայում են, որ Կովկասի համար մղվող բուռն
մարտերի ընթացքում ռազմաճակատային և բանակային նորոգման բազանե-
րը, այս կամ այն նյութերի կարիքն ունենալիս, դիմում էին անդրկովկասյան
հանրապետությունների կոմկուսների կենտրոնական կոմիտեներին ու կառա-
վարություններին: Այսպես, 1943 թ. հունվարի 9-ի նամակով, Անդրկովկաս-
յան ռազմաճակատի զորքերի հյուսիսային խմբի ռազմական խորհուրդը նա-
մակով դիմեց ՀԿ(բ)Կ Կենտկոմին. «Մարտական մեքենաների, տանկերի և
ինքնաթիռների նորոգման գործը, հատկապես Անդրկովկասյան ռազմաճակատի
հյուսիսային խմբի զորամասերի առաջավոր գծում, սաստիկ բարդացել է կալ-
ցիումի կարբիդ չունենալու պատճառով...

1 ՄԼԻ հայկական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 1, ց. 31, գ. 33, թ. 50:
2. Նույն տեղը, թ. 30:
3 Նույն տեղը, թ. 19:

# ԹԻԿՈՒՆՔԻ ՍԽՐԱՆՔԸ

**Մ. ԱԴՈՆՑ**
Տնտեսական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՄԵԾ ՀԱՂԹԱՆԱԿԻ 40-ԱՄՅԱ հոբելյանի տարում, սովետական մարդիկ կրկին ու կրկին իրենց երախտիքն են հայտնում և՛ նրանց, ովքեր ահեղ մարտերում ջախջախեցին ֆաշիստական ագրեսորին, և՛ նրանց, ովքեր կռեցին հայրենիքի զենքը՝ մաքառելով մեկ միասնական կոչի ներքո՝ «Ամեն ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի համար»։ Այս խոսքերն արտահայտում էին բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության խոհերն ու զգացումները, պայքարի կոչում հանուն հայրենիքի պատվի ու անկախության։

Սովետական ժողովրդի ջանքերով նախապատերազմյան հնգամյակների տարիներին մեր երկրում ստեղծվեց հզոր արտադրական ու գիտատեխնիկական պոտենցիալ՝ առաջավոր տեխնիկայով զինված բազմաճյուղ արդյունաբերություն, խոշոր սոցիալիստական գյուղատնտեսություն, ժամանակակից տրանսպորտ, ինչպես նաև բարձր կուլտուրա ու մասնագիտական որակավորում ունեցող կադրեր, որոնք ի վիճակի էին արագ յուրացնելու և օգտագործելու նորագույն ռազմական տեխնիկան։

1940 թվականին, 1928 թվականի համեմատությամբ, մեր երկրի ազգային եկամուտն աճեց 5 անգամ, ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերը՝ 2,4 անգամ։ Նախապատերազմյան երեք հնգամյակների ընթացքում երկրում կառուցվեց ու շահագործման հանձնվեց ավելի քան 9.000 արդյունաբերական ձեռնարկություն։ Առաջընթաց տեմպերով զարգացավ մեքենաշինությունը։ Եթե 1913 թ. համեմատությամբ 1940 թ. ամբողջ արդյունաբերության ծավալն աճեց 7,7 անգամ, ապա նույն ժամանակամիջոցում մեքենաշինության արտադրանքն ավելացավ 30 անգամ, իսկ էլեկտրաէներգիայի արտադրությունը՝ 24 անգամ։

Հայրենական մեծ պատերազմի նախօրյակին Սովետական Միությունն արդյունաբերական արտադրանքի ծավալով արդեն աշխարհում գրավում էր երկրորդ տեղը, իսկ Եվրոպայում՝ առաջին։ Արմատական տեղաշարժեր կատարվեցին երկրի արտադրողական ուժերի տեղաբաշխման բնագավառում, որը նշանակալի դեր ունեցավ հայրենիքի պաշտպանունակության ամրապնդման համար։ Արդյունաբերական խոշոր կենտրոններ ստեղծվեցին երկրի արևելյան շրջաններում, ինչպես նաև նախկինում տնտեսապես թույլ զարգացած հանրապետություններում։

Միութենական մյուս հանրապետությունների հետ միասին նախապատերազմյան հնգամյակների տարիներին արագ տնտեսական վերելք ապրեց նաև Սովետական Հայաստանը։ 1928—1940 թթ. Հայկական ՍՍՀ-ում կառուցվեցին մոտ 100 խոշոր արդյունաբերական ձեռնարկություններ, որոնց թվում՝ Կիրովականի և Ալավերդու քիմիական կոմբինատները, Երևանի Կիրովի անվան գործարանը, Քանաքեռի, Ձորագետի, Շաքիի և Մեղրու հիդրոէլեկտրակայանները, Ալավերդու պղնձաձուլական ու Ղափանի ֆլոտացիոն, Արարատի ցեմենտի գործարանները, Երևանի փայտամշակման կոմբինատը և այլն։



Նախապատերազմյան հնգամյակների տարիներին ստեղծվեցին արդյունաբերության մի շարք նոր ճյուղեր՝ մեքենաշինական, քիմիական, տեքստիլ արդյունաբերություն, պահածոների արտադրություն և այլն։ Հանրապետության ժողովրդական տնտեսությունը ստացավ հուսալի էներգետիկ բազա։ 1928 թ. համեմատությամբ, 1940 թ. էլեկտրաէներգիայի արտադրությունն աճեց 19,2 անգամ։ Այդ նույն ժամանակամիջոցում ՀՍՍՀ արդյունաբերության համախառն արտադրանքն աճեց 8,7 անգամ, այդ թվում խոշոր արդյունաբերության արտադրանքը՝ 18, մեքենաշինության արտադրանքը՝ 16,6 անգամ։

Խոշոր տեղաշարժեր կատարվեցին գյուղատնտեսության մեջ։ Առաջին հնգամյակի տարիներին հիմնականում ավարտվեց գյուղացիական տնտեսությունների կոլեկտիվացումը։ Եթե 1928 թ. հանրապետությունում գործում էին 55 կոլտնտեսություն, ապա նրանց թիվը 1932 թ. հասավ 892-ի, իսկ 1940 թ.՝ 1.029-ի։

Կոլտնտեսությունների կազմակերպման, նրանց տնտեսական ամրապնդման գործում մեծ դեր խաղացին մեքենատրակտորային կայանները։ Մեզ մոտ առաջին մեքենատրակտորային կայանը կազմակերպվել է 1930 թ. Հոկտեմբերյանում, դրանց թիվը 1932 թ. հասավ 7-ի, իսկ 1940 թ.՝ 33-ի։

Գյուղի կոլեկտիվացման և կատարված խոշոր կապիտալ ներդրումների շնորհիվ հիմնովին փոխվեց գյուղատնտեսության նյութատեխնիկական բազան։

Չնայած նրան, որ Սովետական Միությունը սոցիալիզմի մեծ առավելությունների շնորհիվ պատմական կարճ ժամանակամիջոցում հաղթահարեց երկրի տեխնիկատնտեսական հետամնացությունը և արդեն երրորդ հնգամյակի վերջում արդյունաբերության և գյուղատնտեսության արտադրանքի ծավալով Եվրոպայում գրավեց առաջին տեղը, բայց և այնպես Հայրենական պատերազմի սկզբին առկա նյութական միջոցների քանակով մենք զիջում էինք ֆաշիստական Գերմանիային։

Հիտլերյան Գերմանիան վաղուց էր իր տնտեսությունը փոխադրել ռազմական ռելսերի վրա և յուրացրել ժամանակակից զենքի ու զինանյութերի բոլոր տեսակների մասսայական արտադրությունը։ Բացի դրանից, նա զավթել ու օգտագործում էր գրեթե բոլոր եվրոպական երկրների նյութական միջոցները։ Գերմանիայի և նրա դաշնակից ու կախյալ երկրների ռեսուրսները միասին վերցրած 1942 թվականին գրեթե կրկնակի գերազանցում էին Սովետական Միության ունեցած միջոցները։ ՍՍՀՄ-ը միայն պատերազմի նախօրյակին սկսեց զենքի նոր տեսակների մասսայական արտադրությունը։

Պատերազմի տարիներին երկրի արդյունաբերությունն աշխատում էր հիմնականում ռազմաճակատի պահանջների բավարարման համար։ Եթե 1940 թ. բանակի համար թողարկվող արտադրանքը կազմում էր արդյունաբերության ամբողջ արտադրանքի 26 տոկոսը, ապա նրա տեսակարար կշիռը 1941 թվականին հասավ մոտ 68 տոկոսի։ Ռազմական նշանակություն ունեցող արդյունաբերության անշեղ ու հզոր աճը շարունակվեց մինչև պատերազմի վերջը։

Հենց պատերազմի սկզբից միութենական բոլոր հանրապետություններում, այդ թվում նաև Սովետական Հայաստանում, ժողովրդական տնտեսությունը արագորեն վերակառուցվեց ռազմական իրադրությանը համապատասխան։ Փոփոխվեցին նաև տնտեսության կառավարման, հատկապես պլանավորման ձևերն ու մեթոդները։ Անհրաժեշտ եղավ ուժեղացնել ուղղակի դիրեկտիվ առաջադրանքների և տնտեսական կառավարման վարչական մեթոդների դերը՝ միաժամանակ խիստ հսկողություն սահմանելով պլանային առաջադրանքների կատարման ընթացքի վրա։ Զորահավաքի հետևանքով առաջացած աշխատուժի պակասը լրացնելու նպատակով զանգվածային կարգով արտադրության մեջ ներգրավվեցին կանայք ու դեռահասները։

Արմատական փոփոխություններ կատարվեցին ազգային եկամտի վերաբաշխման մեջ։ Նյութական և այլ միջոցները առաջին հերթին օգտագործվում էին ռազմաճակատի պահանջների բավարարման համար։ Ամենուրեք մտցվեց խնայողության խիստ ռեժիմ։ Պատերազմի լարված պայմաններում ժողովրդական տնտեսության մեջ մասնակի անհամամասնություններն անխուսափելի

էին, սակայն դրանք ժամանակին շտկվում էին պետական պլանավորման օպերատիվության և ժողովրդական տնտեսության կազմակերպված գործունեության շնորհիվ։

Ինչպես մեր բազմազգ երկրի բոլոր ժողովուրդները, հայ ժողովուրդը ևս, իր բոլոր ուժերը նվիրեց մեր հայրենիքը ֆաշիստական զավթիչներից ազատագրելու և հիտլերյան Գերմանիայի վերջնական ու անվերապահ պարտությունն ապահովելու գործին։

Մեր հայրենիքի վրա հիտլերյան Գերմանիայի ուխտադրուժ հարձակումից անմիջապես հետո Սովետական Հայաստանի քաղաքներում ու շրջաններում, արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում և սովխոզներում, ուսումնական հաստատություններում, մշակույթի ու գիտական օջախներում միտինգներ տեղի ունեցան, որոնցում աշխատավորներն իրենց ցասումն էին արտահայտում ֆաշիստական զավթիչների դեմ ու պարտավորություններստանձնում ռազմաճակատի պահանջները լրիվ բավարարելու համար։

Բազմաթիվ աշխատողներ, տղամարդիկ ու կանայք, դիմում էին զինկոմիսարիատներին՝ կամավոր կերպով իրենց գործող բանակ ուղարկելու խնդրանքով։ Երևանի Ս. Մ. Կիրովի անվան կոմբինատի աշխատողների 1941 թվականի հունիսի 23-ի միտինգի բանաձևում գրված է. «Մենք՝ Ս. Մ. Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի կոմբինատի բոլոր աշխատողներս, մի անգամ ևս հավաստիացնում ենք հզոր սովետական կառավարությանը, որ ավելի կուռ կհամախմբվենք մեր սովետական կառավարության ու բոլշևիկյան կուսակցության շուրջը և առաջին իսկ կանչին զենքը ձեռքներիս կլրացնենք բանվորագյուղացիական կարմիր բանակի շարքերը և մահացու հարված կհասցնենք գերմանական ֆաշիզմի սանձարձակ գիշատիչներին...»։ Նման որոշումներ ընդունվել են հանրապետության շատ ձեռնարկությունների կոլեկտիվների ժողովներում։

Հայաստանի ժողովրդական տնտեսության վերակառուցումը, պատերազմի պայմաններին համապատասխան, նույնպես կատարվեց պլանաչափորեն։ Հայաստանի կառավարությունը պատերազմի առաջին իսկ օրերին վերանայեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի և, առաջին հերթին, արդյունաբերության պլանները։ Հաստատվեց արդյունաբերական արտադրանքի թողարկման տեսականու նոր պլան։ Պատերազմի պայմաններում ռազմական նշանակություն ունեին ոչ միայն ժողովրդական տնտեսության այն ճյուղերը, որոնք զենք ու զինամթերք էին տալիս ռազմաճակատին, այլև գրեթե մնացած բոլոր ճյուղերը՝ սկսած էներգետիկայից և վերջացրած գյուղատնտեսությամբ ու տրանսպորտով։

Եթե երկրի մասշտաբով պատերազմի առաջին երկու տարում արդյունաբերության ու գյուղատնտեսության արտադրանքի ծավալը որոշ չափով կրճատվեց, ապա հանրապետությունում հասարակական ամբողջական արդյունքի ծավալը գրեթե մնաց անփոփոխ։

Պատերազմի առաջին տարիներին Անդրկովկասը Միության մյուս շրջաններից վառելիք ստանալու հնարավորություններից գրեթե ամբողջապես զրկվեց։ Ադրբեջանը և Վրաստանը ունեին վառելիքի իրենց սեփական աղբյուրները, իսկ Հայաստանը դրանցից զուրկ էր, և ժողովրդական տնտեսության էներգետիկ պահանջները գերազանցապես պետք է բավարարվեին հիդրոէլեկտրակայանների տված էներգիայով։

Նախահեղափոխական Հայաստանում գործում էին մի քանի մանր էլեկտրակայաններ։ Էլեկտրաէներգիայի ընդհանուր արտադրանքը 1913 թ. կազմել է 5,1 մլն կվտ–ժամ։ Սովետական իշխանության տարիներին կառուցվեցին մի շարք խոշոր հիդրոէլեկտրակայաններ։ 1940 թ. Հայկական ՍՍՀ-ում արտադրվեց 395,3 մլն կվտ–ժամ էլեկտրաէներգիա։ Հայրենական մեծ պատերազմի տարիներին շարունակվեց հիդրոէլեկտրակայանների շինարարությունը։ 1944 թվականին գործարկվեց Քանաքեռգէսի վերջին ագրեգատը, իսկ Սևանի ստորգետնյա հիդրոէլեկտրակայանի շինարարությունը շարունակվում էր։ 1945 թ.



հանրապետությունում էլեկտրաէներգիայի արտադրությունը հասավ 450 մլն կվտ–ժամի։

Հայաստանի արդյունաբերության հին ճյուղերից մեկի՝ գունավոր մետալուրգիայի, արտադրանքի մեծ մասը պատերազմի տարիներին օգտագործվում էր ռազմական արդյունաբերության մեջ։

Պղնձի ձուլումը բարձր մակարդակի հասավ պատերազմի առաջին տարում՝ 1941 թվականին, երբ երկրի պաշտպանության համար խիստ մեծացավ այդ մետաղի պահանջը։ Սակայն որակյալ աշխատուժը բանակ զորակոչվելու, ինչպես և մատակարարման գործում առաջացած մի շարք դժվարությունների հետևանքով մինչև 1943 թվականը պղնձի ձուլումը Հայաստանում որոշ չափով նվազեց։ 1944 թվականից հանրապետության պղնձագործները, հաղթահարելով դժվարությունները, սկսեցին հետևողականորեն ավելացնել արտադրանքի ծավալը։

1940 թվականից որոշ ձեռնարկումներ սկսվեցին հանրապետությունում գունավոր մետալուրգիայի նոր ճյուղերի՝ մոլիբդենի և ալյումինի արտադրություն կազմակերպելու նպատակով։ Սկսվեց Քանաքեռի ալյումինի գործարանի շինարարությունը։ Սակայն պատերազմը ստիպեց 1941 թվականի հուլիսին դադարեցնել գործարանի կառուցումը։ Այդ աշխատանքները վերսկսվեցին 1944—1946 թթ., և 1950 թ. գործարկվեց գործարանի առաջին հերթը։ Կուսակցության Կենտկոմը և ՍՍՀՄ Ժողկոմխորհը 1941 թ. հունվարի 30-ին որոշում ընդունեցին Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի կառուցման մասին։ Կոմբինատի շինարարությունն սկսվեց 1943 թվականին։ Սակայն միայն 1949 թ. այն մեծ թափ ստացավ, և արդեն հաջորդ տարում սկսվեց հանքաքարի հանույթը։ Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի լիարժեք շահագործումը սկսվեց 1953 թ., երբ գործարկվեց կոմբինատի հարստացուցիչ ֆաբրիկան։

Հանրապետության արդյունաբերության կարևոր ճյուղերից մեկը քիմիական արդյունաբերությունն է, որը հիմնականում ստեղծվել էր նախապատերազմյան հնգամյակների տարիներին։ Այդ ճյուղի առաջնեկը կառուցվել է Երևանում դեռևս 1928 թ., որն արտադրում էր կարբիդ-կալցիում։ 1935 թ. այստեղ գործարկվեցին կարբիդ-կալցիումի արտադրության նոր վառարաններ։ 1940 թ. շահագործման հանձնվեց Ս. Մ. Կիրովի անվան սինթետիկ կաուչուկի կոմբինատը։

1933 թ. գործարկվեց Կիրովականի քիմիական կոմբինատը։ Այն սկզբում արտադրում էր կարբիդ-կալցիում, իսկ հետագայում՝ նաև ցիանամիդ, ազոտային պարարտանյութեր, ամոնիակ, ազաթթու, սինթետիկ կորունդ և այլ նյութեր։

Պատերազմի դժվարին պայմաններում մեր երկրի արևմտյան շրջաններից էվակուացված սարքավորումների հիման վրա ստեղծվեց Երևանի ավտոդողերի գործարանը, որը շահագործման հանձնվեց 1943 թվականին։ Ներկայումս այդ գործարանը դարձել է Երևանի խոշոր ձեռնարկություններից մեկը։

Տեխնիկական առաջընթացի, երկրի ռազմական հզորության մեծացման ու տնտեսական ինքնուրույնության ապահովման գործում մեծ է մեքենաշինության դերը։ Նախասովետական Հայաստանում մեքենաշինական գործարաններ չկային, գործում էին միայն մի քանի մետաղամշակման արհեստանոցներ, որոնցում աշխատում էր ընդամենը 152 բանվոր։ Մետաղամշակման արհեստանոցների թիվը 1940 թ. հասավ 135-ի։ Բացի դրանցից գործում էին Երևանի Ձերժինսկու անվան մեխանիկական գործարանները, որոնք կառուցվել էին նախապատերազմյան հնգամյակների տարիներին։ 1938 թ. Հայաստանի մետաղամշակման և մեքենաշինական ձեռնարկություններում արդեն աշխատում էին շուրջ երկու հազար բանվորներ։

1940 թ. սկսվեց Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանի կառուցումը, որը մասնակիորեն շահագործման հանձնվեց 1942 թվականին։

Պատերազմի առաջին իսկ տարիներին մետաղամշակման ու մեքենաշի-

նական արդյունաբերության արտադրանքը նկատելիորեն ավելացավ։ Այդ ընթացքում, երբ հանրապետության արդյունաբերության ամբողջ արտադրանքը որոշ չափով կրճատվել էր, այս ճյուղի արտադրանքն աճեց 70 տոկոսով։ Ձեռնարկությունների մեծ մասը փոխադրվեց ռազմական արտադրանքի թողարկման։ Զենք ու զինամթերք էին արտադրում ոչ միայն մեքենաշինական գործարանները, այլև մետաղամշակման ձեռնարկությունների մեծ մասը։ Կազմակերպվեց ռումբերի, ականների, ականանետների, արկերի և բազմաթիվ այլ տեսակի ռազմամթերքների մասսայական արտադրությունը։ Պատերազմի տարիներին Հայաստանը ռազմաճակատի համար արտադրել է մոտ 300 տեսակի զենք և զինամթերք։

Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի ժողովրդական տնտեսության դերը Կովկասյան ռազմաճակատի պահանջները բավարարելու գործում չափազանց մեծացավ այն բանից հետո, երբ թշնամու զորքերը 1942 թվականի ամռան վերջին ներխուժեցին Հյուսիսային Կովկաս և սեպտեմբեր ամսին ձգտում էին գավթել Կովկասյան լեռնաշղթայի լեռնանցքները՝ Անդրկովկաս ներխուժելու նպատակով։

Այդպիսի պայմաններում Կովկասյան ռազմաճակատի պահանջները գերազանցապես պետք է բավարարեին անդրկովկասյան հանրապետությունները։ Այդ շրջանում Անդրկովկասի գրեթե բոլոր մեքենաշինական գործարանները անցան եռհերթ աշխատանքի։ 1943 թ. մեքենաշինության արտադրանքը Վրացական ՍՍՀ-ում, 1940 թ. համեմատությամբ, աճեց 2,6 անգամ, Ադրբեջանական ՍՍՀ-ում՝ 1,3, Հայկական ՍՍՀ-ում՝ գրեթե 2 անգամ։ Մեքենաշինական ձեռնարկությունների արտադրական պլանները հիմնականում կազմվում էին անդրկովկասյան ռազմաճակատի ռազմական խորհրդի պատվերների համապատասխան։ Ռազմական խորհուրդն Անդրկովկասի երեք հանրապետություններին պատվերներ էր տալիս ըստ եռամսյակների ու ամիսների։

Միայն Երևանի Ձերժինսկու անվան մեքենաշինական գործարանը 1941 թ. արտադրել է 117.700 ավիացիոն ռումբ, 1942 թ.՝ 101.326, 1943 թ.՝ 153.700 ական, 1944 թ.՝ 73.000 ական։ Հայաստանի մեքենաշինական ու մետաղամշակման ձեռնարկությունները 1941—1944 թվականներին արտադրել են 987 հազար ական, արկերի և ռումբերի պատյաններ։ Ռազմաճակատի համար աշխատել են նաև հանրապետության արդյունաբերության մյուս ճյուղերը, առաջին հերթին՝ թեթև և սննդի արդյունաբերությունը։

Պատերազմի տարիներին հանրապետության թեթև արդյունաբերությունը կարողացավ արագորեն վերակառուցվել և հարմարվել պատերազմական պայմաններին՝ հաջողությամբ կատարելով ռազմաճակատի բազմաթիվ պատվերները։ Բանակի համար այն թողարկել է 53 արտադրատեսակ, որոնց թվում՝ 246,2 հազար շինել, 40,9 հազար կիսամուշտակ, 9,5 մլն շապիկ ու վերնաշապիկ և այլն։

1945 թ., 1940 թ. համեմատությամբ, մետաքսե գործվածքեղենի արտադրությունն ավելացավ 2,4, բրդյա գործվածքեղենինը՝ 6 անգամ։ Գորգերի, տրիկոտաժեղենի, բամբակե ու բրդյա գործվածքեղենի և կոշկեղենի արտադրությունը որոշ չափով նվազեց հումքի մատակարարման դժվարությունների պատճառով։

Նախապատերազմյան հնգամյակների տարիներին կառուցվեցին սննդարդյունաբերության բազմաթիվ նոր ձեռնարկություններ, որոնց թվում՝ Լենինականի և Երևանի մսի կոմբինատները, Երևանի ծխախոտի ֆաբրիկան և ֆերմենտացիոն գործարանը, ձեթ-օճառի կոմբինատը, հրուշակեղենի և մակարոնի ֆաբրիկաները, պանրի, յուղի, հացի, ինչպես և գինու նոր գործարաններ։

Պատերազմի տարիներին, հասկանալի պատճառներով, որոշ չափով նվազեց սննդարդյունաբերության արտադրանքի ծավալը։ Արդյունաբերության այդ ճյուղը ևս վերակառուցվեց։ Պատերազմի հենց առաջին օրերից ճյուղի ձեռնարկությունները սկսեցին զգալի քանակությամբ մթերքներ արտադրել ռազմաճակատի համար։ Լենինականի մսի կոմբինատը յուրացրեց մի շարք բժշկական պրեպարատների, պահածոների արդյունաբերությունը՝ մսեղեն պա-



հածոների արտադրությունը։ Ծխախոտի ֆաբրիկան ավելացրեց տուփերով ծխախոտի թողարկումը։ Ձեթ-օճառի արդյունաբերությունն իր սարքավորումը հարմարեցրեց հումքի նոր տեսակների մշակմանը և այլն։ Շարունակվեց սննդի արդյունաբերության նոր ձեռնարկությունների կառուցումը։

Տնտեսական զարգացման բնագավառում մեծ է տրանսպորտի դերը։ Նրա նշանակությունն առավել աճում էր պատերազմի պայմաններում։ Նախապատերազմյան հնգամյակների տարիներին ամբողջովին նորոգվեց լոկոմոտիվային պարկը, երկաթուղին հագեցվեց հզոր շոգեքարշերով, բարձրացավ վագոնների դինամիկ բեռնվածությունը, որի շնորհիվ հանրապետության երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը 1945 թ., 1940 թ. համեմատությամբ, ավելացավ 5,2 անգամ։

Մինչև 1940 թ. Հայկական ՍՍՀ-ում կառուցվեցին նոր երկաթգծեր, որոնք մեծ դեր խաղացին հանրապետության տնտեսական զարգացման գործում։ Ավարտվեց Լենինական—Արթիկ—Պեմզաշեն երկաթուղային ճյուղի կառուցումը (32 կմ), որը հնարավորություն տվեց ընդլայնելու Արթիկի շրջանի շինաքարի հանույթը և փոխադրումը։ Ավարտվեց Ղափան—Մինջևան երկաթուղագծի կառուցումը (39 կմ), որը Ղափանը կապեց երկաթուղային մայրուղուն և նպաստեց այդ շրջանի տնտեսական զարգացմանը, հատկապես պղնձարդյունաբերության վերելքին։ Ավարտվեց Մինջևան—Ջուլֆա երկաթուղու (126 կմ) կառուցումը, որը Երևանն անմիջականորեն կապեց Բաքվի հետ և նպաստեց երկու հարևան հանրապետությունների տնտեսական կապերի ուժեղացմանը։ Պատերազմի տարիներին երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը որոշ չափով նվազեց, բայց նրանում բարձրացավ ռազմաճակատ առաքվող բեռների տեսակարար կշիռը։

Հայրենիքի հանդեպ իրենց պարտքը պատվով կատարեցին սոցիալիստական գյուղատնտեսության աշխատողները։ Պատերազմի պայմաններում գյուղատնտեսության համար ստեղծվել էին չափազանց դժվարին պայմաններ։ Բանակ զորակոչվեց գյուղի աշխատունակ բնակչության և հատկապես որակյալ կադրերի զգալի մասը։ Կոլտնտեսություններն ու սովխոզները բանակին հանձնեցին իրենց արտադրության միջոցների մի զգալի մասը՝ տրակտորները, ավտոմեքենաները, ձիերը։ Բացի այդ, խիստ կրճատվել էր պարարտանյութերի, ինչպես նաև հեղուկ նավթամթերքների մատակարարումը գյուղին։ Դրա հետևանքով չափազանց լարված դրություն ստեղծվեց գյուղում։ Սակայն կուսակցական կազմակերպությունները կոլտնտեսություններում հանրային տնտեսության մեջ աշխատանքի ներգրավեցին գյուղում մնացած բնակչությանը՝ կանանց, ծերերին, անչափահասներին։ Տեղում մնացած բնակչությունն իր անձնվեր աշխատանքով կարողացավ փոխարինել բանակ մեկնածներին։ 1944 թ. գյուղատնտեսության աշխատողների ընդհանուր թվում կանայք կազմում էին 68,3 տոկոսը։

Կոլտնտեսություններում կանանց աշխատանքի ճիշտ կազմակերպումը առաջին հերթին պայմանավորված էր կին կադրերի պատրաստմամբ ու որակավորման բարձրացմամբ։ Այդ նպատակով կատարված մեծ աշխատանքների շնորհիվ պատերազմի տարիներին կին կադրերի թիվը նշանակալիորեն աճեց։ 1945 թ., 1941 թ. համեմատությամբ, կին գյուղատնտեսների և անասնաբույժների թիվը 5,4 անգամ ավելացավ։ Նույն ժամանակամիջոցում կոլտնտեսություններում ղեկավար աշխատանքներում զբաղված կանանց թիվն աճեց 6.1 անգամ։

Չնայած պատերազմի տարիների դժվարին պայմաններին, հանրապետության գյուղատնտեսությունն ի վիճակի եղավ հիմնականում պահպանել բանվորների և ծառայողների պարենային մատակարարման նախապատերազմյան մակարդակը՝ արդյունաբերությանը մատակարարելով անհրաժեշտ հումք և, միաժամանակ, մեծ քանակությամբ գյուղատնտեսական մթերքներ տրամադրելով բանակին։

Այդ տարիներին կոլտնտեսությունների ընդհանուր ցանքատարածությունները ոչ միայն չկրճատվեցին, այլև, ընդհակառակն, ընդարձակվեցին 6,3 տո-

կոսով։ 1941 թ. 433,7 հազար հեկտարից 1945 թ. ցանքատարածությունները հասան 460,7 հազար հեկտարի։ Հատուկ ուշադրություն էր դարձվում պարենային կուլտուրաների ցանքատարածությունների ընդլայնմանը և բերքատվության բարձրացմանը։ 1945 թ., 1940 թ. համեմատությամբ, ցորենի, կարտոֆիլի, բանջարեղենի, շաքարի ճակնդեղի և պտղատու այգիների բերքատվությունը նկատելի չափերով բարձրացավ։ Շարունակվեցին ջրաշինարարական աշխատանքները։ Ոռոգելի հողատարածություններն ընդարձակվեցին 20 հազար հեկտարով։

Պատերազմի տարիներին կոլտնտեսությունները առաջին հերթին կատարում էին պետական մթերումների բոլոր պարտավորությունները։ Կարմիր բանակի օգնության ֆոնդին հանձնվեցին մեծ քանակությամբ հացահատիկ, միս և անասնապահական այլ մթերքներ։ Միայն պատերազմի վերջին երկու տարում հանձնվեց 330 հազար փութ հացահատիկ։

«Հայաստանի կոլտնտեսական» տանկային շարասյան ստեղծման համար կոլտնտեսություններն ու կոլտնտեսականները մուծեցին 46 մլն ռուբլի, «Սովետական Հայաստան» մարտական էսկադրիլիայի համար՝ 21 մլն ռուբլի։ Շատ կոլտնտեսականներ իրենց անձնական խնայողություններից խոշոր գումարներ մուծեցին երկրի պաշտպանության ֆոնդին։

Տնտեսության սոցիալիստական սիստեմը հնարավորություն տվեց պատերազմի ծանր պայմաններում ապահովել բնակչության և գործող բանակի սպասարկումը. այդ տարիներին հանրապետությունում հիվանդանոցային մահճակալների թիվը (առանց հոսպիտալների) 4,1 հազարից հասավ 5,6 հազարի։

Շարունակվում էր ժողովրդական կրթության, գիտության ու մշակույթի զարգացումը։ Դպրոցահասակ երեխաները գրեթե ամբողջովին ընդգրկված էին հանրակրթական դպրոցներում։ Բարձրագույն ուսումնական հաստատությունների թիվը 9-ից հասավ 13-ի։ Բուհերը և տեխնիկումները ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերին ապահովում էին բարձրորակ կադրերով։ 1941—1945 թթ. բուհերի շրջանավարտների թիվը կազմեց 3.300 մարդ, իսկ տեխնիկումներինը՝ 6.400։

Հանրապետության գիտական աշխատողները պատերազմի տարիներին կատարեցին չափազանց կարևոր հետազոտություններ։ Հաշվի առնելով գիտական կադրերի աճը և նրանց բեղմնավոր աշխատանքը՝ ՀամԿ(բ)Կ Կենտկոմը և ՍՍՀՄ Ժողկոմխորհը 1943 թ. նոյեմբերին որոշում ընդունեցին ՍՍՀՄ ԳԱ հայկական մասնաճյուղը գիտությունների ակադեմիայի վերափոխելու մասին։ Պատերազմի տարիներին մեծ, հայրենանվեր աշխատանք տարան նաև հանրապետության գրողները և արվեստի աշխատողները։

Սովետական Միության հաղթանակը Գերմանիայի դեմ մղվող պատերազմում սովետական կարգերի անվիճելի առավելության վառ ապացույցն է։ Այդ փառապանծ հաղթանակն ապահովեցին ոչ միայն մեր քաջարի զինված ուժերը, այլև սովետական թիկունքի անօրինակ սխրանքն ու հայրենասիրությունը։

---

# ՄԻՇՏ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

**Հարցազրույց ՀՍՍՀ սոցիալական ապահովության մինիստր Ռ. ԳԱԼՍՏՅԱՆԻ հետ**

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ռազմաճակատներում միլիոնավոր սովետական մարդիկ կենաց ու մահու կռիվ մղեցին անարգ թշնամու դեմ։ Շատերը մարտի դաշտից վերադարձան հաշմանդամ դարձած, շատ ընտանիքներ մնացին որբ, զրկվեցին կերակրողից...

Սովետական պետությունը, բնականաբար, մշտական հոգատարությամբ և ուշադրությամբ է շրջապատել Հայրենական պատերազմի մասնակիցներին, հաշմանդամներին, պատերազմում զոհված մարտիկների ընտանիքներին։ «1941—1945 թվականների Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովրդի տարած հաղթանակի 40-ամյակի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ հատուկ ուշադրություն է հատկացվում նրանց նյութական ու կենցաղային պայմանների հետագա բարելավմանը։ Այդ հարցերին է նվիրված խմբագրության աշխատակից **Աիդա ՀՈՎՆԱՆՅԱՆԻ** զրույցը Հայկական ՍՍՀ սոցիալական ապահովության մինիստր **Ռ. Ս. ԳԱԼՍՏՅԱՆԻ** հետ։

ԹՂԹ.— Պատերազմի առաջին իսկ օրերից, երբ ռազմի դաշտերում անեղ պայքար էր մղվում հիտլերյան հրոսակների դեմ, կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունն իրենց ուշադրության կենտրոնում էին պահում արդեն հաշմանդամ դարձած մարտիկների և զոհված զինծառայողների ընտանիքների նյութական ու կենցաղային պայմանների բարելավումը։ Ընկեր Գալստյան, հետաքրքրական է իմանալ այն առաջին որոշումների մասին, որոնք վերաբերում էին Հայրենական պատերազմի հաշմանդամներին և զոհված մարտիկների ընտանիքներին։

ԳԱԼՍՏՅԱՆ.— Արդեն 1942 թվականին ՍՍՀՄ Ժողկոմխորհի որոշմամբ միութենական հանրապետությունների սոցիալական ապահովության ժողովրդական կոմիսարների վրա անձնական պատասխանատվություն դրվեց Հայրենական մեծ պատերազմի հաշմանդամներին աշխատանքի տեղավորելու, անհրաժեշտության դեպքում նրանց նոր մասնագիտություն ուսուցանելու գործի կազմակերպման, ինչպես նաև կարիքավորներին հաշմանդամների տներում ընդգրկելու համար։ Այդ որոշմամբ միութենական և ինքնավար հանրապետությունների ժողկոմխորհներին, մարզային և երկրամասային սովետների գործկոմներին պարտավորեցվել է անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել, որպեսզի ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարներն առանց հապաղելու, ամենակարճ ժամկետներում պատերազմի հաշմանդամներին ապահովեն համապատասխան աշխատանքով։ Պետական և տնտեսական մարմինների ղեկավարների վրա անձնական պատասխանատվություն է դրվել պատերազմի հաշմանդամների համար աշխատանքային ու կենցաղային անհրաժեշտ պայմաններ ստեղծելու համար։ Միանվագ նպաստներ էին վճարվում այն ընտանիքներին, որոնց միակ կերակրողը մեկնում էր ռազմաճակատ։ Ընդունվեցին նաև այլ որոշումներ։

Հաղթանակից հետո, 1945 թվականին, զորացրվածների, զոհված մարտիկների ընտանիքների, հաշմանդամների և զինծառայողների ընտանիքների համար սահմանվեցին բազմաթիվ նոր արտոնություններ, իրականացվեցին նրանց օգնություն ցույց տալու մի շարք միջոցառումներ։

Զոհված մարտիկների ընտանիքներին, հաշմանդամներին և զինծառայողների կարիքավոր ընտանիքներին անվճար անտառահատատեղեր հատկացվեցին՝ շինա-

փայտի հայթայթման համար, հատկացված գներով բաց թողնվեցին տեղական շինանյութեր՝ բնակարան կառուցելու կամ վերանորոգելու համար, նրանք առաջնահերթ կարգով ապահովվում էին վառելիքով: Սահմանվեց, որ տեղական սովետների գործկոմները նոր կառուցվող ու վերականգնվող տների բնակտարածության 10 տոկոսը պետք է հատկացնեն վերոհիշյալ անձանց, հաշվի առնելով ամենակարիքավորներին:

1946 թվականին հրապարակվեց ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի հատուկ որոշումը, որով տեսողությունից զրկված հաշմանդամներն ազատվեցին աշխատավարձից եկամտահարկ վճարելուց: Այդ տարիներին մի շարք լրացուցիչ արտոնություններ տրվեցին նաև պատերազմի այլ խմբերի հաշմանդամներին: Դիմածնոտային վնասվածք ունեցողները, օրինակ, կարող էին անվճար ստանալ համապատասխան պրոթեզներ, 1-ին և 2-րդ խմբերի այն հաշմանդամներին, որոնց սոցիալական ապահովության մարմինները ուղարկում էին սանատորակուրորտային բուժման, վճարվում էր նաև ուղևորության արժեքը:

ԹՂԹ.— Այսօր սոցիալական ապահովությունը դարձել է սովետական մարդկանց նյութական բարեկեցության կարևոր գործոններից մեկը: Կուսակցությունն ու կառավարությունը մշտապես կատարելագործում են սոցիալական ապահովության համակարգը, հետևողականորեն բարելավում այն քաղաքացիների նյութական ապահովությունը, որոնք տարիքի կամ հաշմանդամության հետևանքով կորցրել են աշխատունակությունը: Հատկապես ընդլայնվում են պատերազմի հաշմանդամների և զոհվածների ընտանիքների կենսամակարդակի բարձրացմանն ուղղված արտոնությունները: Խնդրում եմ պատմել նրանց նյութական ապահովության մակարդակի բարձրացման հետագա միջոցառումների մասին:

ԳԱԼՍՏՅԱՆ.— Կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը հետագա տարիներին մի շարք նոր որոշումներ ընդունեցին պատերազմի հաշմանդամների և զոհված զինծառայողների ընտանիքների արտոնություններն ընդլայնելու նպատակով: ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի 1965 թ. որոշմամբ նախատեսվեցին նրանց նյութական ապահովության բարձրացման, բնակարանային պայմանների, աշխատանքի տեղավորման գործի բարելավման մի շարք նոր միջոցառումներ: Արմատապես բարելավվեց հաշմանդամներին ցույց տրվող բուժ-պրոֆիլակտիկ օգնությունը, ամբուլատոր-պոլիկլինիկաներում ապահովվեց նրանց արտոնյալ սպասարկումը և հոսպիտալացումը, նրանց նախապատիվ առաջնություն է տրվում սանատորական, հանգստյան տների ուղեգրեր տրամադրելիս:

Միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին, մինիստրություններին և գերատեսչություններին, տեղական սովետների գործադիր կոմիտեներին պարտավորեցվեց համակողմանի աջակցություն ցույց տալ պատերազմի հաշմանդամներին և զոհված զինծառայողների ընտանիքներին արտոնյալ պայմաններով բնակտարածությամբ ապահովելու և անձնական բնակելի տներ կառուցելու գործում: Այժմ նրանք անհատական բնակելի տների կառուցման համար կարող են մինչև 1000 ռուբլու անտոկոս վարկ ստանալ, նրանց համար քաղաքներում ու գյուղական վայրերում կազմակերպվեց արդյունաբերական ապրանքների ապառիկ վաճառք:

Ձեռնարկությունների, հաստատությունների և կազմակերպությունների ղեկավարներին թույլատրվում է պատերազմի հաշմանդամներին աշխատանքի ընդունել ոչ լրիվ աշխատանքային օրով, վճարելով լրիվ աշխատաժամանակի համար, նրանց, որպես կանոն, աշխատանքի ընդունել արտահերթ: Վերջին արտոնությունը սահմանվել էր դեռևս 1943 թ.՝ ՍՍՀՄ Ժողկոմխորհի համապատասխան որոշմամբ:

Սկսած 1971 թ. պատերազմի հաշմանդամներին, որոնք ունեն անվճար փոխադրամիջոց ստանալու իրավունք, յոթ տարին մեկ տրվում է ձեռքի կառավարման փոքրալիտրաժ «Զապորոժեց» ավտոմոբիլ:

ԹՂԹ.— Վերջին տարիներս ՍՄԿԿ Կենտկոմը և սովետական կառավարությունը քննարկել են Հայրենական մեծ պատերազմի վետերանների, հատկապես հաշմանդամների, ինչպես նաև զոհված զինծառայողների ընտանիքների, պարտիզանների, ընդհատակայինների կենսապայմանների բարելավման շատ հարցեր: Նրանց տրվել են մի շարք լրացուցիչ արտոնություններ:



ԳԱԼՍՏՅԱՆ.— Այո՛, կենսագործելով ՍՄԿԿ տնտեսական քաղաքականությունը, սովետական ժողովուրդը նոր հաջողությունների է հասել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման ասպարեզում: Կատարելագործվել և կատարելագործվում է սոցիալական ապահովության համակարգը: Բարձրացել են և կշարունակվի բարձրանալ հաշմանդամության կենսաթոշակների, ինչպես նաև կերակրողին կորցնելու դեպքում կենսաթոշակների նվազագույն չափերը: Աստիճանաբար հավասարեցվում են կոլտնտեսականների և պետական ձեռնարկությունների աշխատողների սոցիալական ապահովության պայմանները: Հատկապես մեծ է ուշադրությունը Հայրենական մեծ պատերազմի մասնակիցների, հաշմանդամների և զոհված մարտիկների ընտանիքների կենսապայմանների բարելավման նկատմամբ: Այդ նպատակով ընդունված նոր որոշումներով սահմանվում են լրացուցիչ արտոնություններ և առավելություններ: Դրանք վերաբերում են և՛ երթևեկության, և՛ սանատորակուրորտային բուժման ու բուժսպասարկման, և՛ բնակարանային ու կոմունալ, և՛ կենցաղսպասարկման ոլորտներին: Շատ արտոնություններ եղել են և նախկինում, սակայն այժմ դրանք ավելի են ընդլայնվում: Եթե նախկինում 1-ին, 2-րդ խմբերի և 3-րդ խմբի որոշ հաշմանդամներ իրավունք ունեին անվճար երթևեկել, ապա այժմ Հայրենական մեծ պատերազմի բոլոր հաշմանդամներին իրավունք է վերապահվում անվճար երթևեկել քաղաքային հասարակական տրանսպորտով, ինչպես նաև միջքաղաքային հաղորդակցության, երկաթուղային ու ջրային տրանսպորտով և քաղաքամերձ երթուղիների ավտոբուսներով (նշանակման կետ և վերադարձ), իսկ մարտ—հոկտեմբեր ամիսներին թույլատրվում է 50 տոկոս զեղչով: Առաջին խմբի հաշմանդամներին ուղեկցող անձանց համար ևս (մեկ ուղեկցողից ոչ ավելի) վճարվում է 50 տոկոս զեղչով: Նույն արտոնությունից կարող են օգտվել նաև պատերազմի մասնակիցները:

Հատուկ փոխադրամիջոցներով ապահովելու գործում եղած արտոնություններին, այսինքն՝ անվճար «Զապորոժեց», մոտոսայլակ տալուց բացի, ավելացել են մի շարք առավելություններ: Ավտոմոբիլներ, մոտոցիկլներ, մոտոռոլերներ, մոտոսայլակներ և հեծանվասայլակներ ունեցող պատերազմի հաշմանդամներն ազատվում են որպես ավտոտնակ օգտագործվող ոչ բնակելի շինությունների համար վարձակալական վճարից:

Բենզինի, ավտոմոբիլների նորոգման, տեխնիկական սպասարկման, դրանց պահեստամասերի նոր մանրածախ գներ մտցնելու կապակցությամբ, անվճար կամ արտոնյալ պայմաններով մարդատար ավտոմոբիլներ կամ մոտոսայլակներ ստացած բոլոր խմբերի հաշմանդամներին դրամական փոխհատուցում է տրվում հետևյալ չափերով՝ մարդատար ավտոմոբիլ ունեցող հաշմանդամներին՝ տարեկան 260 ռուբլի, մոտոսայլակ ունեցողներին՝ 108 ռուբլի:

Դեռևս 40-ական թվականներին Հայրենական պատերազմի հաշմանդամները օգտվում էին պրոթեզավորման որոշ արտոնություններից: Այժմ այդ արտոնություններն ընդլայնվել են. պատերազմի բոլոր խմբերի հաշմանդամներն անվճար կարող են օգտվել պրոթեզա-օրթոպեդիկ տարբեր պարագաներից, դրանք նորոգել նույնպես անվճար: Պատերազմի հաշմանդամներին, ինչպես նաև զոհված մարտիկների ընտանիքների այն անդամներին, որոնք կենսաթոշակ են ստանում զոհվածի համար, անվճար տրվում են լսողական և ձայնաստեղծման ապարատներ:

Կենցաղային ծառայության ոլորտում պատերազմի հաշմանդամներն սպասարկվում են անհերթ, նրանցից ընդունվում են պարենային և արդյունաբերական ապրանքներ ձեռք բերելու նախնական պատվերներ, ցանկության դեպքում գնումներն առաքվում են տուն: Վարկով վաճառքը նրանց համար կատարվում է առանց սկզբնական միանվագ վճարի: Հայրենական պատերազմի հաշմանդամների և նրանց հետ ապրող ընտանիքի անդամների, ինչպես նաև զինծառայողի զոհվելու հետևանքով կերակրողին կորցնելու համար կենսաթոշակ ստացող ընտանիքների զբաղեցրած բնակարանի վարձը սահմանված նորմայից կիսով չափ ցածր է: Նույնպիսի զեղչով է գանձվում նաև ջեռուցման, ջրամատակարարման, կոյուղու, գազի, էլեկտրաէներգիայի վարձը:

Ավելացել է անհատական բնակարանային շինարարության համար պատերազմի հաշմանդամներին ու մասնակիցներին առանց տոկոսի տրվող վարկի չափը (մինչև

1.500 ռուբլի), տուն կառուցելու կամ նորոգելու համար նրանց շինանյութ հատկացվում է առաջին հերթին: Քաղաքներում և բանվորական ավաններում հաշմանդամների բնակարանների կապիտալ նորոգման համար ևս վարկ է տրվում արտոնյալ պայմաններով: Կենտրոնական ջեռուցում չունեցող շենքերում բնակվող հաշմանդամները վճարում են վառելիքի արժեքի 50 տոկոսը: Հիշյալ զեղչը նախատեսված է անկախ այն բանից, թե ով է բնակելի տան տերը կամ վարձակալը:

Հարկերի գանձման առումով արտոնությունների շրջանակը որոշակիորեն ընդլայնվել է: Հայրենական պատերազմի 1-ին և 2-րդ խմբերի հաշմանդամները, անկախ եկամտի չափից, ներառյալ աշխատավարձը, ազատվում են եկամտահարկից, ինչպես նաև ՍՍՀՄ ամուրի, միայնակ և սակավանդամ ընտանիք ունեցող քաղաքացիների հարկից: 3-րդ խմբի հաշմանդամները ազատվում են աշխատավարձի եկամտահարկից, իսկ պատերազմի մասնակիցների աշխատավարձից եկամտահարկը զեղչվում է 50 տոկոսով:

Գյուղատնտեսական հարկերի վճարումից ազատված են այն տնտեսությունները, որոնց կազմում կան Հայրենական պատերազմի 1-ին և 2-րդ խմբերի հաշմանդամներ, և 3-րդ խմբի այն հաշմանդամները, որոնք տնտեսության հիմնական աշխատողներ են:

Հայրենական մեծ պատերազմի բոլոր մասնակիցների և զոհված զինծառայողների ընտանիքների նկատմամբ ջերմ հոգատարության նոր, վառ ապացույց են ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ վերջերս ընդունած որոշումները: Միջոցառումներ են նշվում նրանց կոմունալ-կենցաղային, բժշկական սպասարկման հետագա բարելավման նպատակով: Նախատեսվում է պատերազմի տարբեր խմբերի հաշմանդամների կենսաթոշակների, ինչպես նաև բոլոր մասնակիցների ծերության թոշակների էական հավելում: Մեծացվում են նաև պատերազմի մասնակից զինծառայողների որոշ կատեգորիաների՝ երկարամյա ծառայության կենսաթոշակների չափերը: Կենսաթոշակների նվազագույն չափերը բարձրացվում են ընտանիքները կեփերը: Կենսաթոշակների նվազագույն չափերը բարձրացվում են ընտանիքները կերակրող զինծառայողներին կորցնելու դեպքում, եթե նրանք մահացել են ՍՍՀՄ-ը պաշտպանելիս կամ զինվորական ծառայության այլ պարտականություններ կատարելիս ստացած վերքի, կոնտուզիայի կամ խեղման, կամ էլ ռազմաճակատում գտնվելիս ստացած հիվանդության հետևանքով: Որոշմամբ սահմանվել են նաև մի շարք այլ էական արտոնություններ:

Հատկանշական է, որ պատերազմի հաշմանդամները մեզ մոտ շրջապատված են ոչ միայն, եթե կարելի է այսպես ասել՝ պաշտոնական հոգատարությամբ, այլև հասարակության ամենալայն ուշադրությամբ: Մեր հանրապետությունում լավ փորձ է կուտակվել պատերազմի հաշմանդամներին և զոհվածների ընտանիքներին շեֆական օգնություն ցույց տալու գործում: Տասնյակ ձեռնարկություններ և կազմակերպություններ ստանձնել են պատերազմի հարյուրավոր հաշմանդամների և զոհվածների ընտանիքների շեֆությունը:

1981—1984 թթ. ժամանակաշրջանում մինիստրությունը Հայրենական պատերազմի հաշմանդամներին ու մասնակիցներին անվճար հատկացրել է շուրջ հինգ հազար սանատորաառողջարանային ուղեգրեր, մեկ և կես հազար հաշմանդամների անվճար տրվել է ավտոմեքենա: Որպես բենզինի և ավտոպահեստամասերի արժեքի փոխհատուցում միայն 1984 թ. վճարվել է ավելի քան յոթ հարյուր հազար ռուբլի:

Բարելավվել է Հայրենական պատերազմի հաշմանդամներին ցույց տրող բժշկական օգնության կազմակերպումը: Հանրապետական հիվանդանոցում պատերազմի հաշմանդամների համար առանձնացված է բաժանմունք, իսկ մյուս հիվանդանոցներում՝ հատուկ պալատներ: Հանրապետությունում հիմնականում լուծված է պատերազմի հաշմանդամների բնակարանային պայմանների բարելավման խնդիրը: Հայրենական պատերազմի ոչ միայն հաշմանդամները, այլև բոլոր մասնակիցները հիմնականում ապահովված են հեռախոսներով:

Սոցիալական ապահովության շրջանային և քաղաքային բաժինները պարբերաբար ուսումնասիրում են հաշմանդամների, պատերազմի մասնակիցների և զոհվածների ընտանիքների կենցաղային պայմանները: Առաջացած դժվարությունների դեպքում հարցը դրվում է գործադիր կոմիտեների քննարկմանը:



ԹՂԹ.— Այսօր կարևոր խնդիր է սոցիալական ապահովության համակարգի կառավարման կատարելագործումը: Երկրի որոշ քաղաքներում ու հանրապետություններում ստեղծվել են կենսաթոշակային ինֆորմացիայի կառավարման ավտոմատ համակարգեր: Իսկ ի՞նչ է արվում մեր հանրապետությունում այդ ուղղությամբ:

ԳԱԼՍՏՅԱՆ.— Անցումը սոցիալական ապահովության կառավարման ավտոմատ համակարգի՝ բարդ և տևական պրոցես է: Այն ընդգրկում է մի քանի փուլ, որոնցից ամենակարևորը կենսաթոշակային ապահովության բոլոր տեսակի աշխատանքների կենտրոնացումն է: Դրանով էապես կբարձրանա մեր աշխատանքի արդյունավետությունը:

Մեր մինիստրությունում հատուկ նշանակություն է տրվում սոցիալական ապահովության ինֆորմացիայի մշակման պրոցեսում հաշվիչ տեխնիկայի և տնտեսագիտական-մաթեմատիկական մեթոդների ներդրմանը: Այդ խնդիրների լուծման կազմակերպական բազան կենսաթոշակների և նպաստների հաշվարկման ու վճարման հանրապետական կենտրոնն է, ինչպես նաև սոցիալական ապահովության մինիստրության հանրապետական ինֆորմացիոն հաշվիչ կենտրոնը:

Մինիստրության ապարատի ավտոմատ կառավարման համակարգն այժմ հիմնականում ընդգրկում է հետևյալ ոլորտները՝ պլանավորում և ֆինանսավորում, բժշկաաշխատանքային էքսպերտիզա, հաշվապահական հաշվառում, որոշումների կատարման ստուգում: Ընթացիկ տարում կսկսի գործել «կենսաթոշակառուների դիմումների ստուգում և վերլուծում» ենթահամակարգը: Ներկայումս ավտոմատ եղանակով վճարումներ են կատարվում հանրապետության 10.000 կենսաթոշակառուների:

ԹՂԹ.— Կադրերի նկատմամբ ժողովրդական տնտեսության ներկա և հեռանկարային պահանջարկը, աշխատունակ բնակչության տարիքային կառուցվածքի փոփոխությունները, մարդու կյանքի և գործունեության տևողության աճը այն գործոններն են, որոնցով պայմանավորված են ժողովրդական տնտեսության մեջ կենսաթոշակառուների զբաղվածության խնդիրները: Այս առնչությամբ մեր հանրապետությունում ի՞նչ միջոցառումներ են իրականացվում, հատկապես Հայրենական պատերազմի հաշմանդամների նկատմամբ:

ԳԱԼՍՏՅԱՆ.— Ժողովրդական տնտեսության մեջ կենսաթոշակառուների աշխատանքի օգտագործման պրոբլեմը կապված է տնտեսական, սոցիալական, բարոյական, ֆիզիոլոգիական և մի շարք այլ գործոնների ուսումնասիրման հետ: Գիտական շատ աշխատություններում կենսաթոշակառուների աշխատանքային զբաղվածության խնդիրը լուսաբանվում է տարբեր տեսանկյուններով՝ սոցիալ-դեմոգրաֆիական, սոցիալ-հոգեբանական, կլինիկա-ֆիզիոլոգիական և այլն: Ուսումնասիրվում են նաև կենսաթոշակառուների աշխատունակության և աշխատանքի տեղավորման տընտեսական ու իրավական հարցերը:

Մեր հանրապետությունում աշխատանքային ռեսուրսների պակաս չի զգացվում, ուստի հաշմանդամներին աշխատանքում ընդգրկելու հարցերն ավելի շատ ունեն սոցիալ-հոգեբանական նշանակություն: Դեռևս 1982 թ. հոկտեմբերին թեթև արդյունաբերության, տեղական արդյունաբերության, բնակչության կենցաղսպասարկման և հանրապետության այլ մինիստրություններին ու գերատեսչություններին հանձնարարված է ավելի լայնորեն ընդգրկել հաշմանդամներին և կենսաթոշակառուներին հասարակական արտադրության մեջ, կենցաղսպասարկման ոլորտում, ըստ որում կիրառելով ոչ լրիվ շաբաթով և տանը կատարվող աշխատանքի պրակտիկան:

Կենսաթոշակառուների, այդ թվում և, իհարկե, պատերազմի հաշմանդամների փորձը, գիտելիքները դեռ երկար կծառայեն մեր հասարակությանը, կնպաստեն ինչպես նյութական բարիքների, այնպես էլ հոգևոր արժեքների հարստացմանը:

Ինչպես տեսնում ենք, կուսակցությունն ու կառավարությունն անդուլ հոգատարությամբ և մեծ ուշադրությամբ են շրջապատել Հայրենական պատերազմի վետերաններին, հաշմանդամներին, զոհվածների ընտանիքներին, բոլոր մասնակիցներին: Արվում է ամեն ինչ, որպեսզի նրանք ապրեն լիարժեք հասարակական կյանքով:

---

# ՀՐԵՂԵՆ ՕՐԵՐԻ ՄԱՐՏԱԿԱՆ ԵՐԳԵՐԸ

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ տարիները մեր երկրի կենսագրության մեջ մտել են որպես հերոսական, համաշխարհային պատմական նշանակություն ունեցող տարիներ: Սովետական Միության բոլոր ժողովուրդները մեկ մարդու պես ելան ընդդեմ ֆաշիզմի: «Հայ ժողովուրդը,— ինչպես գրել է «Պրավդա» թերթը 1941 թվականի օգոստոսի 25-ի առաջնորդող հոդվածում,— հաստատուն կերպով գրավում է իր մարտական տեղը Սովետական Միության բոլոր ժողովուրդների ընդհանուր պայքարում՝ հանուն անկախության և ազատության»:

Պատերազմը ոտքի հանեց բոլորին՝ կոլտնտեսականին ու բանվորին, գիտնականին ու գրողին... Պատերազմը հավասարապես մտավ բոլորի օջախը և ստիպեց ժամանակավորապես շեղվելու կյանքի բնական հունից: Զենք վերցրին նաև հայ գրողներն ու լրագրողները: Նրանցից 80-ը կռվի մեջ մտան Կովկասի նախալեռներում, Լենինգրադում, Կարպատներում... Երիտասարդ գրող-լրագրողներից 26-ը չվերադարձան ռազմի դաշտից:

Խոսքի մեծ վարպետը՝ Ավետիք Իսահակյանը, պատերազմի բոթը լսեց Եսենտուկիում հանգստանալիս: Հենց այստեղ էլ նա գրեց իր հանրահայտ **Ռազմակոչը**, որը դարձավ պատերազմի մասին առաջին օրերին գրված բանաստեղծական խոսքի գլուխգործոցներից մեկը: Բանաստեղծը տագնապի մեջ էր, նա ոտքի էր հանում, զենքի ու վրեժի կոչում հայրենի կտրիճներին.

*...Դեպի ռազմի դաշտ, դեպ հերոսացում,*
*Դեպի ռազմի դաշտ, սուրբ դրոշի տակ,*
*Դեպի բարձունքը մահի ու փառքի,*
*Վանեցե՛ք հեռու թշնամուն վայրագ,*
*Մեր խրճիթներից, մեր հնձաններից,*
*Մեր արտ ու կալից վանեցեք հեռու:*

Այդ նույն օրերին մեծատաղանդ երիտասարդ բանաստեղծ Հովհաննես Շիրազը գրեց իր հռչակավոր **Էքսպրոմտը**: Ընդամենը վեց տողում նա մարգարեաբար կանխագուշակեց ֆաշիզմի ապագան:

*Մենք խաղաղ էինք մեր լեռների պես,*
*Դուք հողմերի պես խուժեցիք վայրագ:*
*Մենք ձեր դեմ ելանք մեր լեռների պես,*
*Դուք հողմերի պես ոռնացիք վայրագ:*
*Բայց մենք հավերժ ենք մեր լեռների պես,*
*Դուք հողմերի պես կկորչեք վայրագ:*

Պատերազմի առաջին օրերին ի լուր աշխարհի հնչեց Նաիրի Զարյանի հուժկու ձայնը՝ **Մարտակոչը**, ջերմ սիրով լեցուն հայրենի հողի, բուռն ատելությամբ՝ ֆաշիզմի նկատմամբ:

*Դու քաղցր ես հող իմ հայրենի,*
*Չկա քեզնից պայծառ անուն,*
*Բայց վտանգի ահեղ ժամին,*
*Երբ սպառնում է թշնամին,*
*Դու ավելի ես քաղցրանում:*

Խաղաղ կյանքի իրենց լիրիկական տրամադրությունը մարտականով փոխարինեցին նաև բանաստեղծներ Գեղամ Սարյանը, Սարմենը, Ազատ Վշտունին, Աղավնին, Հռիփսիմե Պողոսյանը, Սողոմոն Տարոնցին և ուրիշներ: Հայ բանաստեղծների ու գրողների՝ պատերազմական թեմաներով ստեղծած գործերն սկսեցին տպագրվել հանրապետական մամուլում: Դրանք այն առաջին ծիծեռնակներն էին, որոնք երամներ կազմած հայ մարտիկների հետքերով սլացան ռազմի դաշտ ու դարձան հայրենիքը պաշտպանող զինվորի ոգևորության չցամաքող աղբյուրը, թիկունքը ռազմաճակատի հետ կապող անխորտակ կամուրջը, հարազատ երկրի ավիշը, ատելության հուրը, հաղթանակի հույսը, մոր կարոտը, հոր պատվիրանը, որդիների փրկարար կանչը, սերն ու ատելությունը...

Սկսած 1942 թվականի մարտից, երբ արդեն կազմակերպվել ու մարտի մեջ էին մտել ազգային զորամիավորումները, կարմիր բանակի գլխավոր քաղաքական վարչությունը հատուկ հրահանգով հանձնարարեց ազգային լեզուներով բազմատպաքանակ թերթեր հրատարակել զորամիավորումներում: 1942—1943 թվականներին ռազմաճակատներում և հայկական դիվիզիաներում լույս տեսավ հայերեն 16 թերթ: Այդ թերթերի խմբագրությունները ու տպարանները կոմպլեկտավորվում էին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի անմիջական ցուցումով: Զինվորական թերթերն ստանում էին տպագրական մեքենաներ, տառատեսակներ, անհրաժեշտ ձեռնարկներ: Պատերազմի տարիներին Հայաստանը ռազմաճակատ է առաքել 16 տպարան՝ անհրաժեշտ մեքենասարքավորումներով:

Զինվորական առաջին թերթերի լույսընծայման հետ էլ ասպարեզ մտավ ռազմաճակատային հայ պոեզիան ու արձակը: Բնական է, որ այդ թերթերն առաջնությունը տալիս էին բանաստեղծությանը, որովհետև բազմատպաքանակների փոքր էջերը նեղ էին արձակ գործերի համար: Պոեզիան ռազմի դաշտում դիպուկ, համառոտ ու գեղեցիկ խոսքի թագուհին էր: Մարտիկները սիրով էին կարդում չափածո խոսքը, այդ խտացված վրեժը, որը ոգեշնչում, հերոսության էր կոչում հանուն հայրենիքի, հանուն ազատության: Պատերազմի ծանր ու դաժան տարիներին, մեր ականավոր բանաստեղծների հետ մեկտեղ, մարտնչող պոեզիայի հրաշալի օրինակներ տվեց ինքը՝ կռվող զինվորը, որ մարտի դադարներին, խոնավ ու ցուրտ խրամատներում, իր սրտի խոսքն էր հանձնում թղթին:

Այսօր մեր նպատակը չէ արժեքավորել այդ գործերի գեղարվեստական առանձնահատկությունները: Այդ ոտանավոր-բանաստեղծությունների մի մասը արվեստի առումով, այսօրվա չափանիշներով, ինչ խոսք, թույլ է: Իսկ երե՞կ, երբ դրանք ծնվում էին խրամատներում, ձեռքից ձեռք անցնելով հասնում զինվորական թերթերի խմբագրություննե՞րը...

89-րդ հայկական հրաձգային դիվիզիայի «Կարմիր զինվոր» թերթը (խմբագիր՝ Ս. Նալբանդյան) իր առաջին համարից սկսած մինչև պատերազմի հաղթական ավարտը մեծ տեղ է հատկացրել պոեզիային: Նրա էջերում հանդես են եկել ո՛չ միայն անվանի բանաստեղծներ, այլև շարքային բանվորներ, որոնք թեև մեկ-երկու ոտանավոր են տպագրել թերթում, այնուամենայնիվ, ստացել են մարտիկ-բանաստեղծի սրտամոտ անունը: Նրանցից շատերը չվերադարձան, բայց «Կարմիր զինվորի» էջերում մնաց իրենց սրտի խոսքը... Հայկական դիվիզիան ուներ նաև իր «հաստիքավոր» բանաստեղծը: «Կարմիր զինվորի» խմբագրության աշխատակից Արշալույս Սարոյանն էր նա:

1942 թվականի օգոստոսի սկզբներին հայկական զորամիավորումը Երևանից ռազմաճակատ մեկնեց և դիրքեր գրավեց Գրոզնու մատույցներում, Թերեքի մոտակայքում, ուր թշնամին հսկայական ուժեր էր կուտակել և ամեն գնով ցանկանում էր ներխուժել Անդրկովկաս: Դիվիզիայի առջև պատասխանատու խնդիր էր դրված. ոչ մի քայլ ետ, ամեն կերպ դիմագրավել թշնամուն, ջլատել նրա ուժերը և ջախջախել: Այս կարևոր խնդրին «Կարմիր զինվորը» նվիրում էր և՛ հոդվածներ, և՛ բանաստեղծություններ: 1942 թվականի հոկտեմբերի 21-ի համարում տպագրված է Սուրեն Ստեփանյանի **Ողջո՛ւյն, Կազբե՛կ բարձրագագաթ** բանաստեղծությունը: Դիմելով լեռանը՝ հեղինակն այլաբանորեն այն միտքն է արտահայտում, որ աշխարհում չկա այնպիսի մի ուժ, որը կարողանար սասանել մեր եղբայրական ազգերի միասնությունը:

*Արքան ես դու մեր լեռների՝*
*Միշտ անսասան և միշտ հպարտ,*
*Մեր հաղթական բյուր մարտերից*
*Ողջո՛ւյն, Կազբե՛կ բարձրագագաթ...*
. . . . . . . . . . . .
*Ֆաշիստները չեն արնոտի*
*Քո փեշերը միշտ անաղարտ...*
*Քո մարտաշունչ առավոտին՝*
*Ողջո՛ւյն, Կազբե՛կ բարձրագագաթ...*

Կովկասի համար մղված ծանր մարտերը, որոնք շարունակվեցին ավելի քան մեկ տարի, 1943 թվականի հոկտեմբերի 8-ին ավարտվեցին թշնամու խայտառակ պարտությամբ՝ Թամանի ազատագրումով: Այդ հաղթանակում հսկայական էր Անդրկովկասյան, ինչպես և Հյուսիսային Կովկասի ռազմաճակատների դերը: Եղբայրական մյուս ժողովուրդների զավակների հետ այստեղ մարտնչում էին նաև հայկական զորամիավորումները: Հյուսիսային Կովկասի ռազմաճակատի «Առա՛ջ, հանուն հայրենիքի» հայերեն թերթը (խմբագիր՝ Ա. Հակոբյան) 1943 թվականի հունիսի 10-ի համարում տպագրել է կարմիրբանակային Գրիգոր Սարգսյանի **Եթե ուզում ես...** բանաստեղծությունը: Զինվորը շքեղ բառեր չի որոնել մարտական ընկերների հետ զրուցելու համար: Դիմելով ընկերներին՝ նա ասում է. ով ուզում է հայրենի օջախը վերադառնալ, կրկին տեսնել իր մորն ու մանկանը, լսել հայրենաբարբառ երգերը, եթե ուզում է, որ մեր հայրենիքը ազատ լինի, պետք է հերոսանա:

ռազմաճակատային ստեղծագործողները, այլև ճանաչված գիտնականներ, անվանի գրողներ ու լրագրողներ: Լույս տեսնելով Թբիլիսիում և տարածվելով ռազմաճակատի ամենատարբեր հատվածներում՝ թերթը սերտ կապեր ուներ և Հայաստանի հետ: Նրա աշխատանքին մասնակցում էին տարբեր մասնագիտությունների տեր մարդիկ, դրանով իսկ հարստացնելով, բազմազան դարձնելով թերթի բովանդակությունը:

«Մարտիկի» էջերում հրապարակված գրական-գեղարվեստական նյութերը,- մասնավորապես բանաստեղծությունները, արտացոլում էին երիտասարդ ստեղծագործողների սերը սոցիալիստական հայրենիքի հանդեպ, անկոտրում հավատը հաղթանակի նկատմամբ: Կովկասի պաշտպանության ժամանակ թերթն զգալի տեղ է հատկացրել Գուրգեն Բորյանի մարտաշունչ պոեզիային: Ահա այդ օրերին տպագրված նրա «Հառա՛ջ» բանաստեղծության քառատողերից մեկը.

*Դեպի արևմուտք, դեպի արևմուտք,*
*Եղբա՛յրք, ուս-ուսի քայլենք աննահանջ.*
*Ահեղ մարտերի այս թեժ բոցերում,*
*Մեր դրոշներին գրված է՝ հառա՜ջ:*

Գ. Բորյանի այս բանաստեղծությունը թարգմանվեց ռուսերեն, վրացերեն և ադրբեջաներեն, օգտագործվեց որպես պլակատի մակագրություն, որի վրա պատկերված սովետական զինվորը դյուցազնական քայլերով առաջ է գնում՝ ազատագրելով Կովկասը:

«Մարտիկում» տպագրվել են Նաիրի Զարյանի, Հովհաննես Շիրազի, Գեղամ Սարյանի, Սարմենի, Աշոտ Գրաշու, Վահան Արամունու, Հռիփսիմե Պողոսյանի, Գևորգ Հայրյանի, ինչպես և ռազմիկ բանաստեղծների գործերը: Նրանցից են՝ Արշալույս Միրաքը, Աղասի Աղասյանը, Բոգդան Զանյանը, Մեհրուժան Բաֆին, Սարգիս Մանուկյանը և ուրիշներ: Պոեզիան մարտական թերթերի էջերում հնչում էր որպես հայրենասիրության, դյուցազներգության պոեզիա, մարտնչող պոեզիա:

Ընթերցողի վրա անջնջելի տպավորություն էր թողնում նաև արձակը: «Մարտիկը» հարյուրավոր ակնարկներ ու պատմվածքներ է տպագրել, որոնց հեղինակներն էին Ավ. Իսահակյանը, Դ. Դեմիրճյանը, Մ. Ալազանը, Ստ. Կուրտիկյանը, Գ. Սևունցը, Գ. Բորյանը:

89-րդ Թամանյան դիվիզիան սովետական բանակի այն զորամիավորումներից էր, որին բախտ է վիճակվել մասնակցելու Բեռլինի գրավմանը, ֆաշիզմի վերջնական ջախջախմանը: Մինչև Բեռլին հասնելը հայկական զորամիավորումը բազմաթիվ ճակատամարտերի էր մասնակցել, աչքի ընկել հերոս մարտիկներով: Նա արդեն տվել էր Սովետական Միության ութ հերոս: Բեռլինի և Օդերի պլացդարմի մարտերում գործած սխրանքների համար Հրանտ Բաբայանը նույնպես արժանացավ Սովետական Միության հերոսի կոչման: Դիվիզիան պատերազմն ավարտեց Բեռլինում ռայխստագի հրապարակում, ուր, որպես վերջին համազարկ ու հրավառություն, թնդաց ավանդական քոչարին: Ու բոլորեց հայկական շուրջպարը: Պատմական այս փաստն է, որ դրվել է Արշալույս Սարոյանի Հաղթանակի պարը բանաստեղծության հիմքում, որ տպագրվել է «Կարմիր զինվորում» ու դարձել դիվիզիայի յուրօրինակ հիմնը:

*...Ուստա Կարոն փչեց զուռնեն..*
*Ու դհոլի ձայնը թնդաց,*
*Մեզ ժպտալով շրջան մտան*
*Կորիճները հաղթանակած...*
*...Պարում էին այնպես ուժգին,*
*Այնպես թափով, շնորհալից,*
*Որ թվում էր ոտքով էլ են*
*Հաղթանակի սալյուտ տալիս:*
*...Հայերն այնպես պարում էին*
*Հաղթանակած մտած Բեռլին*
*. . . . . . . . . . .*
*Ինչպես պարել էին մի օր,*
*Երբ հաղթել էր Հայկը Բելին:*

Հաղթանակը եկավ սովետական ժողովրդի մեծ զրկանքների ու զոհերի, տառապանքների գնով: Դաժան պատերազմի ամեն մի օրը արձանագրված է զինվորական մամուլի էջերում՝ հոդվածների, թղթակցությունների, ակնարկների, բանաստեղծությունների մեջ: Այսօր դրանք դարձել են նվիրական մասունքներ անվերադարձ անցած-գնացած օրերի: Այն հրեղեն օրերի հերոսներից շատերը չկան արդեն, չկան նաև այն մարտիկներից շատերը, որոնք, բանաստեղծ դարձած, մամուլի էջերում թողեցին իրենց հրե խոսքը:

Կանցնեն տասնամյակներ, կանցնեն դարեր, բայց չի մոռացվի սխրանքը զինվորի, որն իր կյանքը անմնացորդ նվիրեց հայրենիքի ազատության ու անկախության վեհ գործին: Մեր և գալիք սերունդներին է ուղղված Ռոբերտ Ռոժդեստվենսկու բանաստեղծություն-պատվիրանը.

*Հիշենք բոլորին անուն առ անուն,*
*Եվ հիշենք,*
*Դա մեռածներին,*
*ցավոք,*
*Պետք չէ, ես գիտեմ,*
*Բայց ապրողներին շա՜տ է*
*հարկավոր...*

**Միհր ՍՏԵՓԱՆՅԱՆ**

# ՄԱՐԴԻԿ ՀԻՇՈՒՄ ԵՆ ԶԻՆՎՈՐԻՆ

ԼՌԵԼ ԷԻՆ ԹՆԴԱՆՈԹՆԵՐԻ որոտը, տանկերի ու ինքնաթիռների հռնդյունը: Սովետական հերոսական բանակը ծնկի էր բերել թշնամուն՝ հիտլերյան ֆաշիզմին, նրան ջախջախել իր իսկ որջում:

Խաղաղության երգն էր թևածում համօր աշխարհի վրա, ու ռազմի երկար ու ձիգ ուղի անցած, սխրանքներ կատարած զինվորները դառնում էին տուն, իրենց հայրենի օջախները, հարազատներից առնում ծովացած կարոտը: Իսկ զինվոր Սամվել Թաթոյանը, որ պիտի քսանվեցերորդ գարունը բոլորած լիներ, և այնքա՜ն շատ էր սիրում Հայրենին ու կյանքը, հայրենիքի ու հարազատների կարոտը սրտում, իր նման բյուրավորների պես չդարձավ տուն...

Վիրահայոց լեռների ելուստը կազմող Լեջան սարի կանաչապատ փեշին թիկնած Ուռուտ գյուղում մխում էին հողվորներ Թաթոյանց Եգորի ու Զավահիրի սրտերը իրենց որդու կարոտից: Մխում էին Ծաղկանուշ ու Նազիկ քույրերի և Ծավարշ եղբոր սրտերը: Հայրենական պատերազմի առաջին օրերից նրանք անընդմեջ նամակներ էին ստանում իրենց որդուց ու եղբորից: Հետո, 1943-ի վերջերից, փոստատարը դադարեց նրանց տան դուռը բախելուց...

Շատ բաներ էին անցնում հարազատների մտքով: «Կենդանի լիներ՝ կգրեր, իր մասին լուր կտար»— մտածում էին նրանք մեկուսի, բայց և այնպես ամեն մեկն իր սրտում փայփայում էր հույսի մի նշույլ, թե գուցե մի գեղեցիկ օր Սամվելը ոտքը կդնի հայրական շեմին, ու տունը կլցվի անափ խնդությամբ:

Ապրում էին հույսով: Սփոփվում էին Սամվելի նամակներով, որ պահում-պահպանում էին նրանք աչքի լույսի պես, որպես սուրբ մասունք...

Անցնում էին տարիները, խունանում էին նամակները, բայց դրանց պարունակած հայրենասիրական ջերմ շունչն ու ոգին մնում ու ջերմացնում էին զինվորի հարազատների կարոտակեզ սրտերը:

Ու հարազատները սպասում էին Սամվելի տունդարձին: Հարազատները որոնում էին Սամվելին...

ՔՍԱՆ ՏԱՐԵԿԱՆ ԷՐ ԵՐԵՎԱՆԻ մանկավարժական ինստիտուտի ուսանող Սամվել Թաթոյանը, երբ 1939-ին զորակոչվեց կարմիր բանակ: Երեք ամիս էր մնում, որ վերադառնար ու շարունակեր կիսատ թողած ուսումը... Բայց սկսվեց պատերազմը, և կոմերիտական մարտիկը մնաց Հայրենին պաշտպանելու:

Ծառայում էր Արխանգելսկում: Պատերազմի բոթը լսելուն պես ձեռքն է առնում գրիչն ու հավաստիացնում. «Թանկագին հայր, քանի դեռ վառվում է խորհրդային պայծառ աստղը, ոչ ոք չի կարող հանգցնել այն, թող կյանքս զոհվի, միայն թե ապագա հաղաթանակը լինի» (նամակի տակ կարդում եմ՝ 22, ուղարկում եմ 23-ին):

Որքա՜ն լավ է, որ մարդ հավատ ունի: Ու երբ հավատը ձուլվում է ուժին, արիությանը, և՛ հաջողությունն է ապահովվում, և՛ կոփվում հաղթանակը: Անհուն, անսահման հավատով էլ քսաներկուամյա զինվորը հուսադրել է հողի մշակ հորը. «Սիրելի հայր... քեզ համար պարզ կլինի՝ գերմանական ֆաշիստները ռմբակոծել են խորհրդային քաղաքները՝ Կիևը, Ժիտոմիրը, Սևաստոպոլը, Մինսկը, Բոբրույսկը, Բորիսովը, այն քաղաքը, որտեղից մի ամիս առաջ եկա Արխանգելսկ, Մոգիլյովը և այլն: Վերջապես այդ չի նշանակում, թե նրանք կարող են անել ամեն ինչ, խորհրդային բանակի ուժը մահ ու սարսափ է տարածում ողջ կապիտալիստական աշխարհի վրա: Մի՛ վախիր, սիրելի հայր, և մի՛ մտածիր, հաղթանակը վաղ թե ուշ լինելու է մերը...» (29.6.41):

Կարդում ես նամակն ու խորին համակրանքով համակվում դրա հեղինակի

նկատմամբ։ Ամեն մի նամակում հայրենասիրական շունչ, ամեն մի տող՝ ներծծված հույս ու հավատով։ Հավատը վեհացնում, համարձակ է դարձնում զինվորին, ու նա անմնացորդ սիրով է սիրում երկիր Հայրենին, գիտակցված կերպով մխրճվում պատերազմի հորձանուտը։

Զինվորը նետվում է մարտի ու գիտե, որ մենակ չէ։ Այդ իրողությունն էլ նոր ուժ ու կորով է հաղորդում նրան. «...Սիրելի հայր ջան, վաղը գնալու եմ ռազմաճակատ՝ պայքարելու իմ սիրելի հայրենիքի համար, իմ մասին մտածելու հարկ չկա, քանի որ ողջ սովետական ժողովուրդը ինձ հետ է...»։ Պատահական թղթի պատառիկին հանձնած այս տողերի հեղինակը այն զինվորն է, որը մարտի դաշտ է գնում խիզախելու, ապրելու և ապրեցնելու հույս ու հավատով...

Զինվորը գիտե նաև, որ հայրենիքի փրկության համար կարող է և զոհել ջահել կյանքը։ Որպես ապացույց 1941-ի սեպտեմբերի 9-ի նամակը. «...Թանկագին հայր, արդեն այսօր՝ ամսի 2-ին, գնում եմ ռազմաճակատ, թեկուզև արյան գնով պաշտպանելու իմ թանկագին հայրենիքը...»։

Հաղթանակի ու ապրելու հավատը չի մարում զինվորի սրտում, այլ ավելի է բորբոքվում անշեջ կրակի պես։ Եվ ամիսներ անց չմարող հավատով էլ գրում է. «Հայր ջան, ես արդեն լեյտենանտ եմ, վաղը՝ 3.3.42-ին նորից գնալու եմ ռազմաճակատ, մի մտածեք դրա համար, թշնամու գնդակը ինձ չի կպել և չի էլ կպչելու»։

Ու պատերազմի կարճ ժամանակահատվածում, թշնամու դեմ մղած թեժ մարտերում աճում, կոփվում է հրամանատարը, ձեռք բերում մարտեր վարելու փորձ ու հմտություն, բարձրանում նոր աստիճանի։ «Սիրելի հայր,— գրում է նա 1942-ի հունիսի 20-ի նամակում,— ես արդեն ավագ լեյտենանտ եմ, շուտով շքանշան կըստանամ։ Իմ թանկագին ծնողներ, իմ սիրտը հայրենիքի համար է, մեր ժողովրդի համար։ Ես կռվելու եմ այնքան ժամանակ, քանի դեռ բաբախում է սիրտս։ Ես սիրում եմ իմ հայրենիքը և պաշտպանում եմ այնպես, ինչպես պահանջվում է յուրաքանչյուր զինվորից»։

Գիտակցված մահն անմահություն է։ Դարերի խորքից եկող այս թևավոր խոսքը, որ հայ քաջորդիներին թևավորել է օտար զավթիչների դեմ նրանց մղած հերոսամարտերում, անտարակույս, քաջ ծանոթ է եղել նաև Սամվել Թաթոյանին։ Ու նա նախորդ նամակից ուղիղ մեկ ամիս անց թղթին է հանձնում հետևյալ մտքերը. «Թանկագին հայր, ես ունեմ նպատակներ կյանքում իրականացնելու համար, եթե բախտ ունեք, կենդանի կլինեմ, իսկ թե հարկ լինի՝ պիտի մեռնեմ հանուն հաղթանակի, հանուն լենինյան կուսակցության։ ...Ունեմ կայունություն, ունեմ հույս, որ վաղ թե ուշ գերմանական ֆաշիզմը գտնելու է իր գերեզմանը»։ Սրանք գաղափարական զինվորի խոսքեր են, զինվոր, որ գիտե, թե հանուն ինչի է կռվում, հանուն ինչի կարող է զոհել կյանքը։ Եվ նա պատերազմի թոհ ու բոհի մեջ, թշնամու արկերի ու գնդակների տարափի տակ զինվորագրվում է կոմունիստական ամենահաղթ գաղափարները կրող լենինյան կուսակցությանը։ Նրա անթվակիր նամակը հավաստում է՝ ««Այժմ, թանկագին հայր ջան, ես արդեն կոմունիստ եմ, 30.7.42-ին ստացա Կարմիր աստղի շքանշան...»։

Ընթերցում ես նամակները, խորամուխ լինում դրանց բովանդակության մեջ ու քո առջև հառնում է պատասխանատվության զգացումով համակված, քաղաքականապես հասուն, գաղափարապես կոփված ու խոհեմ մի կոմունիստ հրամանատար։ «Թանկագին հայր,— գրում է նա,— ներկա պահին, ինչպես երբեք, մեզնից պահանջվում է գործել ավելի լավ՝ թշնամուն արագ ջախջախելու համար։ Հարկավոր է ունենալ ամեն անհրաժեշտը և դա կա, և թշնամին կջախջախվի» (12.8.42)։ Հինգ օր անց Սամվելը տեղեկացնում է. «Թանկագին ծնողներ, դեռ ոչ մի անգամ չեմ վիրավորվել, չնայած նրան, որ գտնվում եմ ամենաառաջին գծում... անչափ կարոտել եմ ձեզ... ես արդեն ավագ լեյտենանտ եմ, կրծքիս կրում եմ Կարմիր աստղի շքանշանը, որն ինձ տվել է իմ հայրենիքը, ես պարտական եմ նրան, թեկուզ կյանքի գնով՝ կատարելու եմ նրա մեծ պարտքը...»։ Կամ՝ «...Սա ռազմաճակատ է, ժամանակի ամեն մի րոպեն կյանքի գին է, և հայրենիքը պահանջում է մեզանից՝ շուտով վերջ տալ ֆաշիստ բանդաներին»։

Թշնամուն սպանելու համար հարկավոր է ատել նրան։ Ատել և՝ հաղթելու։



Եվ երիտասարդ հրամանատարը լավ էր գիտակցում, որ այդ ատելությունը պետք է համակի ոչ միայն ռազմաճակատում խիզախորեն մարտնչող զինվորներին, այլև թիկունքում բարիքներ արարող ու զենք կռող մարդկանց, որ ռազմաճակատն ու թիկունքը մի օրգանական միասնություն են, որի ամրությամբ էլ պայմանավորված է հաղթանակը։ Եվ նա 1942-ի օգոստոսի 29-ի նամակում գրում է. «Թանկագին իմ հայր, թշնամին ձգտում է դեպի ձեզ՝ Կովկաս։ Աշխատեցեք ավելի լավ, ես այստեղ՝ ռազմաճակատում պետք է կռվեմ թշնամու դեմ մինչև վերջին հնարավորությունը»։

Լենինգրադյան, ապա ուկրաինական ռազմաճակատից ուղարկած իր բոլոր նամակներում, որոնք գրված են մարտի դադարի պահերին, ոտքի վրա, ծնկին, բանակային բացիկների, թղթի պատահական կամ անփույթ կտրված պատառիկների, հրամանատարական ծոցատետրի թերթերի վրա, Սամվել Թաթոյանը հավատ է ներշնչում հարազատներին մեր հաղթանակի հանդեպ։ Նա խորապես համոզված է, որ «...շուտով գերմանական ֆաշիզմը կջախջախվի»։ Ու կռվում էր անձնուրացորեն, անմնացորդ նվիրումով, որպեսզի հաղթանակը մոտենա օր առաջ։

Ռազմաճակատում մեր ունեցած փոքր հաջողությունն անգամ ծով-ուրախություն է պատճառում նրան, ոգեշնչում, մղում քաջության ու սխրանքի։ Եվ Սամվելը մեծագույն հրճվանքով հայտնում է հարազատներին. «Քշում ենք ֆաշիստներին»։ Ահա քրոջը՝ Նազիկին, ուղարկած բացիկը. «...Գտնվում եմ նորից ամենաառաջավոր դիրքերում, դուք արդեն կարդում եք, թե ինչպե՛ս ենք քշում գազան հիտլերականներին»։ «Այժմ մենք առաջ ենք շարժվում, խփում ենք ֆաշիստներին, շուտով մեկընդմիշտ կջախջախենք նրանց»— գրում է հորը հասցեագրած անթվակիր նամակում։

Եվ բնականոն կլինի ենթադրել, ավելի ճիշտ համոզվել, որ Սամվել Թաթոյանն իր խիզախության օրինակով ու ոգեշունչ խոսքերով բարձրացրել է իր հրամանատարության ներքո կռվող զինվորների մարտական ոգին։ Ու գնահատել են նրա ծառայությունը։ Նա 1942-ի դեկտեմբերի 4-ի նամակով հարազատներին տեղեկացնում է, որ իր զինվորական կոչումը մեկ աստիճանով ևս բարձրացրել են. «Սաստիկ ցուրտ է, շուտով գերմանական ֆաշիստներին կքշենք մեր երկրից, կազատենք մեր հայրենիքը։ Ես արդեն կապիտան եմ...»։

Բազում ծանր մարտերի է մասնակցում քսաներեքամյա կապիտան Սամվել Թաթոյանի ղեկավարած վաշտը, կենաց ու մահու պայքար մղում մինչև ատամները զինված նենգ ու դաժան թշնամու դեմ. «...Ուժեղ կռիվներ են գնում, այդ կռվին մասնակցում եմ ես՝ ձեր որդին, հերոսությամբ եմ կատարում իմ պարտքը հայրենիքի հանդեպ»։

Այո՛, հերոսությամբ։ Նամակների կապոցում ամրթված, եզրերը քրքրված, արդեն դեղին երանգ առած թղթի մի պատառիկ ռուսերեն լեզվով հավաստում է. «Սամվել Եգորի Թաթոյանի հրամանատարությամբ ականանետային վաշտը 1942 թվականի հուլիսի 23-ին ոչնչացրել է թշնամու 3 տանկ, 9 բեռնատար մեքենա, 61 սպա, բազմաթիվ զինվորներ»։ Ահա ջահել հրամանատարի՝ մարտը հմտությամբ վարելու ևս մեկ վկայություն՝ «Սովետական Հայաստան» լրագրի 1943-ի օգոստոսի 1-ի համարը։ Առաջին էջի վերին մասում զետեղված է ՏԱՍՍ-ի ֆոտոխրոնիկայից ստացված զինվորականի մի լուսանկար՝ Կարմիր աստղի շքանշանը կրծքին։ Մակագրությունը տեղեկացնում է. «Կապիտան ընկ. Ս. Թաթոյանի վաշտի ականաձիգները վերջերս տեղի ունեցած մարտերում, օնելով հետևակին, ճնշեցին 4 գնդացրային կետ, ոչընչացրին վաշտային 2 ականանետ»։ Ապա հետևում է. «Նկարում՝ վաշտի հրամանատար, Կարմիր աստղի շքանշանակիր կապիտան Ս. Թաթոյանը։ Պատերազմից առաջ նա Երևանի մանկավարժական ինստիտուտի ուսանող էր»։

Կապիտան Սամվել Թաթոյանը տեսավ սովետական բանակի հաղթական երթը ու դարձավ դրա մասնակիցը, տեսավ ազատագրված քաղաքներ ու գյուղեր ու դարձավ ազատագրողներից մեկը, տեսավ ցնծացող մարդկանց ու ինքն էլ ցնծաց անափ խնդությամբ։ «...Գազան հիտլերականներից ազատում ենք գյուղեր ու փոքր քաղաքներ, բնակչությունը մեզ դիմավորում է լավ, համբուրում են մեզ, մի խոսքով հիմա արդեն մեզ համար ամեն ինչ լավ է, ոչնչացնում ենք հիտլերականներին։ ...Ծնողական սերը պահպանեց ինձ հիտլերականների կրակից»— գրում է հորն

ուղղած նամակում, որը ժամանակի առումով (30.8.43) վերջինն է նամակների կապոցում...

Անսահման լավատես էր սովետական բանակի ջահել հրամանատարը: Նա իր զինվորներին մարտի էր տանում՝ սիրելով հայրենիքն ու կյանքը, հաղթանակի հավատը սրտում, երազելով լավ, երջանիկ օրերի մասին: Ռազմաճակատում մարտնչող զինվորի համար ամեն օրն ու ժամը, պահն անգամ հղի է վտանգներով: Այդպես և կապիտան Սամվել Թաթոյանինը: Բայց նա այդ ծանր պայմաններում էլ հիշում էր հայրենի լեռնաշխարհը, հարազատներին ու ժամանակ էր գտնում ծննդին դնել թուղթը և իր խոհերն ու զգացումները, իր ուրախություններն ու մտահոգությունները կիսել նրանց հետ:

Կարդում ես նամակներն ու պատկերացնում մի ծովացած կարոտ մեծ հայրենիքի ու նրա մասը կազմող փոքրիկ ծննդավայրի հանդեպ: Ահա այդ ամենը վկայող 1942-ի դեկտեմբերի 24-ի նամակը. «...Սիրտս լիքն է անցյալի հիշողություններով, ձեզ անչափ կարոտած, Լոռուն կարոտած ձեր որդին գտնվում է կրակի գծում, իր արյան գնով պաշտպանում է մեր հայրենիքը... Հիշում եմ Նազիկին, Ծաղկանուշին և Ծավարշին լացը... Կարմիր բանակը շուտով դուրս կշպրտի գերմանացիներին»:

Նամակների մեջ անհասցե, անթվակիր տողեր են. «Ինձ թվում է՝ ամենամեծ պարգևը, որ մարդ ստացել է բնությունից— դա հիշողությունն է, սերը և երազանքը: Երջանիկ է այն մարդը, որ իր տխուր օրը կարող է զարդարել պայծառ երազներով և ձգտել այդ երազներին»: Ի՞ր միտքն է, թե՞ քաղել է ուրիշից, հայտնի չէ, բայց գրված է իր ձեռքով ու պարզ է մի բան՝ երիտասարդ զինվորը սիրել է կյանքը, երազել է անգամ խրամատում ու կռվել այդ երազների իրականացման համար:

Այո՛, շատ է լավատես եղել սովետական բանակի կոմունիստ կապիտանը («Գերմանական ֆաշիզմը կջախջախվի և քո որդին նորից կգա քեզ մոտ»): Անժխտելի է. նա սիրում էր կյանքը, բայց պատերազմը դաժան է, թշնամու գնդակը չի հարցնում ջահե՞լ է մարդը, թե ոչ, սիրո՞ւմ է կյանքը արդյոք: Եվ մի օր էլ, հարազատների վկայությամբ, 1943-ի հոկտեմբերին, դադարում են Սամվելի նամակները: Փոստատարը մեղավոր հայացքով է նայում ուռուտցի հողագործ Եգորի տան կողմը: Այնպես էլ չի իմացվում՝ կենդանի՞ է Սամվել Թաթոյանը, ստացա՞վ, արդյոք, երկրորդ շքանշանը...

...ԱՆՀԱՅՏ ԷՐ ԿԱՊԻՏԱՆ Սամվել Թաթոյանի ճակատագիրը: Ուռուտցի Եգորը որոնում էր որդուն, որոնում անդադրում: Եվ ահա 1966-ի մայիսի 16-ին ՍՍՀՄ պաշտպանության մինիստրության կադրերի գլխավոր վարչությունից հայտնում են նրան. «254 հրաձգային դիվիզիայի 933 հրաձգային գնդի ականանետային վաշտի հրամանատար, կապիտան Սամվել Թաթոյանը, գտնվելով Հայրենական պատերազմի ռազմաճակատում, զոհվել է 1943 թվականի հոկտեմբերի 17-ին և թաղված է Չերկասի մարզի Կանևսկի շրջանի Կրեշչատիկ գյուղից 1,5 կմ հյուսիս-արևելք:

Մարտերում աչքի ընկնելու համար Ս. Ե. Թաթոյանը պարգևատրվել է Կարմիր աստղի երկու շքանշանով»:

Ստեփանավանի շրջանի Ուռուտ գյուղում եմ, դպրոցում: Դպրոցի դիրեկտոր Սերգո Պապյանը, որը գրեթե Սամվել Թաթոյանի հասակակիցն է, ծանոթացնում է ինձ բոլոր այն նյութերին, որոնք վերաբերում են Հայրենական պատերազմում զոհված ուռուտցիներին: Միջանցքում եռավանդակ վահանակ է՝ «Փառքով ընկան հայրենիքի համար» վերտառությամբ: Կարմիր թավիշին փակցված են դպրոցի՝ պատերազմում զոհված ուսուցիչների ու սաների լուսանկարները: Նրանց թվում և Սամվել Թաթոյանինը՝ կապիտանի ուսադիրներով:

— Ինչո՞ւ Սամվել Թաթոյանի լուսանկարը ուսուցիչների հետ է,— հարցնում եմ դիրեկտորին:

— Վերջին դասարաններում սովորելիս,— ասում է նա,— Սամվելը դասեր էր տալիս ցածրդասարանցիներին:

Դիրեկտորի առանձնասենյակում թերթում եմ Փառքի ալբոմը: Չորրորդ էջը նվիրված է Սամվելին: Լուսանկարներ են, նամակներ, ինքնակենսագրություն, այլ նյութեր: Այստեղ էլ տեղեկանում եմ, որ Սամվելը եղել է աշակերտական կոմիտեի նախագահ, պատի թերթի խմբկոլի քարտուղար, ագիտատոր, մասնակցել անգրագի-



տության վերացմանը, տասներորդում սովորելիս ութ ամիս գյուղական ակումբում մասսայականի պարտականություն է կատարել:

— Ես ութերորդում էի սովորում,— ասում է դպրոցի դիրեկտորը,— իսկ Սամվելը, տասներորդում: Գերազանցիկ էր, լավ արտասանում ու լավ պարում էր, վերին աստիճանի մաքրակենցաղ էր: Բարի նախանձով էինք վերաբերվում նրան, ձգտում նմանվել...

Պիոներական սենյակում Սամվելի մեծադիր լուսանկարն է ու բազալտին արված նրա հարթաքանդակը, որի հեղինակը ուռուտցի ինքնուս քանդակագործ, հանգուցյալ Կամսար Մանուկյանն է: Դպրոցի պիոներական դրուժինան Սամվել Թաթոյանի անունով է կոչվում: Այստեղ, պիոներական սենյակում, նրա լուսանկարի ու հարթաքանդակի մոտ հոկտեմբերիկները պիոներ են ընդունվում: Նրանք երդվում են հայրենիքը սիրել այնպես, ինչպես իրենց հայրենակից կապիտան Սամվել Թաթոյանը:

Այո՛, մարդիկ բարի են հիշում հերոսին: Եվ ոչ միայն հայրենի ոստանում: Իրենց ազատարարին չեն մոռացել և ուկրաինական Կրեշչատիկ գյուղի բնակիչները: Ահա իմ գործընկեր «Կոմունիստ Ուկրաինի» ամսագրի գլխավոր խմբագրի տեղակալ Բորիս Կվասյուկի հաղորդած տեղեկությունը. «Սամվել Եգորի Թաթոյանը, հայ, սովետական բանակի կապիտան, զոհվել է 1943 թվականի հոկտեմբերի 17-ին Կրեշչատիկ գյուղը ֆաշիստներից ազատագրելու ժամանակ: Սովետական զինվորների խումբը Թաթոյանի գլխավորությամբ Դնեպրի գետանցումից հետո 1943 թվականի հոկտեմբերին մարտի է նետվում Կրեշչատիկ գյուղի համար: Սամվել Եգորովիչը նահացու վիրավորվել է, թաղված է № 2 գերեզմանոցի եղբայրական գերեզմանում:

Դպրոցում կան Սամվելի լուսանկարը, ծնողներին ուղղված նամակները: Նա պարգևատրված է եղել Կարմիր աստղի երկու շքանշանով: Եղել է 254 հրաձգային դիվիզիայի 933 հրաձգային գնդի ականանետային վաշտի հրամանատար:

Տուբելեցկի գյուղական սովետի գործկոմի որոշմամբ... Կրեշչատիկ գյուղի փողոցներից մեկը 1979 թվականի գարնանը կոչվել է Թաթոյանի անունով: Կրեշչատիկ գյուղը Տուբելեցկի գյուղական սովետի ենթակայության ներքո է»:

Ֆաշիստական Գերմանիայի դեմ տարած Մեծ հաղթանակի օրից անցել է չորս տասնամյակ: Սպիացել են պատերազմի հարուցած վերքերը, սակայն հաղթանակի համար իրենց կյանքը նվիրաբերած հերոսների հիշատակը չի խամրել: Այդպես և Սամվել Թաթոյանի հիշատակը:

1979-ի մայիսի 8-ին Սամվել Թաթոյանի եղբայրն ու քույրերը այցելեցին Կրեշչատիկ: Դեռ հարևան գյուղից նրանք զանգեցին Կրեշչատիկ: Այստեղ նախապես գիտեին նրանց այցի մասին: Կես ժամ անց արդեն պատերազմի վետերաններից մեկը իր «Ժիգուլիով» նրանց տանում էր Կրիշչատիկ: Երբ հասան գյուղ, վետերանն ասաց.

— Սա ձեր եղբոր անվան փողոցն է, սկսվում է գյուղի ծայրից:

Թախծոտ մի ուրախություն էր համակել նրանց. ուկրաինական այս հեռավոր գյուղի այս ավելի քան համեստ փողոցով հավերժացվել է իրենց եղբոր հիշատակը...

Հետո նրանց տարան դպրոցի դիրեկտոր Մ. Կրավչենկոյի տունը: Այստեղ սեղանի շուրջ հավաքվել էին գյուղի ղեկավարները, Կրեշչատիկի ակտիվիստները: Ընդունելությունը ջերմ ու սրտառուչ էր: Բարեկամական ու սրտամոտ խոսքեր ասվեցին, հոտնկայս հարգեցին զոհված հերոսների, այդ թվում և Սամվել Թաթոյանի հիշատակը...

Հաջորդ՝ հաղթանակի օրը հանդիսություն էր Հայրենական մեծ պատերազմում զոհված մարտիկների հիշատակը հավերժացնող հուշարձանի մոտ: Պիոներները աղ ու հացով դիմավորեցին Սամվել Թաթոյանի հարազատներին:

Երեկոյան մեծ հաղթանակին նվիրված հանդես էր մշակույթի տանը: Նորից՝ ջերմ ոգեշունչ խոսքեր: Առանձին անկյունում ցուցադրվել էին Սամվել Թաթոյանի լուսանկարները, նամակները, այլ նյութեր, որոնք լույս էին սփռում հերոսի կյանքի և մարտական ուղու վրա...

Թաթոյանները դրանից հետո էլի եղան Կրեշչատիկում ու էլի կլինեն, առավել ևս այս տարի, երբ նշվում է մեծ հաղթանակի հոբելյանական 40-ամյակը:

Շարունակվում է մեծ բարեկամությունը, որ հերոսների արյամբ է զոդվել:

**ԱՐՏԱՎԱԶԴ ՍԱՔԱՆՅԱՆ**

# ՁԵՌՔԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԿՐՃԱՏՈՒՄԸ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՐԵՎՈՐ ԽՆԴԻՐ Է

**Վ. ՇԱՀԲԱԶՅԱՆ**
ՀՍՍՀ աշխատանքի պետական կոմիտեի նախագահի տեղակալ
**Գ. ԲԼԵՅԱՆ**
Կոմիտեի ԱԳԿ կենտրոնի դիրեկտորի տեղակալ

*ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ինտենսիվացման և աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացման կարևոր ուղիներից է ձեռքի աշխատանքի կրճատումը, մեքենայացումը և ավտոմատացումը: Այդ պրոբլեմի լուծման հրատապությունն ավելի ակնհայտ է զարգացած սոցիալիստական հասարակարգի կատարելագործման փուլում: Չնայած արտադրության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման որոշակի հաջողություններին, մեզանում քիչ չեն այնպիսի ձեռնարկությունները, որոնք աշխատում են հնացած տեխնիկայով և տեխնոլոգիայով, որտեղ գերակշռում է ձեռքի ցածր որակավորված աշխատանքը:*

*Երկրի նյութական արտադրության ոլորտում ձեռքի աշխատանքով զբաղվածների թիվը հասնում է տասնյակ միլիոնների: Աշխատանքի մեքենայացման խնդիրը թելադրվում է մի շարք հանգամանքներով, մասնավորապես աշխատանքի արտադրողականության բարձրացմամբ, աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ և խնայողական օգտագործմամբ, աշխատավորների առողջության պահպանմամբ: Միաժամանակ, ձեռքի աշխատանքի մեքենայացումը ենթադրում է բնակչության հանրակրթական մակարդակի բարձրացում: Ընթացիկ հնգամյակից սկսած, մինիստրությունների, միավորումների և ձեռնարկությունների տնտեսական ու սոցիալական զարգացման պլաններում հաստատվում են ձեռքի աշխատանքի կրճատման առաջադրանքները՝ բանվորների ընդհանուր թվաքանակում սահմանելով ձեռքի աշխատանք կատարողների տեսակարար կշիռը: Այսպիսով, անհրաժեշտ նախադրյալներ են ստեղծվում ժողովրդատնտեսական պլաններն արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացման կոմպլեքսային ծրագրերի հետ ավելի սերտորեն շաղկապելու համար:*

*Հայկական ՍՍՀ աշխատանքի պետական կոմիտեն ձեռքի աշխատանքի կրճատման և աշխատանքի պայմանների բարելավման նպատակով իրականացնում է կոմպլեքսային միջոցառումներ: Ստեղծված է աշխատանքային ռեսուրսների կառավարման և ձեռքի աշխատանքի կրճատման կազմակերպման կուռ համակարգ, որտեղ առանցքային տեղ է հատկացվում նպատակային կոմպլեքսային ծրագրերի մշակմանը: Ընթացիկ հնգամյակի համար մշակվել և հանրապետության արդյունաբերության մեջ իրականացվում է ձեռքի աշխատանքի մեքենայացման ծրագիր, որի շնորհիվ 1983 թվականին առաջին անգամ հաջողվեց դադարեցնել ձեռքի աշխատանքով զբաղված մարդկանց ընդ-*



*հանուր թվի բացարձակ աճը, իսկ արդյունաբերության մեջ, նախորդ տարվա համեմատությամբ, այդ թիվը կրճատվեց շուրջ 7 հազարով*: Ավելին, 1979—1983 թվականներին հանրապետության արդյունաբերության մեջ առկա են ձեռքի աշխատանքի հարաբերական կրճատման միտումներ: Այսպես, ձեռքի աշխատանքով զբաղվածների տեսակարար կշիռը 1979-ի 46,3 և 1982-ի 44,2 տոկոսի դիմաց 1983 թվականին կազմել է 40 տոկոս: Այդ տարիներին ձեռքի աշխատանքով զբաղված բանվորների թիվը միջին հաշվով տարեկան կրճատվել է 1,3 կետով՝ նախորդ ժամանակաշրջանի 0,7-ի համեմատությամբ: Կրճատվել է նաև ձեռքի աշխատանք կատարող այն բանվորների թվի տեսակարար կշիռը, որոնք առնչություն չունեն մեքենաների և մեխանիզմների հետ. 1979 թվականի 40 տոկոսից 1983-ին այն հասել է 26 տոկոսի:*

*Պրոբլեմի նկատմամբ կոմպլեքսային մոտեցումը հնարավորություն ընձեռեց որոշելու տեխնիկական զարգացման կարևոր ուղղությունները և նշելու դրանց իրականացման համար անհրաժեշտ նյութական ու աշխատանքային ռեսուրսները: Տվյալ փուլում խոսքը արդյունաբերական ռոբոտների ներդրման, բարձման-բեռնաթափման և տրանսպորտապահեստային օպերացիաների մեքենայացման, աշխատատեղերի ատեստավորման և ռացիոնալացման մասին է:*

*Պլանավորված միջոցառումների իրականացման շնորհիվ արդյունաբերությունում մեքենայացման մակարդակը բարձրացել և 1983 թվականին կազմել է 51,8 տոկոս՝ 1982-ի 46,4 և 1979-ի 44,5 տոկոսի դիմաց: Այլ կերպ ասած, մեքենայացված աշխատանքի բաժինն աճել է 7,3 տոկոսով՝ նախորդ 20 տարիների՝ 1959—1979 թվականների 6,2 տոկոսի փոխարեն:*

*Հարկ է նշել, որ արդյունաբերության տարբեր ճյուղերում աշխատանքի մեքենայացման մակարդակը միատեսակ չէ: Համեմատաբար բարձր մակարդակ ունեն թեթև արդյունաբերության մինիստրության (62 տոկոս), ճանապարհային մեքենաշինության (60,1), անտառային և փայտամշակման արդյունաբերության (59,7), մթերումների (57,2), քիմիական մեքենաշինության (56,6) մինիստրությունների ձեռնարկությունները:*

*Դրական տեղաշարժեր են նկատվում օժանդակ աշխատանքների մեքենայացման բնագավառում: 1979 թվականի 23,1 տոկոսի դիմաց 1983-ին մեքենայացման մակարդակն այստեղ կազմել է 39,4 տոկոս: Այս առումով հատկապես ակնառու են փոփոխությունները բեռնման-բեռնաթափման ու բեռնափոխադրումների աշխատանքներում: Այստեղ մեքենայացված աշխատանքը 1983 թվականին կազմել է 36,7 տոկոս՝ նախորդ տարվա 27,2 տոկոսի փոխարեն:*

*Արդյունաբերության ճյուղերում մեքենայացված և ձեռքի աշխատանքի հարաբերակցությունը հիմնականում փոխվել է մեքենայացված աշխատանքով զբաղված բանվորների թվի տեսակարար կշռի մեծացման շնորհիվ: Այդ գործում կարևոր դեր են խաղացել նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորումը, արտադրության մեջ աշխատանքի գիտական կազմակերպման միջոցառումների ներդրումը:*

*Հանրապետության արդյունաբերության մեջ ԱԳԿ-ի միջոցառումների իրականացման շնորհիվ 1983 թվականին ստացվել է 14 միլիոն ռուբլու տնտեսական արդյունք, որը, նախորդ տարվա համեմատությամբ, ավելի է 26,6 տոկոսով: Աշխատանքային ռեսուրսների նկատմամբ պահանջը կրճատվել է շուրջ 8 հազար մարդով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 2 տոկոսով: Այս ասպարեզում ուսանելի փորձ են կուտակել «Հայէլեկտրալույս», կոշիկի «Մասիս» արտադրամիավորումները, Կիրովականի «Ավտոգենմեքենա» գործարանը և շատ այլ ձեռնարկություններ:*

*Այսուհանդերձ, հանրապետության արդյունաբերության մեջ մեծ է ձեռքի աշխատանքի տեսակարար կշիռը: 1984 թվականի հունվարի 1-ի տվյալներով արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանքով զբաղված է եղել արդյունաբերական-արտադրական բանվորների 40 տոկոսը, այն դեպքում, երբ Միության*

* Այս և հետագա թվական տվյալները վերցված են ՀՍՍՀ ԿՎՎ հաշվետվություններից:

մեջ այդ ցուցանիշը կազմել է 37 տոկոս։ Վիճակը գոհացուցիչ չէ ծանր ֆիզի-
կական, ցածր որակավորում պահանջող աշխատանքների մեքենայացման,
արտադրական միօրինակ, անհետաքրքիր պրոցեսների վերացման և, հատ-
կապես, կանանց ձեռքի աշխատանքի կրճատման գործում։ Մեքենայացման
մակարդակը հատկապես ցածր է բնակարանային և կոմունալ, պտուղ-բան-
ջարեղենի տնտեսությունների, արդյունաբերական շինարարության, ձկնային
տնտեսության, թղթի-ցելյուլոզի արդյունաբերության, սև մետալուրգիայի
ձեռնարկություններում (20—33 տոկոս)։ Ֆիզիկական աշխատանքով զբաղ-
ված բանվորների թիվը զգալի է շինանյութերի, սննդի արդյունաբերության և
մեքենաշինության ճյուղերում։ Արդյունաբերության մեջ ընդգրկված կանանց
շուրջ կեսը կատարում է ձեռքի աշխատանք։
Արդյունաբերությունում դեռևս փոքր է ավտոմատ մեքենաներով աշխա-
տող բանվորների թիվը՝ ընդամենը 1,8 տոկոս։ Բայց նույնիսկ այս պայման-
ներում ձեռքի աշխատանքի կրճատման առաջադրանքը 1984 թվականի
հունվարի 1-ի դրությամբ, կատարվել է ընդամենը 95,2 տոկոսով կամ 6,4
հազար մարդ չի ազատվել ձեռքի աշխատանք կատարելուց։ Այդ առաջա-
դրանքը թերակատարել են մասնավորապես ավտոմոբիլային, քիմիական,
նավթաքիմիական արդյունաբերության, քիմիական մեքենաշինության, ջրա-
յին տնտեսության, գունավոր մետալուրգիայի, պտուղ-բանջարեղենի տնտե-
սության ձեռնարկությունները։ Եվ դա այն դեպքում, երբ դրանց մեծ մասի
համար սահմանված են ձեռքի աշխատանքի կրճատման ակնհայտորեն ցածր
առաջադրանքներ։ Նկատվում է այնպիսի միտում, երբ միջոցներն առավելա-
պես հատկացվում են հիմնական արտադրության մեքենայացմանը, մինչդեռ
օժանդակ ծառայություններին 1,5 անգամ քիչ միջոցներ են տրամադրվում։
Մեքենայացման ցածր մակարդակը հետևանք է այդ խնդրի լուծման գոր-
ծում ցուցաբերվող ոչ կոմպլեքսային մոտեցման, սարքավորումների նորացման
անբավարար տեմպերի, հնացած սարքավորումների, չկատարելագործված
տեխնոլոգիաների կիրառման, աշխատանքի գիտական կազմակերպման միջո-
ցառումների անբավարար իրականացման՝ հատկապես տիպային նախա-
գծերի, փոքր մեքենայացման միջոցների, կազմտեխնիկայի դանդաղ արմա-
տավորման, նոր տեխնիկայի ներդրման պլանների մշտական թերակատարման։
Հանրապետության արդյունաբերության առանձին ճյուղերում սիստեմա-
տիկաբար թերակատարվում են նոր տեխնիկայի ներդրման պլանային առա-
ջադրանքները։ 1981—1983 թվականներին այդ առաջադրանքները կատարվել
են ընդամենը 92,8 տոկոսով։ Լրիվ չեն օգտագործվում նաև նոր տեխնիկայի
և տեխնոլոգիայի ներդրման միջոցով աշխատանքի արտադրողականությունը
բարձրացնելու հնարավորությունները։ Դա հետևանք է այն բանի, որ աշխա-
տանքի կազմակերպումը ետ է մնացել տեխնիկական հագեցվածության աճից։
Սա իր հերթին առնչվում է աշխատանքի նորմավորման ու վարձատրման
բնագավառում առկա թերություններին։ Առանձին ձեռնարկություններում աշ-
խատանքի մեքենայացման փոխարեն անհրաժեշտ է ոչ բարձր որակավո-
րում պահանջող ձեռքի աշխատանքներում մարդկանց ներգրավելու համար
արհեստականորեն բարձրացնում են աշխատանքի վարձաչափը, կիրառում
հնացած նորմաներ ու նորմատիվներ։ Դրա հետևանքով մեծանում է արտա-
դրության աշխատատարությունը և աճում է բանվորների թիվը. հետևանքը
լինում է այն, որ արտադրական նորմաները, որպես կանոն, զգալիորեն գե-
րակատարվում են, իսկ աշխատանքի արտադրողականությունը դանդաղ է
աճում։ Հաշվի առնելով աշխատանքի և արտադրության մեքենայացման ու
ավտոմատացման մակարդակը, արդյունաբերական ձեռնարկություններն ու
միավորումները պետք է ամեն տարի աշխատատեղերի ատեստավորման հի-
ման վրա, առկա տեխնիկային, տեխնոլոգիային, արտադրության և աշխա-
տանքի կազմակերպմանը համապատասխան պարբերաբար վերանայեն հնա-
ցած նորմաները։
Հանրապետության արդյունաբերության մեջ զբաղված բանվորների միայն



78,2 տոկոսն է այժմ աշխատում տեխնիկապես հիմնավորված նորմաներով։ Դա միութենական միջին ցուցանիշից (85,7) զգալիորեն ցածր է։ Ձեռքի աշխատանքի մեքենայացման բարձր մակարդակը պայմաններ է ստեղծում մասնագիտությունների համատեղման, բազմահաստոցային և բազմաագրեգատային սպասարկման ընդլայնման համար։

Ներկայումս արդյունաբերության մեջ միայն 24 հազար բանվոր կամ բոլոր բանվորների 6,1 տոկոսն է աշխատում մասնագիտությունների և ֆունկցիաների համատեղմամբ, չնայած այդ շարժումը զարգացնելու հնարավորությունները մեզ մոտ մեծ են։ Որպես կանոն, մասնագիտությունների համատեղման մակարդակը ցածր է այն ձեռնարկություններում և ճյուղերում, որտեղ բարձր է ձեռքի աշխատանքի կիրառման մակարդակը։ Դրանցից են սննդարդյունաբերության (3,8 տոկոս), պտուղ-բանջարեղենի տնտեսության (4,5), մսեղենի-կաթնեղենի (5,2) և տեղական արդյունաբերության (5,1 տոկոս) մինիստրությունների ձեռնարկությունները։ Մեքենայացման ցածր մակարդակն իր հերթին խոչընդոտում է նաև աշխատանքի կազմակերպման ու խթանման բրիգադային ձևի լայն տարածմանը և դրա արդյունավետության բարձրացմանը։

Բացի այլ պատճառներից, մասամբ նաև նշված թերությունների հետևանքով է, որ 1984 թ. հանրապետության արդյունաբերական արտադրանքի աճի միայն 65 տոկոսն է ստացվել աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին, այն դեպքում, երբ Միությունում այդ ցուցանիշը կազմում է 93 տոկոս։

Ձեռքի աշխատանքի կրճատման պրոբլեմի լուծման ուղին նպատակային կոմպլեքսային ծրագրի մշակումն է, որի իրականացումը հնարավորություն կտա արդեն 80-ական թվականներին լուրջ տեղաշարժ կատարել ձեռքի աշխատանքի վերացման ասպարեզում։

Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի հանձնարարությամբ աշխատանքի պետական կոմիտեն հանրապետական ենթակայության մինիստրությունների և գերատեսչությունների հետ համատեղ մշակել է մինչև 2000 թվականը ձեռքի աշխատանքի կրճատման նպատակային կոմպլեքսային ծրագիր։ Այդ աշխատանքների կոորդինացման, գերատեսչություններին ու ձեռնարկություններին մեթոդական օգնություն ցույց տալու խնդիրը դրված է կոմիտեի ԱԳԿ կենտրոնի վրա։

Նպատակային կոմպլեքսային ծրագրով նախատեսված է իրականացնել մի շարք այնպիսի միջոցառումներ, որոնք թույլ կտան մինչև 2000 թվականը ձեռքի աշխատանքի բաժինն իջեցնել և 1983 թվականի 46,6-ի դիմաց հասցնել 29 տոկոսի, զգալիորեն կրճատել ծանր ֆիզիկական աշխատանքով զբաղվող բանվորների թիվը, իսկ կանանց ծանր ֆիզիկական աշխատանքը առհասարակ բացառել մինչև 90-ական թվականները։

Վերջերս մշակվել և վերադաս մարմինների հաստատմանն են ներկայացվել միութենական-հանրապետական մինիստրությունների ու գերատեսչությունների նպատակային կոմպլեքսային ճյուղային ծրագրերը։ Հաջորդ փուլի՝ մինչև 2000 թվականն ընդգրկող ժամանակաշրջանի համար մշակվելու է հանրապետության արդյունաբերության մեջ ձեռքի աշխատանքի կիրառումը կրճատելու տերիտորիալ ծրագիր։ Վերջինիս իրականացման շնորհիվ կակտիվանա ձեռքի և ծանր ֆիզիկական աշխատանքի կրճատման նպատակով կատարվող աշխատանքը, այն կկրի կոմպլեքսային, սիստեմավորված բնույթ։

Նախատեսված խնդիրները լուծելիս առանձնապես կարևոր է նշված միջոցառումներն ապահովել համապատասխան տեխնիկական միջոցներով։ Այդ նպատակով Հայկական ՍՍՀ մինիստրությունների և գերատեսչությունների հնգամյա պլաններում անհրաժեշտ է ավելացնել բեռնման-տրանսպորտային, բեռնման-բեռնաթափման և պահեստային աշխատանքների մեքենայացման համար պահանջվող սարքավորումների թողարկումը։

Ձեռքի աշխատանքի մեքենայացմանը մեծապես խոչընդոտում է այն, որ

ոչ բոլոր ձեռնարկություններն են ի վիճակի սեփական ուժերով ստեղծել մեքենայացման անհրաժեշտ միջոցներ: Ուստի անհրաժեշտ է լուծել հանրապետությունում ոչ ստանդարտ սարքավորումների, փոքր մեքենայացման միջոցների, ինչպես նաև կազմտեխնիկայի կենտրոնացված արտադրության կազմակերպման խնդիրը, առավել ևս, որ այդպիսի ձեռնարկություններ ստեղծված են Միության շատ մարզերում և հանրապետություններում:

Ձեռքի աշխատանքի կրճատման սոցիալական և տնտեսական խնդիրների լուծման կարևոր պայմաններից մեկը ձեռնարկությունների, տեխնոլոգիական պրոցեսների ու սարքավորումների նախագծման ժամանակ աշխատանքի գիտական կազմակերպման պահանջներն ու նորմատիվային նյութերի հաշվառումն ապահովելու նպատակով մինիստրությունների աշխատանքի և այդ գործի հետագա բարելավման մասին ՍՍՀՄ աշխատանքի ու սոցիալական հարցերի պետական կոմիտեի և ՀԱՄԿԽ-ի 1982 թվականի որոշման հետևողական կատարումն է: Մինչդեռ հիշյալ որոշման պահանջները հանրապետության նախագծային և կոնստրուկտորական կազմակերպությունները ոչ միշտ են կատարում:

Կարծում ենք, որ արդյունքներն ավելի շոշափելի կլինեն, եթե ձեռքի աշխատանքի կրճատումն ապահովվի ոչ միայն վարչական, այլև տնտեսական միջոցներով: Դա կկատարվի միայն այն դեպքում, եթե ձեռքի աշխատանքի մեքենայացումն արտադրական առաջադրանքների համակարգում դիտվի իբրև առաջնահերթ խնդիր: Սակայն իրականում նկատվում է հակառակ երևույթ. ձեռնարկությունները հաճախ պահում են նախատեսված պլանից ավելի աշխատողներ: 1983 թվականին հանրապետության յուրաքանչյուր երրորդ ձեռնարկությունում աշխատողների փաստացի թիվը գերազանցել է սահմանված պլանը:

Նման պրակտիկային վերջ տալու համար համապատասխան գերատեսչությունները պետք է բարձրացնեն պահանջկոտությունը ձեռնարկությունների նկատմամբ, աշխատողների թվաքանակի սահմանափակման միջոցով նրանց նպատակամղեն նախատեսվածից ավելի աշխատողների թվաքանակի կրճատմանը՝ առաջին հերթին ձեռքի աշխատանքի մեքենայացման հաշվին: Դրան էապես կնպաստեն ձեռնարկություններում աշխատանքի կազմակերպման և արտադրության կառավարման կատարելագործումը, բրիգադային ձևի և տիպային նախագծերի ներդրումը, աշխատանքի նորմավորման կատարելագործումը, մասնագիտությունների համատեղումը, բազմահաստոցային սպասարկման, նորոգման ու մյուս օժանդակ ծառայությունների կենտրոնացումը:

Հանրապետությունում բոլոր անհրաժեշտ պայմանները կան ձեռքի աշխատանքի շեշտակի կրճատման խնդիրը հաջողությամբ լուծելու համար: Ամեն ինչ կախված է այդ պայմանների ճիշտ օգտագործումից և աշխատանքի արդյունավետ կազմակերպումից: Հենց դրան պետք է նպատակամղված լինեն մեր ջանքերը:

---

# ՄԵՐ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՒՂԵՑՈՒՅՑԸ

**Նադեժդա ԳՈՐԲԱՉՈՎԱ,**
ՀԿԿ Կալինինոյի շրջկոմի երկրորդ քարտուղար

ԵՐԿՈՒՍՈՒԿԵՍ ՏԱՐԻ է ԱՆՑԵԼ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումից: Մեր՝ Կալինինոյի շրջանի, ինչպես և հանրապետության բոլոր կուսակցական կազմակերպությունների համար դա պլենումի որոշումների հետևողական կենսագործման, գաղափարախոսական և մասսայական-քաղաքական գործունեության վերակառուցման ստեղծարար մեծ աշխատանքի արգասավոր ժամանակաշրջան է:

Կատարված աշխատանքի արդյունքները, տեղ գտած թերությունները, առաջիկայում լուծվելիք խնդիրներն արտացոլում են գտել «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ: Շրջանի կոմունիստները, բոլոր աշխատավորները այդ որոշումն ընդունեցին բարձր պատասխանատվության զգացումով և այն համարում են աշխատավորների կոմունիստական դաստիարակության հետագա բարելավման, գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի մակարդակի բարձրացման, շրջանի առջև ծառացած սոցիալ-տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրների լուծման համար մասսաների մոբիլիզացման երկարաժամկետ ծրագիր:

Կուսշրջկոմում, սկզբնական կազմակերպություններում նորից ու նորից են վերլուծվել կատարված աշխատանքը ՍՄԿԿ Կենտկոմի, ինչպես նաև Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան (1985 թ.) պլենումի որոշումների պահանջների դիրքերից: Դրանցից բխող խնդիրները քննարկվել են սկզբնական կուսկազմակերպություններում, մշակվել են կոնկրետ միջոցառումներ:

Այլ հարցերի թվում մեծ ուշադրություն ենք հատկացնում կոմունիստների քաղաքական ուսուցման մակարդակի հետագա բարձրացմանը: Եվ դա միանգամայն օրինաչափ է: Կոմունիստները քաղաքական գիտելիքների, գործնական խնդիրների, կոնկրետ գործերի հետ տեսական դրույթների կապը տեսնելու ունակություն են ձեռք բերում կուսակցական ուսուցման համակարգում:

Կոմունիստների դաստիարակության, քաղաքական, արտադրական և քաղաքացիական ակտիվության բարձրացման նպատակով տարվող աշխատանքում շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները, գաղափարախոսական ակտիվը որոշակի փորձ են կուտակել: Շրջկոմի բյուրոյում, կուսկազմակերպությունների ժողովներում, գաղափարախոսական հանձնաժողովների նիստերում կանոնավոր կերպով քննարկվում են կոմունիստների քաղուսուցման և աշխատավորների տնտեսագիտական կրթության ներգործունության բարձրացմանը վերաբերող զանազան հարցեր: Այսպես, անցած ուսումնական տարում շրջկոմի գաղափարախոսական հանձնաժողովը վերլուծեց տնտեսագիտական կրթության վիճակը շրջկենտրոնի Կալինինոյի անվան սովխոզում: Նշվեց, որ որոշ դպրոցներում ուսումնասիրվող նյութը չի կապակցվում արտադրության խնդիրներին, ուստի և պարապմունքներն անցնում են անհետաքրքիր, ունկնդիրների մեջ արձագանք չեն առաջացնում: 1984—85 ուսումնական տարվան նախապատրաստվելիս շրջկոմը կուսկազմակերպությանը հանձ-

նարարեց բարելավել պրոպագանդիստների որակական կազմը, ավելի մեծ
ուշադրություն դարձնել նրանց մեթոդական պատրաստությանը, սովորեցնել
ունկնդիրներին լսելու ունակություն։ Եվ պետք է ասել, որ ընթացիկ ուսում-
նական տարում գործերը նկատելիորեն բարելավվել են, պարապմունքներն
աշխույժ են անցնում, մարդիկ սկսել են ավելի լավ աշխատել, տնտեսությու-
նում գործերը կարգավորվում են։ Այսպիսի օրինակներից առանձնապես պարզ
երևում է քաղաքական ուսուցման և մարդկանց արտադրական ակտիվության
միջև եղած կապը։ Գաղտնիք չէ. որտեղ ուշադրություն չի նվիրվում ուսուցման
որակի բարձրացմանը, այնտեղ բացակայում է նախաձեռնությունը, չի դըր-
սևորվում թերությունները հաղթահարելու և բարձր արդյունքների հասնելու
ձգտում։

Քաղաքական ուսուցման մակարդակի բարձրացմամբ է էապես պայմա-
նավորված այն իրողությունը, որ սովխոզի կոմունիստների ճնշող մեծամաս-
նությունը գործարար ձևով է կատարում կուսակցական և հասարակական
հանձնարարությունները, ակտիվորեն մասնակցում արտադրական խնդիրների
լուծմանը։

Տեսական խնդիրները գործնական աշխատանքի հետ կապելու բնագավա-
ռում մի շարք կուսկազմակերպությունների (Միխայլովկայի, Պրիվոլնոյեի կոլ-
տնտեսությունների, մեքենաշինական գործարանի, Մեծավանի սովխոզի և
այլն) կուտակած ուսանելի փորձը ընդհանրացնում ու տարածում ենք, դարձ-
նում բոլոր պրոպագանդիստների և կուսկազմակերպությունների սեփակա-
նությունը։ Շարունակելով կատարելագործել այդ փորձը՝ կուսկազմակերպու-
թյունները, պրոպագանդիստները ձգտում են, որ ունկնդիրների ստացած գի-
տելիքները մարմնավորվեն գրագետ տնտեսավարման մեջ, նպաստեն աշխա-
տանքի արտադրողականության, թողարկվող արտադրանքի որակի բարձրաց-
մանը։

Այդ առումով ուշադրության է արժանի Միխայլովկայի կոլտնտեսության
մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Գումբատ Աբ-
դուլաևի աշխատանքի փորձը։ Իր երկարամյա բարեխիղճ պրոպագանդիստա-
կան գործունեության համար նա արժանացել է ՍՄԿԿ Կենտկոմի Լենինյան
պատվոգրի։ Ամեն անգամ, հերթական պարապմունքին նախապատրաստվե-
լիս, նա հանգամանորեն կշռադատում է, թե արտադրական կոլեկտիվի կոնկ-
րետ ո՞ր խնդիրներն են անհրաժեշտ կապակցել մատուցվող տեսական նյութին։
Իսկ այդպիսի խնդիրները շա՜տ-շատ են՝ տնտեսության էկոնոմիկայի և գյու-
ղի սոցիալական զարգացումը, հումքի և նյութերի խնայողական ծախսումը,
կատարվող աշխատանքների որակի բարձրացումը...

Խմբակի ունկնդիրներն ակտիվորեն մասնակցում են սոցիալիստական
պարտավորությունների մշակմանն ու քննարկմանը, դրանց տնտեսական հիմ-
նավորմանը, իսկ այնուհետև և՝ դրանց կատարման նպատակով մշակված
միջոցառումների իրականացմանը։ Ուստի, պատահական չէ, որ նրանց մեծ
մասը արտադրության առաջավոր է։

Գ. Աբդուլաևի, ինչպես նաև քաղաքական ուսուցման և տնտեսագիտական
կրթության համակարգի մյուս պրոպագանդիստների ներդրումը կա այն բա-
նում, որ տնտեսությունում հետզհետե աճում են չորսհազարական կթվորու-
հիների շարքերը, ունկնդիրները մեծ շահագրգռություն են դրսևորում գյուղի
սոցիալական հարցերի լուծման գործում։

Շրջանի կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության դըպ-
րոցների ու սեմինարների աշխատանքի պրակտիկայում կայուն տեղ են գրա-
վել ռեֆերատները, գործնական առաջադրանքները, տնտեսական գործունեու-
թյան վերլուծությունը։ Ունկնդիրները հանդես են գալիս գյուղատնտեսության
և արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը, որակը
բարձրացնելու առաջարկություններով։ Տնտեսագիտական դպրոցների ուն-
կընդիրները ծանոթանում են շրջանի առանձին տնտեսությունների կապալային
բրիգադների աշխատանքի փորձին՝ այն ամենուր ներդնելու նպատակով։

ՍՄԿԿ Կետկոմի հունիսյան (1983 թ.) պլենումը կարևորեց ունկնդիրների



հետ տարվող աշխատանքի ձևերի ու մեթոդների, ուսման պրոցեսի կատարելագործման բնագավառում պրոպագանդիստների ստեղծագործական որոնման անհրաժեշտությունը։ Դրան համապատասխան մեր պրոպագանդիստները վերակառուցում են իրենց աշխատանքը։

Իր մեթոդական վարպետությունը տարեցտարի կատարելագործում է Մեծավանի սովխոզի կուսկազմակերպության պրոպագանդիստ Տիգրան Խաչատրյանը։ Նոր պահանջների ոգով նա ինքնաքննադատորեն վերլուծեց իր պրոպագանդիստական գործունեությունը և նկատեց, որ այն ամենևին էլ զերծ չէ թերություններից։ Միշտ չէ, օրինակ, որ կարողանում է, ինչպես հարկն է շարժել ունկնդիրների հետաքրքրությունը, արթնացնել նրանց ստեղծագործական միտքը։ Ավելի շատ ինքն է բացատրում, օրինակներ վկայակոչում, խնդիրներ առաջադրում, հարցերին պատասխանում, իսկ ունկնդիրներն այդ պայմաններում հանդես են գալիս պասսիվ լսողի դերում։ Այդ բացերի վերացմանը մեծապես նպաստեցին ավելի փորձառու պրոպագանդիստների, կոնսուլտանտների ու մեթոդխորհրդի անդամների կողմից նրա պարապմունքների ունկընդրումը, կուսշրջկոմի հրատարակած «Գաղափարախոսական աշխատանքի փորձից» բյուլետենը և անցած ուսումնական տարում կազմակերպված բաց պարապմունքը։ Գովելի է, որ պրոպագանդիստը կոմունիստի սկզբունքայնությամբ վերաբերվեց բաց պարապմունքի ընթացքում գործընկերների դիտողություններին, ակտիվորեն ձեռնամուխ եղավ իր պարապմունքների որակի ու արդյունավետության բարձրացմանը։ Դրա հաստատումը եղան ընթացիկ ուստարում պարապմունքների ավելի արդյունավետ վարումը, ունկնդիրների հետ տարվող աշխատանքի խելամիտ կազմակերպումը։

Տնտեսագիտական կրթության ցանցում, որտեղ ընդգրկված են հինգ հազարից ավելի բանվորներ, կոլտնտեսականներ, ժողովրդական տնտեսության տարբեր օղակների մասնագետներ և ղեկավար կադրեր, ուշադրության կենտրոնում են գիտատեխնիկական առաջընթացի արագացման, ՍՍՀՄ պարենային ծրագրի իրականացման, խնայողության ռեժիմի կիրառման, առաջավոր փորձի տարածման և նման այլ հարցեր։

Սակայն պետք է խոստովանել, որ կատարված դրական տեղաշարժերը ինքնահանգստացման հիմք չեն տալիս։ Բավական ժամանակ է անցել ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումից հետո, բայց կարո՞ղ ենք արդյոք ասել, թե հնարավոր ամեն ինչ արել ենք՝ ազատվելու կոմունիստների և անկուսակցականների մարքս-լենինյան կրթության կազմակերպման գործում տեղ գտած ձևամոլությունից, շաբլոնից, լուսավորչական մոտեցումից։ Իհարկե, ո՛չ։

Շրջանի որոշ կուսկազմակերպություններում կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության կատարելագործման աշխատանքը հիմնականում հանգեցվում է զուտ կազմակերպական հարցերի լուծմանը, իսկ ուսուցման բովանդակությունը, արդյունավետությունը հաճախ ստվերի տակ են մընում։ Անբավարար ուշադրություն է նվիրվում ըստ անհատական պլանների կոմունիստների ուսուցմանը, իսկ մի շարք կազմակերպություններում՝ նաև պարապմունքների գործնական ուղղվածությանը։

Մշակելով ՍՄԿԿ Կենտկոմի որոշման իրականացման միջոցառումներ՝ շրջկոմը, սկզբնական կազմակերպություններն ուշադրությունը կենտրոնացրել են կուսակցական ուսուցման և տնտեսագիտական կրթության մակարդակի ու արդյունավետության բարձրացմանը, կյանքի հետ նրա կապի ամրապնդմանը։ Պրոպագանդիստների առջև խնդիր է դրված օգնել մարդկանց՝ հասկանալու այն հարցերի քաղաքական կարևորությունը, որոնց լուծմանն այսօր նպատակամղում է կուսակցությունը։ Առաջիկայում ավելի մեծ ուշադրություն է նվիրվելու ունկնդիրների հասարակական-քաղաքական պրակտիկային։ Մենք շատ անելիքներ ունենք նաև պարապմունքների բովանդակությունը խորացնելու, հրատապ դարձնելու ասպարեզում։

Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում, ամենահմուտ և խելացի դասավանդումն անգամ չի հասնի նպատակին, եթե չհագեցվի խոր գաղափարներով, սերտորեն չկապակցվի այսօրվա կյանքի իրողություններին։

Պրոպագանդիստների ուշադրությունը հրավիրվում է մարքս-լենինյան ուսուցման հակապրոպագանդիստական ուղղվածությունն ուժեղացնելու անհրաժեշտության վրա։ Նրանց մեթոդական օգնություն ցույց տալու նպատակով շրջկոմի գաղափարախոսական հանձնաժողովին առընթեր ստեղծվել է հակապրոպագանդիստական աշխատանքի խորհուրդ, քաղլուսկաբինետի մեթոդխորհրդին առընթեր՝ սեկցիա։

Ընթացիկ ուսումնական տարում առանձնակի ուշադրություն է նվիրվում ուսուցիչների քաղաքական կրթությանը։ Եվ դա պատահական չէ։ Հանրակրթական դպրոցի ռեֆորմի հաջող իրականացումը մեծապես պայմանավորված է գործի նկատմամբ ուսուցչի լուրջ վերաբերմունքով, նրա մանկավարժական հմտությամբ։

Այսօրվա պահանջների ոգով վերլուծել ենք տնտեսագիտական կրթության վիճակը։ Այն դեռևս զերծ չէ ինչպես կազմակերպչական, այնպես էլ մեթոդական թերություններից։ Նախատեսել ենք շրջանի խոշոր կուսկազմակերպություններում ստեղծել անհրաժեշտ ուսումնամեթոդական գրականությամբ, դիտողական ձեռնարկներով և ուսուցման տեխնիկական միջոցներով հագեցված տնտեսագիտական կրթության կաբինետներ։ Շատ բան է հարկավոր անել ուսուցման մակարդակը բարձրացնելու և պրոպագանդիստներին մեթոդական օգնություն ցույց տալու գործում։ Այդ առնչությամբ շրջկոմի բյուրոյում վերանայել ու հաստատել ենք մեթոդխորհրդի ու կոնսուլտանտների կազմը։ Կոնսուլտանտներին կցել ենք որոշակի կազմակերպությունների, կազմել ենք մեթոդխորհրդի աշխատանքի պլան՝ այսօրվա պահանջների հաշվառումով։

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումից հետո էապես բարելավել ենք պրոպագանդիստների որակական կազմը։ Ներկայումս աշխատող 351 պրոպագանդիստներից 234-ը կոմունիստներ են, 278-ը ունեն բարձրագույն կրթություն։ Առաջավոր փորձի ավելի լայն փոխանակման և ընդհանրացման նպատակով նախատեսել ենք ավելի հաճախ անցկացնել բաց պարապմունքներ, լսել սկսնակ պրոպագանդիստների պարապմունքները, լավագույնների աշխատանքը լուսաբանել «Պրոպագանդիստական աշխատանքի փորձից» բյուլետենում։ Ծրագրված և անցկացվող բոլոր միջոցառումները հետապնդում են մեկ նպատակ. քաղաքական ուսուցման ճիշտ կազմակերպմամբ զարգացնել ունկնդիրների ստեղծագործական միտքը, նախաձեռնությունը, նպաստել աշխատանքային կարգապահության ամրապնդմանը, նրանց դաստիարակել անտարբերության, թափթփվածության, ամեն տեսակի բացասական երևույթների նկատմամբ անհանդուրժողության ոգով, մարդկանց ստացած գիտելիքները վերածել համոզմունքների և պրակտիկ գործերի, օգնել նրանց՝ հասնելու աշխատանքի արդյունավետության ու որակի էական բարձրացման։

«ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1983 թ.) պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված է, որ աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության նպատակով հանրապետության կուսկազմակերպություններում կատարվող աշխատանքը դառնում է ավելի բովանդակալից, բայց միևնույն ժամանակ այդ գործում կան նաև լուրջ թերացումներ։ Կենտկոմի որոշմամբ խնդիր է դրվում է՛լ ավելի բարելավել ու կատարելագործել ինտերնացիոնալ դաստիարակությունը։ Շրջանի կուսակցական-գաղափարախոսական ակտիվը լավ է հասկանում, որ հիմա չի կարելի աշխատել հին ձևով, առաջ շարժվել իներցիայի ուժով։ Անհրաժեշտ են կուսակցության ներկայիս պահանջներին ավելի լիովին համապատասխանող աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ։ Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները զգալի փորձ են կուտակել աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործում։ Այդ աշխատանքի բնույթը որոշող կարևոր առանձնահատկությունը մեր շրջանի բնակչության բազմազգ կազմն է։ Շրջկենտրոնում և գյուղերում այսօր ապրում և համատեղ աշխատում են ավելի քան 10 ազգությունների ներկայացուցիչներ։ Ամենուր կան բազմազգ աշխատավորական կոլեկ-



տիվներ։ Իսկ դա հենց այն միջավայրն է, որտեղ մարդիկ ամենից լավ են դաստիարակվում ինտերնացիոնալիզմի ոգով։ Բայց դա նաև մի շարք պատասխանատու խնդիրներ է դնում կուսկազմակերպությունների առջև։ Դրանցից են կադրերի ճիշտ ընտրությունն ու տեղաբաշխումը, շրջանի կուսակցական, սովետական և մյուս մարմիններում տարբեր ազգությունների աշխատավորների ներկայացուցչության ապահովումը։ Այդ սկզբունքը մենք միշտ խստիվ կիրառում ենք։ Օրինակի համար շրջսովետի ներկայիս դեպուտատներից 59-ը ազգությամբ հայ են, 15-ը՝ ռուս, 12-ը ադրբեջանցի, 1-ը՝ օս։ Նույն պատկերն է տիրում նաև շրջսովետի գործկոմի, նրա ապարատի, ինչպես նաև կուսշրջկոմի կազմում։

Խոսքը վերաբերում է, իհարկե, ներկայացուցչության ոչ ձևական նորմաներին. կադրերի հետ տարվող աշխատանքում թվաբանական սկզբունքն ընդհանրապես կիրառելի չէ։ Շրջկոմը, հետևողականորեն ձգտելով այն բանին, որ շրջանում ապրող բոլոր ազգությունները պատշաճ ձևով ներկայացվեն ղեկավար մարմիններում, առաջին հերթին ղեկավարվում է յուրաքանչյուր աշխատողի գործնական և բարոյաքաղաքական հատկանիշներով։

Ինտերնացիոնալ դաստիարակությունը իրականացվում է գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի բոլոր ուղղություններով, ինչպես նաև աշխատավորական կոլեկտիվների անմիջական տնտեսական գործունեությամբ։ Կուսակցական ուսուցման ցանցում, մասսայական քաղաքական լուսավորության մյուս օղակներում ուժեղացել է ուշադրությունը մարքս-լենինյան տեսության և ազգային հարցի վերաբերյալ ՍՄԿԿ ծրագրային դրույթների, ազգամիջյան հարաբերությունների արդի պրոբլեմների և մարդկանց մերձեցման պրոցեսների ուսումնասիրման նկատմամբ։ Ինտերնացիոնալ դաստիարակության հարցերը լայնորեն արտացոլված են գաղափարախոսական և քաղաքական-դաստիարակչական աշխատանքի կոմպլեքսային պլաններում, դրանց կարևոր տեղ է հատկացվում շրջկոմի դասախոսական խմբի և «Գիտելիք» ընկերության շրջանային կազմակերպության գործունեության մեջ։

Կուսկազմակերպություններն իրենց ամենօրյա պրակտիկայում կիրառում են աշխատանքի բազմաթիվ արդյունավետ ձևեր։ Հետաքրքիր և բովանդակալից են անցնում ինչպես շրջանի մասշտաբով, այնպես էլ բազմաթիվ բնակավայրերում կազմակերպվող բարեկամության երեկոները։ Լայն տարածում են ստացել միութենական հանրապետությունների տասնօրյակներն ու շաբաթները։ Արմատավորվում են ինտերնացիոնալիզմի ոգով տոգորված սովետական նոր ծեսեր և արարողակարգեր, ինչպիսիք են հեղափոխության, պատերազմի, աշխատանքի վետերանների մեծարումը, աշխատանքային փառքի հոբելյանների նշումը։ Ինտերնացիոնալիզմի, սոցիալիստական համերաշխության թեմայով կազմակերպվում են հարց ու պատասխանի երեկոներ, բանավոր հանդեսներ, զրույցներ ղեկավար աշխատողների հետ, հանդիպումներ։ Այդպիսի միջոցառումներից յուրաքանչյուրը նպաստում է շրջանի բնակիչների ինտերնացիոնալ գիտակցության ձևավորմանը, ՍՄԿԿ XXVI և Հայաստանի կոմկուսի XXVII համագումարների որոշումները կենսագործելու համար աշխատավորների մոբիլիզացմանը։ Աշխատավորների ինտերնացիոնալ բարեկամության ամրապնդմանը մեծապես նպաստում է սոցիալիստական մրցությունը։ Երկար տարիներ իրար հետ մրցում են Մեդովկայի և Նորաշենի, Պրիվոլնոյեի և Սարչապետի, Կալինինոյի և Մեծավանի տնտեսությունների կոլեկտիվները։ Նրանք ոչ միայն մրցում են, այլև կիսում իրենց փորձը, օգնում իրար, անցկացնում համատեղ միջոցառումներ։ Շրջանի աշխատավորական կոլեկտիվները բարեկամական կապեր են հաստատել երկրի մի շարք հանրապետությունների աշխատավորների հետ։ Մեր մրցակիցներն են Կրասնոդարի երկրամասի Կորենովսկի, Ուկրաինական ՍՍՀ Վիննիցիայի մարզի Տրոստյանեցի, Վրացական ՍՍՀ Դմանիսի շրջանների արտադրական կոլեկտիվները։

Առանձնապես սերտ, գործարար կապեր են հաստատվել մեր և եղբայրական Վրաստանի՝ մեզ հարևան Դմանիսի շրջանի միջև։ Ըստ ավանդույթի, ամեն տարվա սկզբին հանդիսավոր իրադրության մեջ կնքվում է սոցմրցու-

թյան պայմանագիրը։ Պարտավորությունների կատարման արդյունքները հանրագումարի են բերվում եռամսյակը մեկ, իսկ մրցության ընթացքը կանոնավոր լուսաբանվում է դիտողական ագիտացիայի միջոցներով և շրջանային մամուլի էջերում։

Երկու շրջանների բարեկամական կապերն արտացոլում են գտնում ոչ միայն սոցիալիստական մրցության մեջ։ Մենք երկուստեք մասսայական-քաղաքական աշխատանք ենք կազմակերպում դաշտերի և ֆերմաների աշխատավորների շրջանում, կոորդինացնում շրջկոմների գաղափարադաստիարակչական գործունեության պլանները, անցկացնում ընդհանուր գաղափարաքաղաքական միջոցառումներ, կատարում փորձի փոխանակում, համատեղ նշում մեր շրջանների կյանքի նշանակալի իրադարձությունները։ Այսպես, մշակել և հաստատել ենք երկու շրջանների մրցության 30-ամյակին նվիրված համատեղ միջոցառումների պլան, որով նախատեսված են տնտեսությունների, արդյունաբերական ձեռնարկությունների, հանրակրթական և երաժշտական դպրոցների, գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվների փոխայցելություններ, միջշրջանային մարզական մրցումներ։

«Գիտելիք» ընկերության շրջանային կազմակերպության դասախոսները զեկուցումներով ու զրույցներով հանդես են գալիս Դմանիսի շրջանի աշխատավորների առջև, նրանց ծանոթացնում մեր հանրապետության, մեր շրջանի զարգացման պատմությանն ու հեռանկարներին։ Իրենց հերթին, Կալինինոյի բնակչության առջև հետաքրքրական թեմաներով հանդես են գալիս Դմանիսի դասախոսները։ Մեծ ուշադրություն է նվիրվում աշխատանքի փորձի փոխանակմանը։ Դմանիսցիները գյուղատնտեսության մեջ բրիգադային կապալի ներդրման իրենց փորձը սիրով կիսել են Կալինինոյի շրջանի գյուղատնտեսության մասնագետների, ղեկավարների և գաղափարախոսական աշխատողների հետ։ Ներկայումս բրիգադային կապալը ամենուր ներդրվում է նաև մեր շրջանի տնտեսություններում։

Կալինինոյի պատվիրակությունները ծանոթացել են սոցիալ-կենցաղային, շրջկենտրոնի բարեկարգման, դպրոցականների ազատ ժամանակի կազմակերպման դմանիսցիների փորձին։ Իսկ երբ Դմանիսիում որոշեցին ստեղծել «Բարեկամություն» թանգարան, նրանց հայ բարեկամներն ամենաակտիվ կերպով մասնակցեցին դրան և թանգարանի համար ուղարկեցին շրջանի զարգացման պատմությանն ու հեռանկարներին վերաբերող նյութեր։

Մարդկանց ինտերնացիոնալ դաստիարակության հզոր միջոց է ռուսաց լեզուն, որի ուսումնասիրման հարցը լուծում է գլխավորապես դպրոցը։ Ուստի և ռուսաց լեզվի դասավանդման որակի, բնակչության շրջանում դրա պրոպագանդման հարցերը շարունակ գտնվում են շրջկոմի, սկզբնական կազմակերպությունների տեսադաշտում։ Մենք անշեղորեն ձգտում ենք այն բանին, որ ռուսաց լեզվին ազատ տիրապետի միջնակարգ դպրոցի շրջանավարտներից յուրաքանչյուրը, ինչպես պահանջում են կուսակցության որոշումները։

Աշխատավորների գաղափարախոսական, հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության, նրանց ստեղծագործական ակտիվության զարգացման նպատակով շրջանում տարվող հետևողական աշխատանքը տալիս է լավ արդյունքներ։ Մարդիկ գործում են ոգևորությամբ, լի են շրջանի առջև ծառացած խնդիրները հաջողությամբ կատարելու, պարենային ծրագրի իրականացման ասպարեզում իրենց ավանդը մուծելու վճռականությամբ։ Ինչ խոսք, այս բնագավառում դեռ անելիքներ շատ ունենք, և շրջկոմը հետևողական աշխատանք է տանում՝ հաղթահարելու առկա թերությունները։

ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ, ԿԵՆՍԱԳՈՐԾԵԼՈՎ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումները, մշակել են գիտաաթեիստական պրոպագանդայի կազմակերպումը բարելավելու, բնակչության շրջանում տարվող աթեիստական աշխատանքի ձևերն ու բովանդակությունը կատարելագործելու կոնկրետ միջոցառումներ։ Կուսկազմակերպությունները աթեիստական պրոպագանդայի կազմակերպումը սերտորեն կապակցում են կոմունիստական դաստիարակու-



թյանը, ձգտում այն բանին, որ գաղափարաքաղաքական, աշխատանքային, հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության միջոցառումները կրեն նաև որոշակի աթեիստական բնույթ։

Բարելավվել է աթեիստական դաստիարակության աշխատանքի պլանավորումը։ Շրջկոմը, սկզբնական կազմակերպությունները մշակել են հեռանկարային կոմպլեքսային պլաններ, որոնցով նախատեսված են ոչ միայն աթեիստական աշխատանքի գլխավոր ուղղություններն ու հիմնական միջոցները, այլև գաղափարախոսական կազմակերպությունների մասնակցությունը դրանց իրականացմանը, կրոնի տարրերից զերծ նոր ծեսերի և արարողակարգերի արմատավորումը, աթեիստական աշխատանքը կազմակերպող կադրերի պատրաստումը։

Աթեիստական աշխատանքի կոորդինացումն իրականացնում է շրջկոմի գաղափարախոսական հանձնաժողովին առընթեր աթեիստական դաստիարակության խորհուրդը, որը մշակում է մեթոդական ցուցումներ՝ հակակրոնական աշխատանքի գործնական ազդեցությունն ուժեղացնելու համար։ Աթեիստական թեմաներով անցկացնում ենք կուսկազմակերպությունների քարտուղարների, քաղինֆորմատորների սեմինար-խորհրդակցություններ, գիտագործնական կոնֆերանսներ, որոնք բարձրացնում են աթեիստական դաստիարակության աշխատանքով զբաղվող մարդկանց տեսական ու գործնական պատրաստականությունը։ Ունկնդիրների գիտամատերիալիստական աշխարհայացքի ձևավորման պրոբլեմներին լուրջ ուշադրություն է նվիրվում կուսակցական ուսուցման, տնտեսագիտական կրթության օղակներում, որտեղ լիովին օգտագործվում է մատուցվող նյութի աթեիստական պոտենցիալը։

Գիտական աթեիզմի պրոպագանդումը խարսխվում է մասսայական-քաղաքական, գաղափարադաստիարակչական գործունեության պրակտիկայում կատարված դրական տեղաշարժերի վրա։ Նկատելիորեն խորացել է դրա բովանդակությունը, բարձրացել գիտականությունը։ Աթեիստական աշխատանքը չի սահմանափակվում միայն կրոնական գաղափարախոսության ու բարոյականության քննադատությամբ։ Լայնորեն պրոպագանդում ենք սովետական ապրելակերպը, գիտամատերիալիստական աշխարհայացքի մարդասիրական բովանդակությունը, վստահություն ենք ներշնչում մարդու ուժերի նկատմամբ, ձևավորում անհատի սոցիալական լավատեսությունը և նրա ակտիվ կենսադիրքորոշումը։ Խիստ կարևոր է, որ հավատացյալները հանձինս աթեիզմի պրոպագանդիստների տեսնեն ոչ թե իրենց հավատը կործանող քննադատների, այլ աշխարհի վերակառուցման իրատեսական ծրագրի կենսագործման համար պայքարողների, ամենամարդասիրական գաղափարներ կրողների։

Աթեիստական դաստիարակության նպատակով տարվող աշխատանքն աշխուժացել է շրջանի ակումբներում և գրադարաններում, որտեղ կազմակերպվում են թեմատիկ, հարց ու պատասխանի, արտադրության առաջավորների, պատերազմի և աշխատանքի վետերանների մեծարման երեկոներ։ Գրադարաններում ձևավորված աթեիստի անկյունները պարբերաբար թարմացվում են նոր գրականությամբ։ Կազմակերպվում են բանավեճեր, բանավոր հանդեսներ, որոնց ընթացքում հանդես են գալիս «Գիտելիք» ընկերության դասախոսներ, ֆիզիկայի, քիմիայի, կենսաբանության ուսուցիչներ, գյուղատնտեսության և արդյունաբերության մասնագետներ։

Դպրոցների կուսկազմակերպություններն սկսել են ավելի մեծ ուշադրություն նվիրել աշակերտների աթեիստական դաստիարակությանը։ Դասղեկների դաստիարակչական աշխատանքի պլաններում մտցվել է «Աթեիստական դաստիարակություն» հատուկ բաժինը, որով նախատեսվում են զանազան միջոցառումներ, դասախոսություններ, զրույցներ, էքսկուրսիաներ, հանդիպումներ Հայրենական մեծ պատերազմի վետերանների, տարբեր սերունդների ներկայացուցիչների հետ։

Իր աշխատանքն է կատարելագործում ժողովրդական դեպուտատների շրջսովետի գործկոմին առընթեր նոր ավանդույթների, ծեսերի և արարողակարգերի ներդրման հանձնաժողովը։ Առաջին պլան են մղվել նոր՝ սոցիալիս-

*տական բովանդակություն ունեցող ավանդույթներն ու տոները. մեծ Հոկտեմբերի, Մայիսի մեկի, Մարտի 8-ի տոները, Սահմանադրության, Հաղթանակի օրերը և այլն: Դրանք նշելիս ամեն անգամ ձգտում ենք օգտագործել նոր, հետաքրքրական տարրեր:*

*Քաղաքական բարձր մակարդակով են անցնում գյուղատնտեսության, թեթև արդյունաբերության, առողջապահության աշխատողների, ուսուցչի, երեխաների պաշտպանության օրերը և այլն: Շրջանում հաստատվել և ավանդական են դարձել անասնապահի, բերքի, Վրաստանի ու Հայաստանի շրջանների երիտասարդության հանդիպման, Հայրենական մեծ պատերազմում զոհվածների հիշատակի օրերը: Հանձնաժողովը մշակել և շրջանի աշխատավորների կենցաղում արմատավորում է ամուսնության հանդիսավոր գրանցման, երեխայի ծնունդը նշելու, երիտասարդներին սովետական բանակ ճանապարհելու, անասնապահ ձեռնադրվելու նոր ծեսեր և ավանդույթներ:*

*Սակայն, վերլուծելով մեր կատարած աշխատանքը «Հայաստանի հանրապետական կուսակցական կազմակերպությունում ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումների կատարման ընթացքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման լույսի ներքո, հարկ է նշել, որ դեռևս կան թերություններ, չլուծված պրոբլեմներ: Մենք շատ անելիքներ ունենք մարդկանց հետ տարվող անհատական աշխատանքի մակարդակը բարձրացնելու գործում:*

*Դեռևս ոչ բոլոր կուսկազմակերպություններն են հարկ եղածին պես ըմբռնում աթեիստական նպատակային դաստիարակության անհրաժեշտությունը: Կան մարդիկ, որոնք գտնում են, թե այդ բնագավառում մեզանում ամեն ինչ բարեհաջող է, հավատացյալները ազդեցություն չեն գործում անհավատների վրա, չկան գործող եկեղեցիներ, հետևաբար և, կարիք չկա լսելու աթեիստական աշխատանքի կազմակերպիչների, ագիտատորների կանոնավոր հաշվետվությունները: Անբավարար է ընդհանրացվում աթեիստական դաստիարակության առաջավոր փորձը: Հարկ է նաև նշել, որ կուսկազմակերպություններ, աշխատավորական կոլեկտիվներում աթեիստական դաստիարակությունը կազմակերպողները կինոնկարների, թեմատիկ պլակատների սուր պակաս են զգում: Անհրաժեշտ է լուծել աթեիստական աշխատանք ծավալող ավելի որակյալ կադրեր պատրաստելու հարցը:*

*Հայաստանի հանրապետական կուսկազմակերպության վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքը բարելավելու մեր ուղեցույցն է: Շրջանի կուսկազմակերպությունների խնդիրն է՝ այն կենսագործել լիովին, իրենց բոլոր ուժերն ուղղել աշխատանքում տեղ գտած թերությունների վերացմանը, ապահովել հնգամյակի հաջող եզրափակումը և ՍՄԿԿ XXVII համագումարը դիմավորել աշխատանքային նոր նվաճումներով:*

---



# ՎԻՄԱԳԻՐ ՏՈՂԵՐ

**Ս. ԲԱԲԼՈՒՄՅԱՆ**

ԱՅԴ ԱՆՍՈՎՈՐ գրքի առաջին էջը գրվում էր ողջ քաղաքի աչքի առջև: Ամեն առավոտ, արևածագի հետ քաղաքի վրա տարածվում էր քարտաշների մուրճերի բյուրեղյա զրնգոցը:

Բացված գրքի ձևով մոտեցված հուշարձանն արագորեն վեր էր բարձրանում: Վարպետներն աշխատում էին եռանդով՝ քարի վրա փորագրելով Համառուսաստանյան Կենտգործկոմի որոշումը. նախկին Ալեքսանդրոպոլին այսուհետև շնորհվում էր Լենինական անունը:

Գրքի երկրորդ էջը դեռևս անձեռնմխելի էր մնում, չնայած նրա վրա գրվելիք խոսքերը քաղաքի բնակիչներն արդեն անգիր գիտեին. դրանք երկրի Գերագույն սովետի նախագահության հրամանագրի տողերն էին՝ Լենինականը Ժողովուրդների բարեկամության շքանշանով պարգևատրելու մասին: Գիրք-հուշարձանի հաջորդ էջերը որոշեցին թողնել մաքուր: Դրանք կլրացնեն գալիք սերունդները՝ քարի վրա կարձանագրեն հարազատ քաղաքի փառապանծ տարեգրության ուղենշային անցքերը:

Լենինականի այս հուշարձանը սոսկ աչք չի շոյում: Այն հուշեր է արթնացնում, մղում խորհրդածությունների ներկայի և ապագայի մասին: Այստեղից լսվում է ոչ հեռվում ցայտող շատրվանների մեղմ խշշոցը, որը կարծես այդ հիանալի գրքի բացվող էջերի շրշյունը լինի, գիրք, որի հեղինակակիցը կարող է լինել ամեն մեկը, ով իր քաղաքը կպանծացնի բարի արարքով, լուսավոր մտքով, աշխատանքային արիությամբ:

Բայց նախքան քարագործ վարպետի ձեռքը ողորկ տուֆի վրա կփորագրի հաջորդ՝ ժողովրդի հիշողության մեջ մնալու արժանի տողը, յուրաքանչյուր այցելող մտովի գրում է իրենը, ներքինը... Մարդու և հուշարձանի լուռ երկխոսությունը նման է սևագրության, որը մեկ անգամ չէ, որ պիտի արտագրվի, մինչև որ ծնվեն քարի վրա հավերժանալու արժանի խոսքը, գործը, միտքը:

Ամեն իրիկուն, գործերս վերջացնելուց հետո, ես գալիս էի հիանալու վարպետների հըմուտ աշխատանքով: Նայում էի, թե ինչպես է քարտաշի հատիչը օրեցօր լրացնում «գրքի» երկրորդ էջը: Ի՞նչը ես արժանի կհամարեի գրել հաջորդ էջին, հանձնել ի պահ: Այս մասին խորհելիս իրար ետևից վերհիշում էի քաղաքի հետ իմ այս անգամվա հանդիպումից առացած տպավորությունները, մտովին դրանք դրոշմելով տուֆե գրատախտակին, ապա ջնջելով ու փոխարինելով մեկը մյուսով...

Իսկ քաղաքը նախապատրաստվում էր տոնին, սպասում բարձր պարգևի հանձնմանը: Ահա ուր որ է երկինք էին ցայտելու քաղաքի ուսանողական թաղամասի շատրվանի զրնգուն շիթերը: Ավարտին էր մոտենում դրամատիկական թատրոնի հիմնովին վերակառուցումը, իր բնակարանամուտին էր նախապատրաստվում շախմատի տունը: Ես ծոցատետրիս մեջ գրանցում էի նորակառույցների հասցեները: Սակայն, մոտիկից ծանոթանալով դրանց, հաճախ հայտնաբերում էի ոչ թե նորը, այլ հոգատարությամբ վերականգնված, շտկված կամ շարունակված հինը: Ոչնչով չզիջելով նորակառույցներին, դրանք օգնում էին լուծելու մեկ այլ խնդիր՝ պահպանել, իսկ որտեղ էլ որ հնարավոր է, վերականգնել հինավուրց Գյումրվա պատկերը:

Քաղաքի կենտրոնի մի զգալի մասը հայտարարված է արգելոց՝ ազգային ճարտարապետության թանգարանի գլխավորությամբ: Վերջինիս կողքին է գտնվում հայտնի մոնումենտալիստ, քանդակագործ Սերգեյ Մերկուրովի տուն-թանգարանը, քիչ հեռվում Ավետիք Իսահակյանի տուն-թանգարանն է:

Գայի անվան փողոցում, կաթնախոհանոցի շենքի հիմքերն ամրացնելիս, վերանորոգող-

ները հողի տակ մեծ ընկուղներ հայտնաբերեցին: Դրանք մաքրեցին, հատակն ու պատերը քարով երեսպատեցին, կամարակապ առաստաղը ծածկեցին տախտակներով: Մի արտառոց գեղեցիկ բան ստացվեց, որը նվիրեցին աշխատանքի վետերաններին. ակումբ բացեցին, որտեղ նրանք կարող են հանդիպել, կարդալ, ճաշել:

Կա մի քնքուշ առանձնահատկություն, որը քաղաքի բնակիչների հետ շփվելիս հաճախ ես հաճույքով նկատում. դա հարգանքի մեծ տուրքն է ավագների, տարեցների նկատմամբ: Ծանոթանալիս անպայման պրպտում, հասնում են մինչև ակունքները՝ հարցնում են ծնողների, մոտիկ ու հեռու ազգականների մասին, և նայած թե նրանց ինչքան են հարգում քաղաքում՝ կազմվում է առաջին պատկերացումը ծանոթացողների վերաբերյալ: Դրանով իսկ, անկախ տվյալ անձնավորության գերդաստանի մեծերի համբավից, թողած բարոյական ժառանգության չափից, յուրաքանչյուր ոք ձգտում է կա՛մ պահպանել «ստացածը», կա՛մ լրացնել պակասը: Այդպիսին են չգրված օրենքը, խստապահանջ հասարակական կարծիքի թելադրանքը:

Տեքստիլագործների, երկաթուղայինների, ուսուցիչների դինաստիաներին պատկանելը Լենինականում մեծ պատիվ է: ՍՍՀՄ պետական մրցանակի դափնեկիր, տեքստիլ կոմբինատի վարպետի օգնական Մ. Ստեփանյանը շարունակեց հոր գործը և նույնը սովորեցրեց իր կրտսեր եղբայրներին: Գնացքներ է վարել նաև Լենինականի դեպոյի այժմյան պետ Գ. Հակոբյանի պապը, ասենք, ինքն էլ մինչև գիտությունների թեկնածու դառնալը և դեպոն գլխավորելը անցել է երկաթուղային ծառայության բոլոր աստիճաններով:

Ամբողջ քաղաքը ճանաչում է նաև քեռի Միշային՝ լենինականյան բժիշկ Այբոլիտին: Շուրջ քառասուն տարի նա իր տիկնոջ հետ միասին բուժում է լենինականցիներին: Ի նշան հարգանքի իրենց սիրեցյալի հանդեպ՝ քաղաքացիները նրա համար անսովոր հուշարձան են մտահղացել. մանկական դեղատան ցուցափեղկում թղթաձողից կանգնեցված է բնական մեծության քեռի Միշան և, մի տեսակ չարաճճիորեն նայելով ակնոցի վերևից, գդալի մեջ է լցնում դեղը: Պնդում են, թե, իբր, այդ դեղատնից գնված դեղերն օգտագործելիս պատիկները շատ շուտ են ապաքինվում:

Թե՛ կոլեկտիվում, թե՛ ընտանիքում առաջին խոսքը վետերանններինն է: Խորհրդի և օգնության համար դիմում են նրանց, որովհետև նրանք շատ բան գիտեն ու կարող են: Թոշակի անցնելով, լենինականցի վետերաններն իրենց կարողությունների համեմատ գործ են գտնում և շարունակում են աշխատել: Իրար հանդիպելիս նրանք խոսում են ոչ թե կուտակած բարիքների, այլ աշխատանքին նվիրաբերած տարիների մասին. քառասուն տարի՝ տեքստիլ կոմբինատում, հիսուն տարի՝ դեպոյում, նույնքան էլ կուսակցության շարքերում. ահա թե ինչով են պարծենում լենինականցի վետերանները: Երիտասարդները լսում են ու ականջներին օղ անում:

Քեռի Միշայի հետ ունեցած զրույցներից մեկում ես հարցրեցի, թե որն է լենինականցիների երկարակեցության գաղտնիքը: Նա այսպես պատասխանեց.

— Մեր առջև նպատակ ենք դնում և ձգտում դրան՝ մինչև հասնելը:

— Բայց,— նկատեցի ես,— երկար ապրել ցանկանում են ոչ միայն Լենինականում:

— Բանը միայն ուղղակի երկար ապրելը չէ,— կարծես զարմանալով, որ դա չեմ հասկանում, վրա բերեց նա,— այլ... Ասենք,— ձեռքը թափ տալով ավելացրեց նա,— ավելի լավ է ես քեզ մի գիրք տամ՝ կարդա...

Հաջորդ օրն առավոտյան նա ինձ բերեց Մկրտիչ Արմենի հանրահայտ **Հեղնար աղբյուր** գիրքը: Մի պահ ուզեցի ասել, թե այդ վեպը գրեթե անգիր գիտեմ, բայց գնահատելով նրա չարչարանքը և վախենալով, թե այդպես վարվելով կարող եմ վշտացնել, անխոս վերցրեցի այն: Եվ ճիշտ արեցի: Հյուրանոցի իմ սենյակի լռության մեջ նորից ընթերցեցի և այս անգամ ինձ համար նորովի հնչեցին գրքի շատ տողեր, դրանք մի տեսակ մարդ—աշխատանք—կյանք փոխհարաբերության փիլիսոփայական հիմնավորման իմաստ ու հնչեղություն ձեռք բերեցին: Եթե ինձ մնար, ես այդ տողերը կքանդակեի գիրք-հուշարձանի էջերից մեկին: Դատեցեք ինքներդ.

«Լենինականի հին թաղերից մեկում՝ Ձորի Բողազում, որն ամենայն իրավամբ դեռ կարող էր կրել Գյումրի անունը, իր փոքրիկ տան մեջ մեռնում էր աղբյուրների հռչակավոր վարպետ ուստա Մկրտիչը:

Թեև նա արդեն վաթսունհինգ տարեկան էր, բայց ծերությունը չէր նրա մեռնելու պատճառը, որովհետև նա դեռ ամրակազմ էր և առողջ... Նա մեռնում էր, որովհետև հասել էր իր նպատակին, որովհետև վերջացրել էր իր հաշիվներն աշխարհի հետ: Նա դրսում այլևս ոչինչ չուներ անելու:

Իր վարպետության ողջ քառասուն տարիների ընթացքում նա ճիշտ այդպես էլ համոզված էր, որ երբ ավարտի իր քառասուներորդ աղբյուրը՝ պիտի մեռնի:

...Երբ նա դեռ քսանվեց տարեկան էր և



ավարտեց իր առաջին աղբյուրը՝ քառասունը նրան թվաց այնքա՜ն շատ և այն իրականացնելու վերջին կետն այնքա՜ն հեռու:

...Սակայն տարիներն ու աղբյուրները աննկատելի շարվեցին, և նա մի օր մեծ զարմանքով նկատեց, որ արդեն կառուցել է քսաներորդ աղբյուրը, ուրեմն և, արդեն կիսով չափ կատարել է իր նպատակը:

Երեսունչորսերորդի վրա նա հիվանդացավ և հույսը կտրեց: Կարծում էր, թե դա վերջի՛նը կլինի: Բայց հետո առողջացավ:

...Եվ նա շարունակեց կառուցել ու ափսոսալ, որ իր կյանքի երիտասարդ տարիներին նպատակ էր դրել քառասուն աղբյուր և ոչ թե յոթանասունյոթ կամ հարյուր ու մեկ: Այժմ նա համոզված էր, որ եթե նույնիսկ եռապատկեր աղբյուրների թիվը, դարձյալ կիրականացներ այն:

...Բայց այժմ այդ միտքն այլևս իզուր էր, և միայն մի բան էր մնում ուստա Մկրտիչին՝ մեռնել: Եվ նա մեռնում էր հանդարտ, տխուր և խորիմաստ մահով:

Այդ մահն սկսվեց վերջին աղբյուրը կառուցելուց անմիջապես հետո: Երբ կառուցումը լիովին ավարտվեց, ուստա Մկրտիչը հանկարծ զգաց, թե ինչպես պաղեց արյունն իր երակներում, և այնտեղ՝ իր ներսում, կտրվեց մի բան... Նա եկավ տուն, պառկեց, որպեսզի այլևս երբեք վեր չկենա...»:

Ահա այսպիսի տխուր պատմություն: Իրավացի էր քեռի Միշան՝ երկար է ապրում միայն նա, ով իմաստալից կյանքով է ապրում: Իսկ ինքը, կատակելով, իրեն անմահների շարքին է դասում, որովհետև իր առջև նպատակ է դրել բուժել ոչ թե քառասուն, յոթանասունյոթ կամ հարյուր ու մեկ պատիկների, այլև բոլոր նրանց, ովքեր իր օգնության կարիքն ունենան:

Լենինականում «վարպետ» բարձրաստիճան մականունը շնորհում են նրան, ով իր գործում հասել է կատարելության գագաթին: Լենինականցիները Վարպետ են կոչել իրենց մեծ համաքաղաքացուն՝ Ավետիք Իսահակյանին: Նույն կերպ են կանչում այսօր սպորտի վաստակավոր վարպետ, դյուցազն Յուրիկ Վարդանյանին: Այո, նաև շատ քարագործ վարպետների, երաժիշտների, հացթուխների, դերասանների... Վարպետներ Լենինականում իրոք շատ կան և դրա պատճառներից վերջինը չէ և այն հանգամանքը, որ քաղաքում միշտ շատ են եղել արհեստավորները: Դրանցից լավագույններն էլ դարձել են վարպետներ:

Նրանց ձեռքի և երևակայության զարմանահրաշ կերտվածքները զարդարում են Լենինականը նաև այժմ, մեր օրերում, երբ ժողովրդական հմուտ ճարտարագործների ստեղծագործությունները ավելի հաճախ կարելի է տեսնել միայն թանգարաններում: Իսկ այստեղ դրանք փողոցներում են, հասարակական շինությունների վրա, զբոսայգիներում, պողոտաներում: Վարպետ Օնիկի եզակի ջահը զարդարում է քաղաքի երկաթուղային կայարանի նոր շենքը: Վարպետի որդիները դարբնել են ճաղեր՝ մեկը մյուսից գեղեցիկ, և նույնպես դրանք նվիրել են հարազատ քաղաքին: Քարագործ վարպետ Վարդանն իր տղաների հետ միասին (սա ևս դինաստիա է) տուֆի վրա կարողանում են այնպիսի նախշեր քանդակել, որ թվում է, թե դրանք ոչ թե մուրճով ու հատիչով են ստեղծված, այլև մետաքսե նըրբահյուս ժանյակ են: Մի խոսքով, Լենինականը հմուտ ձեռքերի տեր տաղանդավոր վարպետների պակաս չի զգում, ընդհակառակը, նրանց օգնությանն են դիմում այնտեղ, ուր ժողովրդական ավանդույթները պահպանելու մասին ժամանակին չեն հոգացել: Միջանկյալ նկատեմ, որ Լենինականն արտադրում է նաև ամենաարդիական դարբնոցամամլիչային սարքեր, քարկտրիչ մեքենաներ և շատ այլ բաներ, որոնք Հայաստանի արդյունաբերության հպարտությունն են, սակայն այժմ խոսքն այդ մասին չէ:

Այն, որ Լենինականը հանրապետության ոչ մի քաղաքի նման չէ, մեծապես արդյունք է բուն վարպետների և վարպետ դառնալ ձգտողների միջև եղած մրցակցության: Այդ անվերջանալի «վեճին» մասնակցում են ոչ միայն առանձին անհատներ, այլև ամբողջական կոլեկտիվներ: Ով առաջին անգամ է ոտք դնում Լենինական, անպայման ուշադրություն կըդարձնի հասարակական տրանսպորտի կանգառների ձևավորման ինքնատիպության վրա: Դրանք այնքան հնարամտությամբ, այնքան ճաշակով ու մարդկանց համար հարմարավետ լինելու մասին հոգացողությամբ են կատարված, որ պարզապես տրանսպորտ բարձրանալ-իջնելուն ծառայող հարթակների փոխարեն տեսնում ես իրոք ճարտարապետական արվեստի մի-մի նմուշ: Յուրաքանչյուր կանգառ, իսկ դրանք երեսունից ավելի են, կրում է կառուցող ձեռնարկության անունը. «Հղկող», «Երկաթուղային», «Տեքստիլագործ», «Շինարար»... Թե դրանցից որն է ամենալավը, թող քաղաքացիները որոշեն, բայց դրանք բոլորն էլ լավ են արդեն այնքանով, որ դրանց հեղինակները ձգտել են գերազանցել միմյանց, և ոչ ոք չի ուզեցել զիջել:

Մրցակցությունը, առաջինը կոչվելու ձգտումը հատուկ է լենինականցիներին ամեն ինչում:

Կուսակցության քաղկոմի առաջին քարտուղար Դոնարա Հարությունյանը, համաձայնվելով այս կարծիքի հետ, մի հետաքրքրական պատմություն արեց այն մասին, թե ինչպես շինարարներն իրենք են հրաժարվել ստորագրել «Լոկոմոտիվ» կոոպերատիվ տան ընդունման ակտը: Անսովոր իրավիճակ է, այնպես չէ՞: Ստորագրելուց հրաժարվում է ոչ թե ընդունողը, այլ հանձնողը: Հանձնաժողովի «բավարար» գնահատականը շինարարներին չի գոհացրել: Պակաս-պռատը լրացնելուց, իսկ որտեղ պետք է եղել վերակառուցելուց հետո նրանք հասել են բարձրագույն գնահատականի: Այ թե այսպե՛ս լինեն միշտ և ամեն ինչում:

Լենինականում շատ են կառուցում, բայց ավելի շատ վերակառուցում են: Դրանով իսկ, կրկնում եմ, ոչ միայն պահպանում են քաղաքի դեմքը, այլև զգալի տնտեսական շահ են ստանում: Երկրորդ կյանք ստացած տներում ավելի հաճախ տեղադրում են առևտրի, կենցաղի, հասարակական սննդի օբյեկտներ, կուլտուրայի հիմնարկություններ:

Քաղգործկոմի նախագահ Էմիլ Կիրակոսյանը բերեց մի բնորոշ օրինակ.

— «Գյումրի» ռեստորանի նման շինության արժեքը, եթե կառուցելու լինենք հիմքից մինչև ձեղունը, նախահաշվով կկազմի երեք հարյուր հազար ռուբլուց ոչ պակաս: Իսկ մեզ վրա այն նստել է ութսուն հազար: Որովհետև ամուր հիմք և հուսալի ձեղուն ուներ: Փոխեցինք ներքին միջնորմները, փոխեցինք ջրատար խողովակները, ճաշակով ձևավորեցինք՝ ստացվեց քաղաքի լավագույն ռեստորան: Եկող տարի,— շարունակեց նախագահը,— կհանձնենք քաղաքի ամենախոշոր հանրախանութը: Այն վեր է բարձրանում ի հաշիվ հասարակական սննդի օբյեկտների կառուցումից, իսկ ավելի ճիշտ՝ «չկառուցումից» տնտեսված միջոցների: Ճաշարանների, սրճարանների, թեյարանների, հացի խանութների համար տրամադրում ենք հարմարավետ նկուղներ, վերանորոգված տներ, որոնցում այլևս մարդիկ չեն ապրելու, իսկ այն մեծ գումարները, որ նախատեսված էին հասարակական սննդի ցանցի ընդարձակման համար, օգտագործվեցին առավել նպատակային ձևով՝ ներդրվեցին հանրախանութի շինարարությունում:

Խելամտություն դրսևորելով այնտեղ, ուր կարելի է տնտեսել պետական կոպեկը, լենինականցիներն առանց տատանվելու իրենց աշխատավորական ռուբլին չեն խնայում, հենց որ բանը հասնում է իրենց արժանապատվությանը, պատվին, հիշողությանը: Հայրենական պատերազմում զոհվածների պատվին կանգնեցված հոյակերտ կոթողը հիմնականում կառուցվել է քաղաքացիների միջոցներով: Իհարկե, քաղաքային իշխանությունները կամավոր մուծումների կարիքը չէին զգում, որովհետև, ինչպես հայտնի է, ժողովրդի համար սրբազան կառույցների համար մեզանում ոչինչ չեն խնայում: Բայց բոլոր նրանք, ովքեր պատերազմում կորցրել էին ամուսնուն, որդուն, եղբորը, հորը, ինչպես նաև նրանք, որոնց կողքով էր անցել դժբախտությունը, որոշեցին. թող պատվանդանի հազարավոր քարերից գոնե մեկը իմ կողմից լինի:

Հայտնի է, որ մեծ Հայրենականի ժամանակ զավթիչների ոտքը Լենինական չի մտել, բայց պատերազմ սանձազերծած գերմանացիներին լենինականցիները շատ շուտով տեսան: Այստեղ, Թուրքիայի հետ սահմանային երկաթուղակայարանում, տեղի ունեցավ սովետական դիվանագետների փոխանակումը գերմանական դեսպանատան աշխատակիցների հետ: Ավելի ուշ Լենինական բերեցին գերմանացի առաջին վիրավոր գերիներին: Հոսպիտալը, որտեղ նրանց տեղավորեցին, հեռու չէր այն մյուսից, ուր պառկած էին մեր վիրավորները: Եվ պատահում էր այնպես, որ միևնույն ընտանիքից հայրն ու մայրը ռազմաճակատ մեկնած իրենց որդու «բաժինը» տանում էին թե՛ մեկ, թե՛ մյուս հոսպիտալ, իսկ երեկոյան տուն դառնալով, իմանում էին «սև թղթի» մասին: Ծանր էր, անտանելի ծանր, բայց պետք էր դիմանալ... ու դիմացան:

Ետպատերազմյան տարիներին Լենինական հայրենադարձվեցին հարյուրավոր ընտանիքներ Սիրիայից, Լիբանանից, Իրանից, Եգիպտոսից: Չնայած լենինականցիների տներում նեղվածք էր, բայց ոչ ոքի փողոցում չթողեցին. մինչև հայրենադարձների համար բնակարանների կառուցվելը նրանց տեղավորեցին սեփական տներում, եղածը «ախպերաբաժին» արեցին: Տաշքենդի երկրաշարժի տարին «Լենշին» տրեստի լավագույն վարպետներն իրենց օգնության ձեռքերը մեկնեցին դժբախտության մեջ ընկած ուզբեկ եղբայրներին: Լենինականն իր ունեցածն ու կարեցածը բաժանում է եղբայրացած քաղաքներ Քութաիսիի, Տարտուի, Կիրովաբադի հետ: Եվ պատահական չէ, որ Լենինականը շքանշանով պարգևատրելու կապակցությամբ առաջին շնորհավորանքներն ստացվեցին այդ քաղաքներից:

Զրնգում են մուրճերը... Քարտաշի հատիչը արդեն ավարտում է գիրք-հուշարձանի երկրորդ էջը: Այն նոր սերնդին ավետում է եղածի մասին: Այսուհետև տարեգրությունը պետք է շարունակեն երիտասարդները:



# ՊԱՀԱՆՋՄՈՒՆՔՆԵՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՎԵՐԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱԿԱՐԳՈՒՄ

Գիտատեխնիկական և սոցիալ-տնտեսական առաջընթացի արագացումը քանակական և կառուցվածքային էական փոփոխություններ է առաջացնում բնակչության անձնական պահանջմունքների համակարգում: Սովետական մարդկանց կենսամակարդակի հետագա բարձրացման, պարենային ծրագրի կենսագործման, նոր մարդու ձևավորման բնագավառում ՍՄԿԿ XXVI համագումարի և նրան հաջորդած՝ ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների առաջադրած խնդիրների իրականացումն անմիջականորեն առնչվում է գիտականորեն հիմնավորված անձնական պահանջմունքների համակարգի տեսական և գործնական ուսումնասիրության հետ: Տվյալ պրոբլեմի հրատապությամբ է արժեքավորվում գրախոսվող աշխատությունը*, որի նպատակը անձնական պահանջմունքների ձևավորման և զարգացման ընդհանուր պրոցեսի, հատուն սոցիալիզմի պայմաններում դրանց բարձրացման սոցիալ-տնտեսական առանձնահատկությունների վերլուծությունն է:

Աշխատության մեջ հանգամանորեն քննարկվում են պահանջմունքների սոցիալ-տնտեսական էությունը և բնույթը: Անդրադառնալով պահանջմունքների բուրժուական տեսություններին, հեղինակը ցույց է տալիս դրանց գիտամեթոդաբանական չհիմնավորվածությունը և սուբյեկտիվիստական ուղղվածությունը:

Պահանջմունքները դիտելով որպես կենսական անհրաժեշտություն՝ այստեղ տրված են դրանց առանձնահատկությունների ինքնատիպ բնորոշումներ: Գիտական որոշակի հետաքրքրություն է ներկայացնում անձնական պահանջմունքների համակարգի վերլուծությունը, բացահայտվում են դրանց ձևավորման օրինաչափությունները:

Ուշագրավ է հասարակության առաջընթացի տարբեր ժամանակաշրջաններում անձնական պահանջմունքների զարգացման առանձնահատկությունների բացահայտումը: Այստեղ հեղինակը, բնութագրելով պահանջմունքների վեհացման օրենքի գործողության մեխանիզմը, տալիս է այդ օրենքի նոր ձևակերպում: Սոցիալ-տնտեսական հարաբերությունների հանգամանալից վերլուծության հիման վրա լուսաբանվում են հասարակական-տնտեսական տարբեր ֆորմացիաների պայմաններում անձնական պահանջմունքների կատարելագործման օրենքի գործողության յուրահատկությունները:

Գրքում անձնական պահանջմունքները բնորոշվում են իբրև սոցիալիստական հասարակության անդամների տնտեսական հարաբերություն, որը ելնում է զարգացման տվյալ ժամանակաշրջանին համապատասխան աշխատուժի վերարտադրությունը և անհատի համակողմանի զարգացումն ապահովող կենսապայմանների արտադրության, բաշխման, փոխանակության և սպառման օբյեկտիվ անհրաժեշտությունից (էջ 77):

Ուշագրավ են հեղինակի եզրակացությունները արտադրության և պահանջմունքների հարաբերակցության ու դրանց միջև գոյություն ունեցող բնական հակասության մասին: Վերջինս կարող է հաղթահարվել միայն քանակական տեսակետից, իսկ որակական առումով այն տարբեր ձևերով է գործում հասարակության զարգացման տարբեր փուլերում:

Ըստ աշխատանքի բաշխման հարաբերությունների կատարելագործման ընթացքում առաջարկվում է հիմնվել աշխատողների պրոֆեսիոնալ խմբերի անձնական պահանջմունքների հաշվարկումների վրա՝ անհրաժեշտ ու հավելյալ արդյունքի հարաբերակցության մեջ որոշակիություն մտցնելու նպատակով: Վերլուծելով անձնական պահանջմունքների հարաբերությունների դրսևորումը փոխանակության պայմաններում՝ գրքում նորովի են մեկնաբանվում պահանջարկի միտումները.

* **М. Т. Саркисян.** Личные потребности в теории и практике социалистического воспроизводства, изд. «Айастан», 1982 год.

Տեսական և գործնական հետաքրքրություն է ներկայացնում սոցիալիստական հասարակության անդամների անձնական պահանջմունքների տարբերությունների և դրանք պայմանավորող գործոնների ուսումնասիրությունը: Կոնկրետ նյութի վերլուծության հիման վրա ցույց են տրված անձնական պահանջմունքների սոցիալ-տնտեսական տարբերությունները, կապված քաղաքի և գյուղի, դասակարգային, ինչպես նաև աշխատողների պրոֆեսիոնալ խմբերի, նրանց աշխատանքի բնույթի, անձնական պահանջմունքների ազգային տարբերությունների հետ: Ընդհանրապես մենագրության այս մասը (3-րդ և 4-րդ գլուխներ) պարունակում է մի շարք դրույթներ, որոնք կարող են օգտակար լինել սպառման առարկաների արտադրության պլանավորման, անձնական սպառման կառուցվածքային փոփոխությունների և դրանց հետ կապված՝ սպառման առարկաների պահանջարկի միտումների կանխորոշման գործում: Վերջին գլխում վերլուծվում են անձնական պահանջմունքների հեռանկարային զարգացման հիմնական ուղղությունները:

Աշխատությունը զերծ չի նաև թերություններից: Հստակ չեն բնորոշված տնտեսական պահանջմունքները: Առաջարկվող բնորոշումը (էջ 14) կարելի է համարել այդ պահանջմունքների միայն ընդհանուր բնութագիրը: Սոցիալիզմի պայմաններում անձնական պահանջմունքների բնորոշ գծերից մեկը հեղինակն իրավամբ համարում է դրանց պլանաչափ զարգացումը (էջ 73): Սակայն դժվար է համաձայնել անձնական պահանջմունքները լրիվ ծավալով պլանավորելու հնարավորության հետ: Վերլուծելով հասարակության անդամների պահանջմունքների տարբերությունները, հեղինակը նշում է նաև դրանք պայմանավորող բնակլիմայական և սեռահասակային գործոնները, որոնք, ցավոք, հանգամանորեն չեն լուսաբանվել:

Այդուհանդերձ, Մ. Տ. Սարգսյանի **Անձնական պահանջմունքները սոցիալիստական վերարտադրության տեսության մեջ և պրակտիկայում** մենագրությունը գիտական հետաքրքրություն է ներկայացնում և, անկասկած, կարևոր ներդրում է պահանջմունքների պրոբլեմի ուսումնասիրության գործում:

**Թ. ՉԱԼՅԱՆ**
Տնտեսական գիտությունների թեկնածու



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36, գրական աշխատողներ՝ 52—66—77:

*Հանձնված է շարվածքի 22.04.85 թ.: Ստորագրված է տպագրության 15.05.85 թ.: ՎՖ 05205: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ., Տպաքանակ՝ 17382: Պատվեր 1057:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան 23, Օրջոնիկիձեի պող. № 2:*

Типография издательства ЦК КП Армении.

Ереван-23, пр. Орджоникидзе, 2.